Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը վիթխարի պրոգրեսիվ նշանակություն ունեցող պատմական ակտ էր: Դա հայ ժողովրդին փրկեց օտարերկրյա նվաճողների կողմից բնաջնջվելու սպառնալիքից, ստեղծեց նրա սոցիալական և ազգային վերածննդի օբյեկտիվ նախադրյալներ, աշխատավոր հայերին հնարավորություն տվեց հաղորդակցվելու ռուսական առաջավոր կուլտուրային, համադեմոկրատական ու մարքսիստական գաղափարներին, լենինյան կուսակցության մեծ գործին: Հանձինս Ռուսաստանի հեղափոխական ուժերի, Հայաստանի ժողովրդական մասսաները գտան իրենց վաղեմի իղձերի և հույսերի հզոր ու հավատարիմ պաշտպանին:

(ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴԻ ՈՂՋՈՒՅՆԻ ՆԱՄԱԿԻՑ):

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**11** ՆՈՅԵՄԲԵՐ 1978

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ, ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ՊԱՅԾԱՌ ՏՈՆ

## ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ
## Հ Ր Ա Մ Ա Ն Ա Գ Ի Ր Ը
### ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Նշելով տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում հայ ժողովրդի ձեռք բերած հաջողությունները և ի նշանավորումն Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի, **Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը** պարգևատրել **Լենինի** շքանշանով:

**ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝ Լ. ԲՐԵԺՆԵՎ**

**ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝ Մ. ԳՆՈՐԳԱՁԵ**

Մոսկվա, Կրեմլ, 13 նոյեմբերի 1978 թ.






## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ի սրտե շնորհավորում են Հայկական ՍՍՀ բանվորներին, կոլտնտեսականներին, մտավորականությանը, բոլոր աշխատավորներին նշանակալի տարեդարձի՝ Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի և հանրապետությունը Լենինի շքանշանով պարգևատրվելու առթիվ: Հայ ժողովրդի հետ այդ մեծ տոնը նշում են մեր մեծ սոցիալիստական հայրենիքի եղբայրական բոլոր ժողովուրդները:

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը վիթխարի պրոգրեսիվ նշանակություն ունեցող պատմական ակտ էր: Դա հայ ժողովրդին փրկեց օտարերկրյա նվաճողների կողմից բնաջնջվելու սպառնալիքից, ստեղծեց նրա սոցիալական և ազգային վերածննդի օբյեկտիվ նախադրյալներ, աշխատավոր հայերին հնարավորություն տվեց հաղորդակցվելու ռուսական առաջավոր կուլտուրային, համադեմոկրատական ու մարքսիստական գաղափարներին, լենինյան կուսակցության մեծ գործին: Հանձինս Ռուսաստանի հեղափոխական ուժերի, Հայաստանի ժողովրդական մասսաները գտան իրենց վաղեմի իղձերի և հույսերի հզոր ու հավատարիմ պաշտպանին: Ռուս ժողովրդի և մեր երկրի մյուս ժողովուրդների հետ մեկտեղ Հայաստանի աշխատավորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, անցան ցարական ինքնակալության, կապիտալիստների և կալվածատերերի իշխանության դեմ, սոցիալիստական իդեալների հաղթանակի համար մղված հերոսական պայքարի փառավոր ուղի:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը հայ ժողովրդի առջև լայն ասպարեզ բացեց հասարակական կյանքի բոլոր բնագավառներում շեշտակի առաջընթացի համար, ապահովեց նրա իսկական ազատությունն ու անկախությունը, մեկընդմիշտ նրան փրկեց սոցիալ-տնտեսական և ազգային ճնշումից:

Պատմության բոլոր հաջորդ փուլերում՝ սովետական իշխանության հաստատման և ամրապնդման պայքարում, ներքին ու միջազգային ռեակցիայի դեմ մղված կատաղի ճակատամարտերում, սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի ստեղծման ու զարգացման ասպարեզում հայ ժողովուրդն ընթացել է ռուս մեծ ժողովրդի, մեր երկրի մյուս բոլոր ժողովուրդների հետ սերտ միասնությամբ, սրբությամբ պահպանելով հավատարմությունը սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին: Հայրենական մեծ պատերազմի դաժան տարիներին Հայաստանի որդիներն ու դուստրերը, ինչպես բոլոր սովետական մարդիկ, արիաբար կռվում էին հայրենիքի ազատության, պատվի և անկախության համար, բազում վառ էջեր գրելով աշխարհը ֆաշիստական ստրկացումից փրկող մեր ժողովրդի հերոսական տարեգրության մեջ:

Այսօր Սովետական Հայաստանը ծաղկուն, դինամիկ զարգացող հանրապետություն է: Սոցիալիստական ազգերի եղբայրական ընտանիքում, նրանց անշահախնդիր օգնությամբ նա վիթխարի հաջողություններ է ձեռք բերել նոր կյանքի կառուցման գործում: Զարգացած սոցիալիզմի հասարակությանը բնորոշ հատկանիշներն են այժմ բնութագրում Սովետական Հայաստանի ամբողջ նյութական ու հոգևոր կյանքը:

Բարձր մակարդակի է հասել հանրապետության էկոնոմիկան՝ երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի բաղկացուցիչ մասը: Այստեղ լայնորեն զարգացել են էներգետիկան, մետալուրգիան, ավտոմատացման միջոցների արտադրությունը, սարքաշինությունը, քիմիական, էլեկտրատեխնիկական, ռադիոտեխնիկական և էլեկտրոնային արդյունաբերությունը: Անճանաչելիորեն կերպարանափոխվել է հայ գյուղը: Հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների դաշտերում աշխատում են տասնյակ հազարավոր տրակտորներ, ավտոմոբիլներ, զանազան գյուղատնտեսական մեքենաներ: Գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացման, դրա տնտեսական արդյունավետության բարձրացման գործում առավել մեծ դեր են խաղում ոռոգումն ու մելիորացումը, նոր հողատարածությունների յուրացումը:

Աննախընթաց ծաղկման է հասել հայ ժողովրդի կուլտուրան: Սովետահայ գրականության ու արվեստի լավագույն ստեղծագործությունները արժանի տեղ են գրավում մեր համաժողովրդական պետության հոգևոր գանձարանում: Ձևով ազգային և ոգով ինտերնացիոնալիստական, նրանք ունեն սոցիալիստական խոր բովանդակություն: Սովետական գիտության մեջ խոշոր ավանդ են մուծում հանրապետության գիտնականները:

Այս ամենը շատ լայն հնարավորություններ են ստեղծում աշխատավորների նյութական բարեկեցության ու կուլտուրայի անշեղ բարձրացման, աշխատավոր մարդկանց համակողմանի զարգացման համար:

Հայկական ՍՍՀ-ի նվաճումները խորապես և անկեղծ ուրախացնում են բոլոր սովետական մարդկանց: Դրանք սոցիալիստական հասարակական ու պետական կարգի կենսական մեծ ուժի, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի, ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ազգությունների համակողմանի զարգացման նկատմամբ կուսակցության և կառավարության մշտական հոգատարության համոզիչ վկայություններ են:

Հայաստանի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և ժողովրդական մտավորականությունը Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակը նշում են աշխատանքային ու քաղաքական այն խանդավառության պայմաններում, որն առաջացել է կուսակցության XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հաջորդ պլենումների որոշումների, ՍՍՀՄ նոր Սահմանադրության, Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության Սահմանադրության ընդունման շնորհիվ: 1978 թվականի ժողովրդատնտեսական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների, ողջ տասներորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման համար իրենց անձնվեր պայքարով նրանք ցուցադրում են անսասան հավատարմություն Սովետական



Միության կոմունիստական կուսակցությանը, ժողովուրդների բարեկամությանը, սոցիալիստական հայրենիքին:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հաստատ վստահություն են հայտնում, որ հանրապետության աշխատավորները Սովետական Միության կոմունիստական կուսակցության, նրա մարտական ջոկատի՝ Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ այսուհետ ևս ակտիվ կպայքարեն էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի հետագա վերելքի համար, անդուլ կամրապնդեն հայրենիքի հզորությունը, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունն ու միասնությունը, իրենց բոլոր ուժերը, գիտելիքներն ու փորձը կնվիրաբերեն կոմունիզմի կառուցման մեծ գործին, լենինյան գաղափարների հաղթանակին:

Կեցցե՛ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը և նրա աշխատասե՛ր, տաղանդավո՛ր ժողովուրդը:

Կեցցե՛ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը:

Կեցցե՛ ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունն ու անսասան միասնությունը՝ Հոկտեմբերի, ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության մեծ նվաճումը:

Մարքսիզմ-լենինիզմի դրոշով, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ՝ առա՛ջ, դեպի կոմունիզմի հաղթանակը:

| ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ | ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ | ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ |
|---|---|---|

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏԸ՝ ՆՎԻՐՎԱԾ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻԱՎՈՐՄԱՆ 150-ԱՄՅԱԿԻՆ

Հոկտեմբերի 14-ին Երևանում, «Ռոսիա» կինոթատրոնում տեղի ունեցավ ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի հանդիսավոր նիստը՝ նվիրված Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակին։ Հանդիսավոր նիստը ներածական խոսքով բացեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը։

Ներկաները բուռն ոգևորությամբ հոբելյանական հանդիսավոր նիստի պատվավոր նախագահություն ընտրեցին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն՝ ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորությամբ։

Ձայնը տրվում է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր, Սովետական Միության մարշալ Դ. Ֆ. Ուստինովին, որին ներկաները դիմավորում են հոտնկայս, բուռն, երկարատև ծափահարություններով։

Ընկեր Դ. Ֆ. Ուստինովը Լենինի շքանշանն ամրացնում է Հայկական ՍՍՀ դրոշին և ջերմորեն ու սրտանց շնորհավորում է Հայաստանի աշխատավորներին՝ հայրենիքի բարձր պարգևի առթիվ։

Ընկեր Դ. Ֆ. Ուստինովը հանդիսավոր նիստի նախագահությանն է հանձնում հանրապետությանը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հոբելյանական ողջույնի տեքստը։

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Բ. Ե. Սարկիսովը Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի մասին զեկուցման համար ձայնը տալիս է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանին, որին ներկաները դիմավորում են ջերմորեն։

Այնուհետև ողջույնի խոսքերով հոբելյանական հանդիսավոր նիստում ելույթ ունեցան՝ ՌՍՖՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Մ. Ա. Յասնովը, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի քարտուղար Ռ. Ֆ. Դեմենտևան, ՍՄԿԿ Լենինգրադի քաղկոմի առաջին քարտուղար Յու. Ֆ. Սոլովյովը, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Յա. Պ. Պոգրեբնյակը, Բելոռուսական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Տ. Յա. Կիսելյովը, Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Ա. Ու. Սալիմովը, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Մ. Ն. Իմաշևը, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Է. Ա. Շևարդնաձեն, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Հ. Ա. Ալիևը, Լիտվական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Ա. Ս. Բարկաուսկասը, Մոլդավիայի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Ի. Պ. Կալինը, Լատվիական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Պ. Յա. Ստրաուտմանիսը, Կիրգիզական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Ս. Ի. Իբրահիմովը, Տաջիկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Մ. Խոլովը, Թուրքմենական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Ա. Մ. Կլիչևը, Էստոնական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Վ. Ի. Կլաուսոնը, Ռոստովի մարզգործկոմի նախագահ Ս. Ն. Սաբանեևը, ինչպես և ՀՍԲԿ Դյոր Շոպրոնի մարզային կոմիտեի քարտուղար Յա. Խորվաթը։

Եզրափակման խոսքով հանդես եկավ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը։



# ԸՆԿԵՐ Դ. Ֆ. ՈՒՍՏԻՆՈՎԻ ՃԱՌԸ

*Այսօր Հայկական ՍՍՀ աշխատավորները Ռուսաստանյան Ֆեդերացիայի, սովետական երկրի եղբայրական բոլոր հանրապետությունների ժողովուրդների հետ նշում են մի փառավոր հոբելյան՝ Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակը։* (Բուռն ծափահարություններ)։



*Թույլ տվեք Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի անունից հանրապետության բանվորներին, կոլտնտեսականներին, մտավորականությանը, բոլոր աշխատավորներին ջերմորեն շնորհավորել այդ նշանակալի իրադարձության առթիվ։* (Ծափահարություններ)։

*Խորին գոհունակության զգացումով ձեզ հաղորդում եմ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության Նախագահ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի սրտագին ողջույնն ու ամենաջերմ բարեմաղթությունները։* (Բուռն, երկարատև ծափահարություններ։ Բոլորը ոտքի են կանգնում)։

*Այս հանդիսությունների նախօրեին Լեոնիդ Իլյիչը բացառիկ ջերմությամբ էր վերհիշում իր հանդիպումներն ու զրույցները ձեր հրաշալի հանրապետության աշխատավորների հետ, խոսում Հայաստանի հողում գտնվելու ժամանակ ստացած իր անմոռանալի տպավորությունների մասին։* (Ծափահարություններ)։

*Ընկերնե՛ր։ Այս հոբելյանական օրերին մեր առջև առանձնահատուկ պարզորոշությամբ է գծագրվում հայ ժողովրդի՝ դաժան փորձություններով լի բազ-*

մադարյան պատմությունը, ավելի վառ է բացահայտվում այն հսկայական նշանակությունը, որը նրա բախտի համար ունեցել է Ռուսաստանի հետ, եղբայրական ռուս ժողովրդի հետ միավորվելը։ **(Երկարատև ծափահարություններ)**։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը օտարների ասպատակություններից և ֆիզիկական ոչնչացման սպառնալիքից հայ ժողովրդի փրկության վճռական գործոնը եղավ, կարևորագույն դեր խաղաց նրա հետագա քաղաքական, սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման համար։

Հայ և ռուս ժողովուրդների բարեկամությունը, փոխադարձ մերձեցման նրանց ձգտումը, ռուսական և հայկական առաջավոր կուլտուրայի բազմակողմանի կապերը պատմական խոր արմատներ ունեն։ Դիմակայելով սեփական և օտարերկրյա ճնշողներին, Հայաստանի աշխատավորները, հանձին Ռուսաստանի դեմոկրատական և հեղափոխական ուժերի, տեսնում էին իրենց հզոր և հավատարիմ դաշնակցին։ Հասարակական-քաղաքական մտքի, հայ ժողովրդի ամբողջ հոգևոր կյանքի վրա հուժկու և բարերար ազդեցություն ունեցան դեկաբրիստների և հեղափոխական դեմոկրատների ազատագրական գաղափարները։ Ականավոր լուսավորիչ, Բելինսկու և Չերնիշևսկու զինակից Միքայել Նալբանդյանը գրել է. «...քանզի ոչ միայն ինքը՝ ռուսը կուզե իր ազատությունը... Ռուսի ազատությունը, ընդհանուր մարդկության ազատության վերաբերմամբ, մե՜ծ խորհուրդ ունի»։ Արտահայտելով հայ ժողովրդի իղձերն ու հույսերը, նա նրա բախտը անխզելիորեն կապում էր ռուսական հեղափոխական դեմոկրատական շարժման հետ, հանդես գալիս որպես ժողովուրդների բարեկամության ջերմ ջատագով, ազգային մեկուսացման համոզված հակառակորդ։

Ռուսաստանի հետ Հայաստանի միավորումը բարենպաստ պայմաններ ստեղծեց հայ ժողովրդի քաղաքական, տնտեսական և կուլտուրական կապերի ընդլայնման համար, դրական ազդեցություն ունեցավ ինչպես իր մերձավորագույն հարևանների՝ վրաց և ադրբեջանական ժողովուրդների, այնպես էլ երկրի մյուս բոլոր ժողովուրդների հետ բարեկամության ու համերաշխության հետագա ամրապնդման վրա։ **(Երկարատև ծափահարություններ)**։

Ռուսաստանի ժողովուրդների բարեկամությունը կոփվում և զոդվում էր սոցիալական և ազգային ազատագրության համար նրանց համատեղ պայքարում։ «Ցարական ինքնակալության դեմ Ռուսաստանի պրոլետարիատի պայքարի պատմական փորձը,— ասել է Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը,— Հայաստանի աշխատավորներին ցույց տվեց ազատության, սոցիալական առաջադիմության միակ ճշմարիտ ուղին՝ հեղափոխական պայքարի ուղին, սոցիալիստական վերափոխումների ուղին»։ Այդ պայքարում Հայաստանի աշխատավոր ժողովրդի արմատական շահերն ի մի ձուլվեցին Ռուսաստանի բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերի հետ։

Մասսաների հեղափոխական շարժումը գլխավորեց մեծ Լենինի ստեղծած բոլշևիկյան կուսակցությունը, որը մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո միավորեց աշխատավորների երջանկության, սոցիալիստական իդեալների հաղթանակի համար պայքարող իսկական մարտիկներին։ Հեղափոխական կուռ միասնական շարքերով Լենինի շուրջը համախմբվեցին նաև հայ ժողովրդի լավագույն ներկայացուցիչները։ Նրա մերձավորագույն զինակիցները դարձան Սուրեն Սպանդարյանը, Բոգդան Կնունյանցը, Իսահակ Լալայանցը, Սիմոն Տեր-Պետրոսյանը (Կամո), Ալեքսանդր Մյասնիկյանը, Անաստաս Միկոյանը և շատ ուրիշներ։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի խորհրդանիշն է դարձել լենինյան գվարդիայի ականավոր ներկայացուցիչ Ստեփան Շահումյանի պայծառ կերպարը, որը Բաքվի կոմունայի կազմակերպիչներից և ոգեշնչողներից մեկն էր, նրա ճանաչված ղեկավարը։ **(Երկարատև ծափահարություններ)**։

Բոլշևիկյան կազմակերպությունները Անդրկովկասի բոլոր ազգությունների աշխատավորներին համախմբում էին հեղափոխական դրոշի ներքո, վճռականորեն պայքարում բուրժուանացիոնալիստական կուսակցությունների հա-



կաժողովրդական գաղափարախոսության ու քաղաքականության դեմ, ցարիզմի կողմից գիտակցաբար հրահրվող ազգային երկպառակության դեմ։ Դեռևս 1903 թվականին Վ. Ի. Լենինը ջերմորեն ողջունեց Ստ. Շահումյանի գրած «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» մանիֆեստը, այն անվանելով ազգային հարցի ճիշտ լուծման հիանալի փորձ։ Իսկ 1913 թվականին Վլադիմիր Իլյիչը նշում էր. «Բանվորական շարժման շահերին ու խնդիրներին համապատասխանում է բոլոր ազգերի բանվորների միայն այն լիակատար միասնությունը (տեղերում, վարից մինչև վեր), որ այնքան երկար ու այնքան հաջող իրագործվում էր Կովկասում»։ **(Ծափահարություններ)**։

Հայաստանի աշխատավոր մասսաները խանդավառությամբ ընդունեցին մեծ Հոկտեմբերի հաղթանակի լուրը։ Նրանք վճռական պայքարի ելան հանուն սովետական իշխանության։ Հեղափոխական բանվորներն ու գյուղացիները 11-րդ բանվորագյուղացիական կարմիր բանակի օգնությամբ տապալեցին դաշնակների ռեակցիոն, ծախու վարչակարգը և հաստատեցին աշխատավորների իշխանություն։ Հայ ժողովուրդն ստեղծեց սոցիալիստական պետականություն։ Մեր երկրի բոլոր ժողովուրդների, և ամենից առաջ ռուս մեծ ժողովրդի, անշահախնդիր օգնությունը Հայաստանի աշխատավորներին հնարավորություն ընձեռեց դուրս գալու ավերածության ու սովի ճիրաններից, լայն ճակատով ծավալելու սոցիալիստական շինարարությունը։ **(Ծափահարություններ)**։

Լենինյան կուսակցության ղեկավարությամբ մեր երկրի ժողովուրդները համախմբվեցին միասնական ընտանիքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ։ Սոցիալիստական ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը վերափոխեցին երկրի դեմքը, նպաստեցին լիովին դրսևորվելու բազմազգ սովետական ժողովրդի ստեղծագործական ուժերին, ժամանակը ցույց տվեց, որ ՍՍՀՄ ժողովուրդների ինտերնացիոնալ, եղբայրական բարեկամությունը մեծ ուժ է։ Դա համոզիչ դրսևորվեց սոցիալիստական շինարարության ընթացքում, Հայրենական մեծ պատերազմի հրաբորբ տարիներին։ **(Ծափահարություններ)**։

Հերոսական սովետական բանակի շարքերում և պարտիզանական ջոկատներում, մեր բոլոր հանրապետությունների ներկայացուցիչների հետ ուս-ուսի կռվում էին հարյուր հազարավոր հայ ռազմիկներ՝ ցույց տալով արիության և քաջության օրինակներ։ Նրանցից մոտ 70 հազարը պարգևատրված են մարտական շքանշաններով ու մեդալներով, 103-ը արժանացել են Սովետական Միության հերոսի բարձր կոչման։ Որպես տաղանդավոր զորապետներ իրենց դրսևորեցին փառաբանված մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս Հ. Ք. Բաղրամյանը, **(Երկարատև ծափահարություններ)**, Սովետական Միության հերոսներ՝ Սովետական Միության նավատորմի ծովակալ Հ. Ս. Իսակովը **(ծափահարություններ)** և զրահատանկային զորքերի գլխավոր մարշալ Հ. Խ. Բաբաջանյանը **(ծափահարություններ)**, ավիացիայի մարշալ Ս. Ա. Խուդյակովը և հայ ժողովրդի ուրիշ փառապանծ զավակներ։ **(Երկարատև ծափահարություններ)**։

Փառք ու պատիվ մեր մեծ հայրենիքի ազատությունն ու անկախությունը պաշտպանած սովետական ռազմիկներին։ **(Երկարատև ծափահարություններ)**։

Հայրենական մեծ պատերազմի հերոսների անմահ սխրանքները բոցաշունչ հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգեշնչող օրինակ են, որով սովետական երիտասարդության նորանոր սերունդներ դաստիարակվում են սոցիալիստական հայրենիքին անսահման հավատարմության, մեծ Հոկտեմբերի նվաճումները պաշտպանելու պատրաստակամության ոգով։

Ընկերնե՛ր։ Ֆաշիզմի դեմ տարած հաղթանակից անցած մեկ երրորդ դարում Սովետական Միության աշխատավորները, լենինյան կուսակցության իմաստուն ղեկավարությամբ, հայրենիքը դուրս բերեցին սոցիալական պրոգրեսի ամենաառաջավոր բնագծերը։ Զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը մեր անցած ուղու գլխավոր արգասիքը եղավ։ Դեպի կոմունիզմ մեր առաջընթացի այդ պատմական բնագիծը վավերագրվեց ՍՍՀՄ Սահմանադրությամբ, որի առաջին տարեդարձը լայնորեն և հանդիսավորու-

թյամբ նշեց մեր երկիրը։ Սոցիալիզմի հիմքի վրա մեզ մոտ կազմավորվել է մարդկանց սոցիալական և ինտերնացիոնալ նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը (**ծափահարություններ**), որը բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության, բոլոր ազգերի ու ազգությունների միաձույլ դաշինք է՝ զոդված մարքս-լենինյան գաղափարախոսության, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համատեղ պայքարով, եղբայրության և բարեկամության հարաբերություններով։ (**Ծափահարություններ**)։

Հարյուրամյակներ շարունակ մարդկության լավագույն մտածողները որոնել են մարդկանց երջանկության, նրանց միջև իրավահավասարություն ու բարեկամություն հաստատելու ուղիներ։ Բայց միայն Լենինի կուսակցությունը, նոր հասարակության կառուցման համար հեղափոխական պայքարը միացնելով ազգային և սոցիալական ազատագրության համար ճնշված ժողովուրդների պայքարի հետ, իրողություն դարձրեց այդ հարաբերությունները, հասավ այն բանին, որ ինտերնացիոնալիզմը մի բուռ կոմունիստների իդեալից վերածվեց խոր համոզմունքի, բազմամիլիոն ժողովրդական մասսաների ամենօրյա գործունեության ու վարքագծի նորմի։ (**Ծափահարություններ**)։

Նրանց պատմական արարչագործությամբ ստեղծվեց սոցիալիզմի նյութական և հոգևոր հսկայական պոտենցիալը։ Բոլոր միութենական հանրապետություններում իրագործվել են հսկայական վերափոխություններ, որոնց շնորհիվ հեռավոր հուշ է դարձել ցարական Ռուսաստանի նախկին ծայրամասերի տընտեսական հետամնացությունը։ Սովետական հանրապետություններից յուրաքանչյուրը ամբողջ աշխարհի առջև հառնում է որպես լենինյան կենարար գաղափարների հաղթանակի ոգեշնչող օրինակ։ (**Ծափահարություններ**)։

Կուսակցությունն ամեն ինչ անում է է՛լ ավելի ամրապնդելու սովետական մարդկանց ինտերնացիոնալ դաշինքը՝ հօգուտ ամբողջ երկրի և յուրաքանչյուր առանձին միութենական հանրապետության, աշխատավորներին դաստիարակելու ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության, բոլոր ազգերի ու ազգությունների նկատմամբ խորին հարգանքի ոգով, նացիոնալիզմի և շովինիզմի դրսևորումների նկատմամբ անհանդուրժողության ոգով։

Սովետական մարդու ինտերնացիոնալիզմը այսօր անհողդողդ հավատարմությունն է բոլշևիկ-կոմունիստների հեղափոխական փառավոր ավանդույթներին, մշտական պատրաստակամությունն ու ջերմ ձգտումը պրակտիկ գործերով ամրապնդելու սովետական հայրենիքի հզորությունը, զարգացնելու բոլոր երկրների աշխատավորների համերաշխությունը, օգնություն ցույց տալու այն ժողովուրդներին, որոնք պայքարում են իմպերիալիզմի դեմ՝ հանուն ազգային անկախության և սոցիալական առաջընթացի։

Սովետական մարդկանց հոգում իրենց երկրամասի նկատմամբ սիրո զգացումը օրգանապես միաձուլված է մեր մեծ, բազմազգ հայրենիքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հանդեպ տածած սիրուն։ Թե՛ իրենց հանրապետության, թե՛ մեր ամբողջ սոցիալիստական հայրենիքի ջերմ հայրենասերներ են նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։ Իրենց հայրենասիրությունն ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմը նրանք ցուցադրում են ամենօրյա գործերով, կոմունիզմի կառուցմանը ակտիվ մասնակցությամբ։

Այսօր մենք գոհունակությամբ ենք նշում, որ Հայկական ՍՍՀ-ի աշխատավորները, ինչպես բոլոր սովետական մարդիկ, սերտորեն համախմբված են Սովետական Միության կոմունիստական կուսակցության շուրջը, միահամուռ պաշտպանում են նրա ներքին ու արտաքին քաղաքականությունը։ (**Ծափահարություններ**)։

Եվ դա օրինաչափ է։ Սովետական մարդիկ բազմամյա փորձով համոզվել են, թե որքան իմաստուն, խորաթափանց է իրենց քաղաքական ավանգարդը։ Մեր կուսակցությունը չունի ավելի վեհ նպատակ, քան ժողովրդին ծառայելը։ Ընդհանրացնելով պրակտիկ փորձը, ստեղծագործաբար զարգացնելով հեղափոխական տեսությունը, նա մշակում է հասուն սոցիալիզմի կենսական պահանջմունքներին համապատասխանող քաղաքական ճիշտ կուրս, ժողովրդական



մասսաներին մոբիլիզացնում է՝ լուծելու երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման և նրա պաշտպանական հզորության ամրապնդման, ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման խնդիրները։

Սովետական մարդիկ խոր սիրո և երախտագիտության զգացմունքներ են արտահայտում հարազատ կոմունիստական կուսակցությանը, մեր ժամանակի քաղաքական և պետական ականավոր գործիչ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի գլխավորած լենինյան Կենտրոնական կոմիտեին (**Երկարատև ծափահարություններ**) ժողովրդի բարօրության ու երջանկության, աշխարհի խաղաղության ամրապնդման նկատմամբ ցուցաբերվող անդուլ հոգատարության համար։ (**Ծափահարություններ**)։

Ընկերնե՛ր։ Սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն փոխվել է Հայաստանի դեմքը։ Եղբայրական հանրապետությունների օգնությամբ այստեղ ըստ էության ստեղծվել է հզոր ինդուստրիա, կառուցվել են ժամանակակից սարքավորումներով հագեցված ավելի քան 500 արդյունաբերական ձեռնարկություններ։ Ներկայումս Հայկական ՍՍՀ-ում հինգ անգամ շատ էլեկտրաէներգիա է արտադրվում, քան ամբողջ ցարական Ռուսաստանում։ Հանրապետության տեխնիկական բուռն առաջընթացի խորհրդանիշ կարող է ծառայել վերջերս կառուցված Հայաստանի ատոմային էլեկտրակայանը։ Իսկ մի՞թե կարելի է չհպարտանալ նրանով, որ այստեղ, ուր առաջներում՝ սկսած մեխից ներմուծվում էին բոլոր արդյունաբերական արտադրանքները, այժմ թողարկվում են ճշգրիտ սարքեր ու հաստոցներ, հաշվիչ մեքենաներ, էլեկտրատեխնիկական իրեր, նոր քիմիական նյութեր, գունավոր մետաղներ և այլ արտադրանք, որը վկայում է հանրապետության արտադրության գիտատեխնիկական բարձր մակարդակի մասին։

Հայաստանում աճել է նոր բանվոր մարդը՝ առաջավոր հասարակական հայացքների, բարձր կուլտուրայի և պրոֆեսիոնալ գիտելիքների կրողը, բառիս լայն իմաստով, կյանքի տերը։ Սովետական բանվոր դասակարգի մարտական ջոկատներից մեկը՝ Հայաստանի փառապանծ բանվոր դասակարգը, իր շարքերում այսօր ունի 800 հազար մարդ։ Դա հանրապետության այն գլխավոր ստեղծարար ուժն է, որը մարմնավորում է աշխատասեր, տաղանդավոր հայ ժողովրդի բոլոր լավագույն հատկանիշները։ (**Երկարատև ծափահարություններ**)։

Խոր հարգանք ու հպարտություն են հարուցում երբեմնի անկենդան աղուտներն ու քարքարոտ անապատները կերպարանափոխող, դրանք ծաղկուն դաշտեր, պտղատու և խաղողի այգիներ դարձնող երկրագործի նվաճումները։ Երբ տեսնում ես այս ամենը, ակամա մտածում ես՝ հանրապետության գյուղի աշխատավորներն իսկապես քարից հաց են քամում։ Նրանց համառության և անձնվիրության շնորհիվ ձեր երկրամասի երբեմնի պրիմիտիվ գյուղատնտեսությունը վերածվել է էկոնոմիկայի ժամանակակից, բարձր մեքենայացված ճյուղի։ Արմատապես փոխվել են գյուղացու կյանքը, նրա կենցաղը, նրա աշխատանքի բնույթն ու պայմանները։

Հանրապետության համակողմանի զարգացման գործում ծանրակշիռ ավանդ է մուծում Հայաստանի մտավորականությունը։ Նա բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության միս ու արյունից է, դրանք այն մարդիկ են, ովքեր ամենաակտիվ կերպով նպաստում են գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, կուլտուրայի հետագա ծաղկմանը, հանրային արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու կուսակցության կուրսի պրակտիկ իրականացմանը։

Թո՛ղ, ուրեմն, է՛լ ավելի ամրապնդվի Սովետական Հայաստանի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության անխախտ դաշինքը։ (**Ծափահարություններ**)։

Հայկական ՍՍՀ-ի օրինակով վառ կերպով երևում է մեր կուսակցության հոգատարությունը աշխատավոր մարդու, նրա բարեկեցության աճի, նրա հոգևոր համակողմանի զարգացման նկատմամբ։ Այն ժողովուրդը, որի համար հեղափոխությունից առաջ ասում էին, թե անհետանալու է պատմական ասպարեզից, այժմ արժանավայել տեղ է գրավում կոմունիզմի ռահվիրաների շար-

քերում։ Եթե 1920 թվականին Հայաստանի բնակչությունն ընդամենը 720 հազար էր, ապա ներկայումս այն կազմում է մոտ երեք միլիոն։ Այստեղ անշեղորեն բարելավվում են մարդկանց բնակարանային-կենցաղային պայմանները, բժշկական սպասարկումը, սոցիալական ապահովությունը։ Հանրապետությունում կյանքի միջին տևողությունը հասնում է 73 տարվա։ Դա աշխարհում ամենաբարձր ցուցանիշներից մեկն է։ (Ծափահարություններ)։

Հայաստանը հին և ինքնատիպ մշակույթի երկիր է։ Մենք հիանում ենք նրա ճարտարապետության, գրականության և արվեստի հոյակապ ստեղծագործություններով, ակնածանքով ենք հիշատակում այն հանճարեղ գիտնականներին ու բանաստեղծներին, որ նա տվել է աշխարհին։ Ավելի քան 1.600 տարի առաջ հայ ժողովուրդն ստեղծեց իր գիրն ու գրականությունը։ Բայց մինչև 1920 թվականը նա իր գերակշռող մեծամասնությամբ անգրագետ էր։ Այժմ Սովետական Հայաստանի յուրաքանչյուր երրորդ բնակիչը սովորում է։ Հեղափոխությունից առաջ Հայաստանում չկար ո՛չ մի բարձրագույն ուսումնական հաստատություն։ Այժմ հանրապետությունում կա 13 բուհ, 63 միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություն, որոնցում սովորում է 111 հազար մարդ։

Սովետական Հայաստանը ժամանակակից գիտության հանրապետություն է։ Անվիճելի են հայ գիտնականների նվաճումները աստղաֆիզիկայի, տեսական ֆիզիկայի, տարրական մասնիկների ֆիզիկայի, մաթեմատիկայի, հաշվողական տեխնիկայի, միկրոկենսաբանության, բիոքիմիայի բնագավառում։ Համաշխարհային հռչակ են ստացել Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ Վիկտոր Համբարձումյանի հայտնագործությունները (ծափահարություններ). վերջերս նա պարգևատրվեց Սոցիալիստական աշխատանքի հերոսի «Մուրճ ու մանգաղ» երկրորդ մեդալով։ (Երկարատև ծափահարություններ)։

Սովետական ժողովրդի բազմազգ կուլտուրայի գանձարանում իրենց արժանի տեղն են գրավում Հայաստանի գրականության և արվեստի լավագույն ստեղծագործությունները։ Եղիշե Չարենցի հեղափոխական պոեզիան, Մարտիրոս Սարյանի արևաշող կտավները, Արամ Խաչատրյանի հմայիչ երաժշտությունը, ճարտարապետ Ալեքսանդր Թամանյանի, հանրապետության կուլտուրայի մյուս ականավոր գործիչների ստեղծագործությունները կրում են կենսահաստատ սկզբունք, հավատ մարդկության երջանկության ու պրոգրեսի նկատմամբ։ Նրանց ստեղծագործությունը հարստացնում է սովետական մարդու հոգևոր աշխարհը, նպաստում նրա կերպարի մեջ նոր հասարակության քաղաքացու, կրքոտ հայրենասերի և հետևողական ինտերնացիոնալիստի սքանչելի հատկանիշների ձևավորմանը։ (Երկարատև ծափահարություններ)։

ՍՍՀՄ մյուս ժողովուրդների կուլտուրայի և համաշխարհային կուլտուրայի նվաճումներին Հայաստանի աշխատավորներին հաղորդակից դարձնելու մեծ հնարավորություններ ընձեռեց ռուսաց լեզվի կամավոր ուսումնասիրումը, որը մեր երկրում ազգամիջյան հաղորդակցման լեզու է դարձել։ (Ծափահարություններ)։

Թույլ տվեք, ընկերնե՛ր, ամբողջ սրտով Հայկական ՍՍՀ գիտության և կուլտուրայի աշխատողներին հետագա հաջողություններ մաղթել իրենց ազնիվ աշխատանքում՝ ի բարօրություն սովետական ժողովրդի, հանուն կոմունիզմի իդեալների հաղթանակի։

Սովետական Միության ժողովուրդների միասնական ընտանիքում ապրող և նրանց հետ մեկտեղ կոմունիզմ կառուցող հայ ժողովրդի էկոնոմիկայի և կուլտուրայի հզոր ծաղկումը, ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության հոյակապ հաղթարշավի փայլուն վկայությունն է և ամբողջ աշխարհին ցուցադրում է սոցիալիստական կարգերի, մեր սովետական ապրելակերպի ակնբախ առավելությունները։

Ընկերնե՛ր։ Սովետական Միությունը հարյուրից ավելի ազգությունների պատկանող ավելի քան քառորդ միլիարդ ազատ և իրավահավասար մարդկանց հարազատ տունն է։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ հայ ժողովրդի այսօրվա տոնը մեր սոցիալիստական հայրենիքի բոլոր աշխատավորների ինտերնացիո-



նալ տոնն է։ Մենք այն նշում ենք ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համաժողովրդական պայքարի պայմաններում։ Համագումարից հետո անցած ժամանակամիջոցում մեր երկիրն առաջ է ընթացել բոլոր բնագավառներում։ Զգալիորեն աճել է նրա տնտեսական պոտենցիալը, հաջողությամբ է կատարվում սոցիալական ծրագիրը, անշեղորեն բարձրանում է ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը։

Սովետական մարդկանց աշխատանքային և հասարակական-քաղաքական ողջ գործունեության հիմնական բովանդակությունը՝ հաստատակամ պայքարն է հնգամյակի երրորդ տարվա, հարվածային աշխատանքի տարվա ժողովրդատնտեսական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման ու գերակատարման համար։

Բարձրացնելով արտադրության արդյունավետությունը և արտադրանքի որակը, դինամիկ կերպով, արագ տեմպերով է զարգանում մեր հզոր սոցիալիստական ինդուստրիան։ Վատ չեն գործերը նաև գյուղատնտեսության բնագավառում։

Այս տարի աճեցվել է հացահատիկային կուլտուրաների, բամբակի, կարտոֆիլի, բանջարեղենի, մրգի լավ բերք։ Գյուղատնտեսական արտադրության զարգացման նոր հզոր ազդակ եղավ ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումը։ Իրագործելով դրա որոշումները, գյուղի աշխատավորները ջանք չեն խնայում հաջողությամբ ավարտելու գյուղատնտեսական տարին։ Ինչպես ասել է Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը, այսօր մեր կարևորագույն և անհետաձգելի խնդիրներից մեկն է ամենայն խնամքով հավաքել ու պահպանել աճեցված բերքը, հուսալի հիմք ստեղծել ապագայում հողագործության և անասնապահության արդյունքի արտադրությունն ավելացնելու համար։

Ընկերնե՛ր, հաճելի է նշել, որ ձեր հանրապետությունն ապրում և աշխատում է ամբողջ երկրի հետ ներդաշնակ ռիթմով։ Վերջին տարիներին զգալիորեն աճել և շարունակում է մեծանալ Հայաստանի արդյունաբերական արտադրանքի ծավալը, հաջողությամբ են կատարվում հնգամյակի հիմնական առաջադրանքները։ Այդ են վկայում նաև ընթացիկ տարվա ինն ամիսների արդյունքները. արդյունաբերական արտադրանքի աճը, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, կազմել է 8,1 տոկոս։ Տասներորդ հնգամյակում նկատելիորեն բարձրացել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, աճել են հանրային անասնապահության գլխաքանակն ու մթերատվությունը։ Այս տարի, չնայած սաստիկ անբարենպաստ եղանակներին, ընդհանուր առմամբ, վատ բերք չի աճեցվել, և գյուղի աշխատավորներն ամեն ինչ անում են պետության հանդեպ ունեցած բարձր պարտավորությունները կատարելու համար։

Հանրապետության աշխատավորները առանձնապես հպարտ են, որ Հայկական ՍՍՀ-ն, որպես համամիութենական սոցիալիստական մրցության հաղթող, երկու անգամ՝ 1976 և 1977 թվականներին, արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Հայրենասիրական մեծ ոգևորությամբ նշանավորվեց մրցությունը նաև այս տարի։ Բավական է ասել, որ հանրապետության 65 միավորումների ու ձեռնարկությունների կոլեկտիվներ, ավելի քան 80 հազար բանվորներ արդեն կատարել են հնգամյակի երեք տարվա առաջադրանքները, իսկ երեք հազար մարդ՝ անձնական հնգամյա պլանները։

Թույլ տվեք ի սրտե շորհավորել արտադրության առաջավորներին, նրանց մաղթել աշխատանքային նոր մեծագործություններ։ (Ծափահարություններ)։

Տնտեսական և սոցիալական զարգացման գործում հանրապետության հաջողություններն ապահովվում են Հայաստանի կոմունիստական կուսակցության՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության մարտական ու կոփված ջոկատի կազմակերպչական, գաղափարաքաղաքական մեծ աշխատանքով։ Հանրապետության կուսակցական կազմակերպությունը շատ բան է անում բարձրացնելու մասսաների ակտիվությունն ու նախաձեռնությունը,

նրանց մոբիլիզացնում է կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման համար։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, հանրապետական ամբողջ կուսակցական կազմակերպության գործունեությունն ըստ արժանվույն է գնահատվում կուսակցության Կենտրոնական կոմիտեի կողմից, արժանանում նրա մշտական աջակցությանը։ (Ծափահարություններ)։

Մեր հասուն սոցիալիստական հասարակությունը գտնվում է ստեղծարար ուժերի ծաղկման շրջանում, ունի հաղթական առաջընթացի, էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա վերելքի, սոցիալական զարգացման արագացման անհագին հնարավորություններ։ Այդ հնարավորությունները լիովին գործադրելու համար անհրաժեշտ են բարձր կազմակերպվածություն, կարգապահություն, կուսակցական, պետական և տնտեսական գործունեության բոլոր օղակների հստակ փոխգործողություն։ Կամենում եմ այդ առնչությամբ արտահայտել մի քանի ցանկություններ։

Երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի զարգացման համար առաջնահերթ նշանակություն ունեն պլանային կարգապահության խիստ կիրառումը, յուրաքանչյուր ձեռնարկության կողմից արտադրանքի արտադրության առաջադրանքների, բոլոր պայմանագրային պարտավորությունների կատարումը։ Արտադրության աշխատողները սեփական փորձով լավ գիտեն, թե ինչպիսի անհատուցելի կորուստների է հասցնում մատակարարումների գործում հարակից ձեռնարկությունների փոքր հապաղումն իսկ։ Ցավոք, Հայաստանի ոչ քիչ թվով ձեռնարկություններին ևս այս առումով արդարացի պահանջներ են ներկայացվում։ Վստահ ենք, որ հանրապետությունում անհրաժեշտ հետևություններ կարվեն և ձեռք կառնվեն համապատասխան միջոցներ։ Նշանակալի ռեզերվ է արագ աճող արտադրագիտական պոտենցիալի ավելի լրիվ օգտագործումը։ Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ հնգամյակի սկզբներին հիմնական ֆոնդերը կազմում էին 6 միլիարդ ռուբլի։ Մինչև 1980 թվականը դրանք կավելանան 1,6 անգամ։ Արտադրության ինտենսիվ վարման շահերը թելադրում են ուժեղացնել ուշադրությունը եղած սարքավորման յուրաքանչյուր միավորի օգտագործման, նոր կարողությունների ժամանակին գործարկման ու յուրացման, արտադրության և կառավարման կազմակերպումն ավելի կատարելագործելու նկատմամբ։

Պետք է ասել նաև այնպիսի կարևոր պրոբլեմի մասին, ինչպիսին վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողաբար օգտագործումն է։ Մի շարք պատճառներով, որոնք առնչված են նախ և առաջ արտադրության ավելի արագ զարգացման և կենցաղում այդ ռեսուրսների հարաճուն պահանջարկի հետ, դրանց առավել խելամիտ օգտագործման հարցը ավելի մեծ նշանակություն է ստանում։ Այժմ բանվորները, կոլտնտեսականները, մասնագետներն ամենուրեք որոնում և գտնում են վառելիքի և էլեկտրաէներգիայի խնայողության ռեզերվներ, անում գործնական շատ առաջարկություններ։ Կարևոր է, որ այդ առաջարկությունները պաշտպանություն գտնեն, որ ներքևից եկող նախաձեռնությունը ամրապնդվի տնտեսական կառավարման մարմինների, ժողովրդական դեպուտատների սովետների, մեր բոլոր կադրերի պատշաճ աշխատանքով։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, անձամբ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը, խոր հետաքրքրություն և մշտական հոգատարություն են ցուցաբերում ձեր հանրապետության գործերի նկատմամբ։ Ուշադրությամբ քննարկվում և ժամանակին լուծվում են հասունացած հարցերը։ Վերջին ժամանակներս ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունն ընդունել են մի շարք կարևոր որոշումներ, որոնցում նախատեսվում է Հայաստանի արտադրաուժերի հետագա զարգացում, ժողովրդի կուլտուրայի և բարեկեցության բարձրացում։ Մայրաքաղաքի բնակիչների, հանրապետության բոլոր աշխատավորների համար լավ նվեր կլինի մետրոպոլիտենի առաջիկա գործարկումը։ Օրերս որոշում ընդունվեց բնության եզակի կերտվածքի՝ Սևանա լճի պահպանման և ռացիոնալ օգտագործման մասին։ (Բուռն ծափահարություններ)։

Մեծ ու լուրջ խնդիրներ են կանգնած Հայկական ՍՍՀ-ի առջև։ Դրանց լուծման համար անհրաժեշտ է բոլոր կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը, աշխատավորների բարձր կազմակերպվածությունն ու գիտակցականությունը։ Անհրաժեշտ է բարձրացնել գաղափարական ազդեցության բոլոր միջոցների արդյունավետությունը, հաստատակամորեն ձևավորել սովետական յուրաքանչյուր քաղաքացու գաղափարաբարոյական հստակ սկզբունքները, ակտիվ կենսադիրքորոշումը։



Մենք չենք կասկածում, որ կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ հանրապետության բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մտավորականությունը նոր հիանալի հաջողությունների կհասնեն կոմունիստական շինարարության ասպարեզում, պատվով կկատարեն կուսակցության XXV համագումարի որոշումները։

Թանկագին ընկերնե՛ր։ Վերջերս հանդես գալով Բաքվում, ընկեր Լ. Ի. Բրեժնևը մանրամասնորեն խոսեց այն մասին, թե ինչպես է ՍՄԿԿ Կենտկոմը գնահատում ներկայիս միջազգային իրադրությունը։ Ուստի թույլ տվեք շատ համառոտակի անդրադառնալ այդ թեմային։

Վերջին ամիսներին մենք վկա եղանք համաշխարհային ասպարեզում տեղի ունեցած շատ փաստերի ու իրադարձությունների, որոնք վկայում են երկու տենդենցների շարունակվող պայքարի մասին։ Դրանք են՝ միջազգային լարվածության թուլացումը խորացնելու և ամրապնդելու, խաղաղությունը հաստատուն դարձնելու և լարվածության թուլացումը խարխլելու, մարդկությանը ետ՝ դեպի «սառը պատերազմի» ժամանակները շպրտելու տենդենցը։

Խոսքը վերաբերում է թե՛ իմպերիալիզմի կողմից սպառազինությունների մրցավազքի ուժգնացմանը, թե՛ սոցիալիստական երկրների ներքին գործերին միջամտելու նրա փորձերին, թե՛ զենքի ուժով, տնտեսական և քաղաքական ճնշման սպառնալիքների միջոցով Աֆրիկայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի ժողովուրդներին ու երկրները իր ազդեցության ոլորտում պահելու ձգտմանը։ Խոսքը վերաբերում է նաև Չինաստանի արտաքին քաղաքական քայլերին, որի հակասովետական կուրսը ավելի ու ավելի է միանում մոնոպոլիստական բուրժուազիայի հակակոմունիստական ստրատեգիային։

Այս ամենը պարբերաբար սառեցնում է միջազգային քաղաքական կլիման։ Բայց լարվածության թուլացումն արդեն բավական խոր արմատներ է գցել, և դրանք ի վիճակի են դիմանալու նման «ցրտությանը»։

Հասկանալով այդ և իրենց հաշիվ տալով, որ ոչինչ չի կարելի հակադրել խաղաղ գոյակցությանը, Արևմուտքում ոմանք դեմ չէին լինի շահել ՍՍՀՄ-ի խաղաղության ձգտումից, հուսալով, թե մենք կհամաձայնենք լարվածության թուլացումը պահպանելու փոխարեն «հատուցել» մեր արտաքին և ներքին քաղաքականության սկզբունքային հարցերում զիջումներ անելով։

Սրանք սին ու պատիր հաշվենկատառումներ են։ Սովետական Միությունը չի սակարկել և երբեք չի սակարկի իր սկզբունքների շուրջ։ (Ծափահարություններ)։ Նա երբեք չի նահանջել և մտադիր չէ նահանջել իր դասակարգային դիրքերից՝ ում կողմից էլ ճնշում գործադրվի։

Միևնույն ժամանակ մեր երկիրը մտադիր չէ նաև նահանջել արտաքին քաղաքական գործերում իր կոնստրուկտիվ կուրսից։ Մենք լավ ենք հասկանում, որ դա ձեռնտու կլիներ միայն նրանց, ովքեր երազում են խափանել լարվածության թուլացումը։

Ավելի քան յոթ տարի առաջ, ՍՄԿԿ XXIV համագումարում առաջ քաշելով խաղաղության ծրագիրը, որը հզոր խթան եղավ լարվածության թուլացման պրոցեսի համար, ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը շեշտեց. «...Հետևողականորեն վարելով ժողովուրդների խաղաղության և բարեկամության քաղաքականություն, Սովետական Միությունն այսուհետև ևս վճռական պայքար կմղի իմպերիալիզմի դեմ, ամուր հակահարված կտա ագրեսորների ոտնձգություններին և դիվերսիաներին»։ (Ծափահարություններ)։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մշտապես հոգ են տանում սովետական մարդկանց բարձր զգոնության ոգով դաստիարակելու մասին, ամեն ինչ անում են երկրի պաշտպանությունն ամրա-

պնդելու, ՍՍՀՄ զինված ուժերն այնպիսի պատրաստության վիճակում պահելու համար, որը երաշխավորում է անհապաղ հակահարված ամեն մի հակառակորդի։

Խաղաղասիրությունը և ագրեսորին պատշաճ հակահարված տալու պատրաստականությունը մեր քաղաքականության մեջ միաձույլ են։ Այդ կշռադատված կոնստրուկտիվ, դասակարգային քաղաքականությունը, ինչպես հաստատում է իրադարձությունների զարգացումը միջազգային ասպարեզում, արդյունավետ է և բեղմնավոր։ Այն համապատասխանում է սովետական մարդկանց կենսական շահերին, բոլոր ժողովուրդների խաղաղության և անվտանգության շահերին։ Մեր կուսակցությունը մտադիր է այսուհետ ևս անշեղորեն ու հաստատակամորեն կենսագործել այդ քաղաքականությունը։

Միջազգային ասպարեզում հանդես գալով որպես խաղաղության հուսալի պատվար և դրոշակակիր, Սովետական Միությունը Հոկտեմբերի ճանապարհով հաստատակամ ու վստահ առաջ է ընթանում դեպի մեծ նպատակը՝ կոմունիզմը։ Եվ այդ նպատակին մենք կհասնենք։ Դրա գրավականը մեր հասարակարգի անսպառ հնարավորություններն են, սովետական մարդկանց անձնվեր ու ոգեշունչ աշխատանքը, մեր հայրենիքի ժողովուրդների անխախտ բարեկամությունը, լենինյան կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքականությունը, որը մարմնավորում է սովետական բազմազգ ժողովրդի արմատական շահերն ու միասնական կամքը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Թանկագին ընկերնե՛ր, բարեկամնե՛ր։

Բոլորիս, ինչպես և ինձ համար այս հանդիսավոր օրը հաճելի է կատարել ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հանձնարարությունը և հանրապետությանը հանձնել հայրենիքի բարձրագույն պարգևը՝ Լենինի շքանշանը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը հոտնկայս բացականչում են՝ «Մեր հարազատ կոմունիստական կուսակցությանը՝ ուռա՛»)։

Թույլ տվեք ընթերցել ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը։

(Ընկ. Դ. Ֆ. Ուստինովը հրապարակում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը: Բեմ են բարձրանում հանրապետության ղեկավարները և աշխատանքի առաջավորները: Բուռն, երկար չլռող օվացիայի ներքո ընկեր Դ. Ֆ. Ուստինովը Լենինի շքանշանը ամրացնում է Սովետական Հայաստանի դրոշին)։

Ընկերնե՛ր։ Մեկ անգամ ևս ի սրտե շնորհավորում եմ ձեզ և ի դեմս ձեզ՝ հանրապետության բոլոր աշխատավորներին՝ Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի և Հայկական ՍՍՀ-ն Լենինի շքանշանով պարգևատրվելու առթիվ։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վստահ է, որ այդ բարձր պարգևը հանրապետության աշխատավորների համար ոգեշնչման աղբյուր կլինի ստեղծարար աշխատանքում՝ ի բարօրություն մեր բազմազգ հայրենիքի, հանուն լենինյան վեհ գաղափարների հաղթանակի։ (Երկարատև ծափահարություններ)։

Կեցցե՛ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

Թո՛ղ կեցցե և ամրապնդվի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

Կեցցե՛ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը՝ մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում)։

---

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

Թանկագին ընկերնե՛ր։

Այժմ իսկ ձեզ հետ մեկտեղ դարձանք պատմական ակտի վկաներն ու մասնակիցները։ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության դրոշին ամրացվեց սովետական պետության բարձրագույն շքանշանը՝ Լենինի շքանշանը։ (Բուռն ծափահարություններ)։



Հայրենիքի այդ բարձրագույն պարգևին մեր հանրապետությունն արժանացել է տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում հայ ժողովրդի ձեռք բերած հաջողությունների համար և ի նշանավորումն Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի։

Հանրապետության աշխատավորները, ամբողջ հայ ժողովուրդը մեծ ուրախությամբ, ցնծությամբ ընդունեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը Սովետական Հայաստանը Լենինի շքանշանով պարգևատրելու մասին և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ողջույնը։

Ողջույնի խոր ու հուզիչ տողերում նշված է հայ ժողովրդի կյանքի այդ պատմական իրադարձության հսկայական պրոգրեսիվ նշանակությունը, բնութագրված է այն հերոսական ուղին, որ հայ ժողովուրդը ռուս մեծ ժողովրդի, մեր երկրի բոլոր ժողովուրդների հետ համատեղ, Լենինի մեծ կուսակցության ղեկավարությամբ անցել է սոցիալիստական իդեալների հաղթանակի համար մղվող պայքարում։ (Երկարատև ծափահարություններ)։





Սովետական Հայաստանի աշխատավորներին խորապես հուզեցին այն խոսքերը, որոնք բարձր են գնահատում նրանց հավատարմությունը սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքներին, Հայրենական մեծ պատերազմի դաժան տարիներին Հայաստանի որդիների և դուստրերի ցուցաբերած արիությունը, այն ավանդը, որ աշխատավորական Հայաստանը մուծում է ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների իրականացման, մեր սոցիալիստական հասարակության հետագա զարգացման գործում։

Հայկական ՍՍՀ-ի պարգևատրումը մեր պետության բարձրագույն շքանշանով, ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ողջույնը՝ հայ ժողովրդի նկատմամբ կոմունիստական կուսակցության և սովետական պետության ջերմ հոգատարության ևս մի վառ դրսևորում է, մեր կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության հետևողական կենսագործման համոզիչ վկայությունը։ (Ծափահարություններ)։

Այս ուրախ ու հանդիսավոր օրը հանրապետության աշխատավորների, ամբողջ հայ ժողովրդի խոր սիրո զգացմունքները և սրտագին շնորհակալության խոսքերն ուղղված են Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեին, Կենտկոմի քաղբյուրոյին՝ մեր ժամանակի քաղաքական ու պետական ականավոր գործիչ, հավատարիմ լենինյան, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին։ (Երկարատև ծափահարություններ)։

Սոցիալիստական և կոմունիստական շինարարության ասպարեզում ձեռք բերած իրենց բոլոր հաջողություններով, էկոնոմիկայի և կուլտուրայի ծաղկմամբ, իրենց հինավուրց հողի վրա ստեղծված հիասքանչ նորոգ կյանքով, ծաղկուն քաղաքներով ու գյուղերով, խաղաղ աշխատանքի երջանկությամբ ու բերկրանքով, վաղվա օրվա նկատմամբ իրենց վստահությամբ՝ այս ամենով հանրապետության աշխատավորները, ամբողջ հայ ժողովուրդը պարտական են կոմունիստների կուսակցությանը։ Այն կուսակցությանը, որը մեր երկիրը ճիշտ ճանապարհով, լենինյան կուրսով տարել և տանում է հաղթանակից հաղթանակ, այն կուսակցությանը, որը սովետական ժողովրդի փորձված առաջնորդն է, մեր մեծ հայրենիքի ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամության ցեմենտող ուժը։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։

Մենք բոլորս հաճախ, չթուլացող ուշադրությամբ լսեցինք կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր, Սովետական Միության մարշալ ընկ. Դ. Ֆ. Ուստինովի խորիմաստ ու փայլուն ճառը, որում հանգամանորեն իմաստավորված է Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման պատմական նշանակությունը հայ ժողովրդի հետագա բախտի համար, այն հսկայական նվաճումները, որ մեր հանրապետության աշխատավորները լենինյան կուսակցության ղեկավարությամբ ձեռք են բերել սոցիալիստական և կոմունիստական շինարարության տարիներին։ Այստեղ բարի և հուզիչ շատ խոսքեր ասվեցին մեր ժողովրդի, Սովետական Հայաստանի հասցեին։

Մենք խորապես շնորհակալ ենք Ձեզ, թանկագին Դմիտրի Ֆյոդորովիչ, հանրապետությանը Լենինի շքանշան հանձնելու համար, հանրապետության կուսակցական կազմակերպության գործունեությունը, կոմունիստների, բոլոր աշխատավորների անձնվեր աշխատանքը բարձր գնահատելու համար։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունը հաշվի կառնի Ձեր խորհուրդներն ու արտահայտած անկեղծ ցանկությունները և բոլոր ուժերը կգործադրի, որպեսզի է՛լ ավելի բարձրացնի կազմակերպչական, քաղաքական ու գաղափարադաստիարակչական աշխատանքի մակարդակը, կոմունիստների, աշխատավորական մասսաների բոլոր ջանքերը, եռանդն ու կամքը ամբողջո-



վին կծառայեցնի ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների, տասներորդ հնգամյակի առաջադրանքների անթերի կատարման նպատակին։

Եվ խնդրում ենք Ձեզ ՍՄԿԿ Կենտկոմին, անձամբ թանկագին Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին հաղորդել, որ Սովետական Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները, ինչպես երբեք, լի են վճռականությամբ՝ լիովին կենսագործելու մեր կուսակցության բոլոր հոյակապ կանխագծումները։ Յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր աշխատավոր աշխատանքի իր բնագավառում, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ այդ համաժողովրդական գործի մեջ կներդնի իր ավանդը, կրկնապատկված եռանդով կաշխատի ի բարօրություն մեր մեծ հայրենիքի, ի փառս մեր հարազատ լենինյան կուսակցության։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։

Սովետական Հայաստանի աշխատավորները նշանակալի հոբելյանը՝ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը, նշում են որպես սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության ու եղբայրության մեծ ու պայծառ տոն, նշում են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների հաջող կատարման համար ծավալված պայքարի ուժեղացման, ռուս մեծ ժողովրդի, մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ հայ ժողովրդի անխախտ բարեկամության հետագա ամրապնդման, սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի վեհ զգացմունքի խորացման նշանաբանով, հարազատ կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը կուռ համախմբվածության նշանաբանով։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը կարևորագույն նշանակություն ունեցող ակտ, բախտորոշ իրադարձություն եղավ հայ ժողովրդի պատմական ճակատագրում։ Այն ո՛չ միայն հայ ժողովրդին փրկեց ֆիզիկական իսպառ ոչնչացման սպառնալիքից, այլև կանխորոշեց նրա սոցիալ-տնտեսական, քաղաքական և կուլտուրական զարգացման հետագա ամբողջ պրոգրեսիվ ընթացքը, նրան հնարավորություն տվեց հաղորդակցվելու ռուսական առաջավոր կուլտուրային, համադեմոկրատական և մարքսիստական գաղափարներին, համառուսաստանյան հեղափոխական շարժմանը, լենինյան կուսակցության մեծ գործին, ներգրավվելու այն պատմական պրոցեսի մեջ, որը մեծ Հոկտեմբերի հաղթանակի և Հայաստանում սովետական իշխանության հաստատման շնորհիվ նրան հասցրեց իսկական սոցիալական ազատագրման և ազգային վերածննդի։

Ռուսաստանի հետ Հայաստանի միավորումը նոր փուլ հանդիսացավ ռուս և հայ ժողովուրդների դարավոր բարեկամության մեջ։ Ընդլայնվեցին և խորացան նրանց բազմապիսի կուլտուրական կապերը, տնտեսական և քաղաքական հարաբերությունները։ Ռուս և հայ ժողովուրդների, ինչպես և մեր երկրի բոլոր ժողովուրդների բարեկամությունը սերտացավ և ամրապնդվեց ցարիզմի, կալվածատերերի ու կապիտալիստների դեմ մղված համատեղ պայքարի տարիներին, իսկ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո ստացավ նոր բովանդակություն, վերաճեց իսկական ինտերնացիոնալ եղբայրության։

Ռուս ժողովրդի հետ մեկտեղ հայ ժողովուրդն ահա մեկուկես դար ընթանում է պատմական մի ճանապարհով՝ պայքարի ճանապարհով, հեղափոխության ճանապարհով, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ճանապարհով։ Պատմությունն անհերքելիորեն ապացուցել է, որ հայ ժողովրդի համար դա վերածննդի, երջանկության, ազատության միակ հուսալի ուղին է։ (Ծափահարություններ)։ Մեր ժողովուրդը մեկուկեսդարյա հոբելյանը դիմավորում է հոգևոր ուժերի լիակատար ծաղկմամբ՝ սոցիալիստական և կոմունիստական շինարարության տարիներին հսկայական հաջողությունների հասնելով կյանքի բոլոր ասպարեզներում, մեր հայրենիքի ժողովուրդների եղբայրական միասնական ընտանիքում։

Այս տոնական օրը հայ ժողովրդի խորին հարգանքի խոսքերը, նրա սիրո և երախտագիտության զգացմունքներն ուղղված են ավագ եղբորը՝ ռուս մեծ ժողովրդին։ Ռուս ժողովուրդն այդ խոր հարգանքն ու սերը նվաճել է ազատա-

թյան ու երջանկության համար մղած իր հերոսական պայքարով, անձնվիրությամբ, հզոր տաղանդով, ստեղծարար հանճարով, մեծ աշխատասիրությամբ ու հոգու շռայլությամբ, իր հեղափոխական եռանդով և ինտերնացիոնալիզմով, մարքսիզմ-լենինիզմի իդեալներին, կոմունիստական հասարակության կառուցման գործին իր նվիրվածությամբ։ (Բուռն ծափահարություններ)։

Անցած 150-ամյակի, մեր հանրապետության այսօրվա համակողմանի ծաղկման բարձունքից առանձնապես պարզորոշ ենք տեսնում, թե Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը ինչպիսի խոշոր և բախտորոշ նշանակություն ունեցավ հայ ժողովրդի համար։

Հայաստանի բազմադարյան պատմությունը ստեղծարար աշխատանքի, հերոսական պայքարի ու հաղթանակների էջերով, ինչպես նաև ժողովրդի անհամար աղետների և օտարների ասպատակությունների էջերով լեցուն պատմություն է։

Հայաստանի վրայով անցած ավերիչ փոթորիկները չընկճեցին ժողովրդի կամքն ու ստեղծագործական ոգին։ Ցուցաբերելով մեծագույն կենսունակություն, նա շարունակեց ապրել, կառուցել, ստեղծել բարձր կուլտուրայի օջախներ։ Նա ստեղծեց իր գիրն ու գրականությունը, թատրոնը, նոտագրությունը, հին և միջնադարյան ճարտարապետության գլուխգործոցները, իր ժամանակի համալսարանները Անիում, Գլաձորում, Տաթևում, տվեց այնպիսի մեծ գիտնականների ու փիլիսոփաների մի ամբողջ համաստեղություն, ինչպիսիք են՝ Մեսրոպ Մաշտոցը, Մովսես Խորենացին, Դավիթ Անհաղթը, Անանիա Շիրակացին, Մխիթար Գոշը։ Հարյուրամյակների բոցերի միջով մեզ հասցրեց իր աննվաճ հոգու հերոսական երգը՝ «Սասունցի Դավիթ» էպոսը, Գրիգոր Նարեկացու և Թորոս Ռոսլինի, Ֆրիկի և Նահապետ Քուչակի հանճարեղ ստեղծագործությունները, տասնյակ հազարավոր հին մեծարժեք ձեռագրեր, որոնք, Բրյուսովի բնորոշմամբ, հայ ժողովրդի «ազնվության վկայագիրն» են։ (Երկարատև ծափահարություններ)։

Կորցնելով անկախությունը, Հայաստանը դարեր շարունակ գտնվում էր ստրկացնողների տիրակալության տակ, որոնց դաժան իշխանության ներքո ծայրահեղ անկման էին հասել երկրի արտադրաուժերը, կործանվում էին նյութական և հոգևոր մշակույթի հուշարձանները։ XV դարի վերջերից Հայաստանը գրեթե չդադարող ամայացուցիչ պատերազմների թատերաբեմ էր դարձել օսմանյան Թուրքիայի և սեֆյան Պարսկաստանի միջև, իսկ ավելի ուշ՝ բաժանվեց նրանց միջև։ Երկրի մեծ մասը՝ Արևմտյան Հայաստանը, ընկավ օսմանյան Թուրքիային, Արևելյան Հայաստանը՝ Պարսկաստանին։ Այդ ժամանակվանից սկսվեց Հայաստանի պատմության ամենամռայլ ու ամենաողբերգական ժամանակաշրջանը՝ ժողովրդի դաժան կեղեքման և նրա անհամար տառապանքների ժամանակաշրջանը։

Օսմանյան կայսրության մեջ ֆեոդալիզմը, ինչպես նշել է Կարլ Մարքսը, գտնվում էր բարբարոսական ամենացածր աստիճանի վրա։ Նույն մակարդակի վրա էր նաև ֆեոդալաբռնակալական ամբողջ սիստեմը սեֆյան Պարսկաստանում։ Իրենց դիրքերն ուժեղացնելու և զավթված երկրները թուլացնելու նպատակով նվաճողները վարում էին մասսայական ջարդերի և բռնի ձուլման քաղաքականություն, իրենց իշխանության ներքո գտնվող ժողովուրդներին ենթարկում էին ամարդի շահագործման և հոգևոր ճնշման, սիստեմատիկ ֆիզիկական բնաջնջման և տեղահանության։ Այդ ժողովուրդների ամեն մի ազատագրական ձգտում խեղդվում էր արյան մեջ, մոխրացվում կրակի մեջ։

Այդպիսի ողբերգական պատկեր էր ամբողջ Հայաստանում։ Նվաճողների գազանություններից, կոտորածից ու կողոպուտներից փրկվելու համար հայ ժողովրդի մի մասը ստիպված հեռանում էր իր բնօրրանից և բնակություն հաստատում շատ երկրներում և հատկապես Ռուսաստանում։

Իր հայրենիքի ազատագրության համար օտար լծի դեմ հայ ժողովրդի պայքարը երբեք չէր դադարում։

Պատմությունը, բուն կյանքը մեր ժողովրդին հուշեցին, թե ո՞վ է նրա իսկական բարեկամը, նրա ազատագրական շարժման գործիչներին և ամբողջ հայ



ժողովրդին հանգեցրին այն հաստատ համոզման, որ միայն Ռուսաստանի, ռուս ժողովրդի օգնությամբ է հնարավոր Հայաստանի ազատագրությունը ատելի լծից։ (Ծափահարություններ)։ Ինչպես ցույց տվեցին հետագա իրադարձությունները, հենց Ռուսաստանը եղավ այն երկիրը, որն օգնեց Անդրկովկասի ժողովուրդների ազատագրական պայքարին, ինչպես նաև բալկանյան ժողովուրդների պայքարին։

Հայ ժողովրդի հոգում վաղուց էր արմատավորված հավատը Ռուսաստանի ազատագրական միսիայի նկատմամբ։ Ռուսական կողմնորոշումը միակ ճիշտ և հեռատեսական քաղաքական կողմնորոշումն էր, որի կրողներն էին ժողովրդական լայն զանգվածները։ Այդ կողմնորոշման զարգացմանը նպաստեցին Ռուսաստանի հետ հայերի՝ վաղնջական ժամանակներից գոյություն ունեցող տնտեսական, կուլտուրական, ռազմական և առևտրական կապերը։

Ի թիվս շատերի, հայ ժողովրդի ռուսական կողմնորոշման՝ որպես նրա ազատագրական շարժման գաղափարախոսության, ականավոր արտահայտիչներ եղան Իսրայել Օրին և Հովսեփ Էմինը։

Պետրոս Առաջինին հասցեագրած զեկուցագրերում Օրին առաջ քաշեց Հայաստանը և ամբողջ Անդրկովկասը ռուսական զորքերի օգնությամբ, բուն անդրկովկասյան ժողովուրդների զինված ելույթի միջոցով ազատագրելու կոնկրետ պլան։

Հյուսիսային պատերազմի հաղթական ավարտից հետո Պետրոս Առաջինը ձեռնարկեց «Պարսկական արշավանքին»։ Կասպիականի ափերին ռուսական զորքերի երևալը ուժեղացրեց Անդրկովկասի ժողովուրդների ազատագրական շարժումը, նրանց զինված ապստամբության հանեց ընդդեմ թուրք-պարսկական բռնապետության։ Ռուսական կողմնորոշման հուժկու ցուցադրումը եղավ Սյունիքում բռնկած խոշոր զինված ապստամբությունը՝ փառաբանված զորավար Դավիթ Բեկի գլխավորությամբ։ (Երկարատև ծափահարություններ)։

Անդրկովկասի ժողովուրդների ազատագրումն իրականացավ XIX դարի սկզբներին։ 1801 թվականին Վրաստանը կամավոր կերպով միացավ Ռուսաստանին։ 1814 թվականին Ռուսաստանի կազմի մեջ մտավ Ադրբեջանը։ Այդ նույն տարիներին Ռուսաստանի կազմի մեջ մտան նաև Հայաստանի մի քանի շրջաններ։ Իսկ Արևելյան Հայաստանի վերջնական ազատագրումը և Ռուսաստանի հետ նրա միավորումը տեղի ունեցավ 1826—1828 թվականների ռուս-պարսկական պատերազմի շնորհիվ։

1827 թվականի հոկտեմբերի 1-ին ռուսական զորքերն ազատագրեցին Երևանը։ (Ծափահարություններ)։ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման պատմական ակտը պաշտոնապես վավերագրվեց 1828 թվականի փետրվարին՝ Ռուսաստանի և Պարսկաստանի միջև կնքված Թուրքմենչայի հաշտության պայմանագրով։ (Ծափահարություններ)։

Արևելյան Հայաստանի ազատագրումը մեծ ուրախություն ու ցնծություն բերեց հայ ժողովրդին։ Եվ այն ժամանակ, արտահայտելով ընդհանուրի տրամադրությունը, ռուս ազատարարների, ռուս ժողովրդի նկատմամբ տածվող սիրո և անսահման երախտագիտության զգացմունքները, այդ իրադարձությունների ժամանակակից ու ականատես, հայ մեծ լուսավորիչ, հայ-ռուսական բարեկամության կրքոտ ջատագով Խաչատուր Աբովյանը բացականչում էր.

«Օրհնվի՜ էն սհաթը, որ ռըսի օրհնած ոտը հայոց լիս աշխարհը մտավ... Ռուս անունը պետք է մեզ համար լինի սուրբ, ինչպես և նրա արյունը, որով մենք ազատվել ենք ընդմիշտ»։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Նենգ հակառակորդի դեմ մղված ճակատամարտերում ռուսական զորքերը մարտական բարձր ոգի և բացառիկ հերոսություն ցուցադրեցին, պատմության մեջ արիության ու խիզախության անմար էջեր գրեցին։

Ինքնին խորհրդանշական է, որ Հայաստանի ազատագրության ճակատամարտերում իրենց մարտական քաջությամբ ու խիզախությամբ հատկապես աչքի ընկան ռուս հեղափոխականների առաջին սերնդի ներկայացուցիչները՝ Կովկաս աքսորված դեկաբրիստները, որոնց հերոսական սխրանքների էր ոգեշնչում բռնակալությունից ժողովուրդների ազատագրման վեհ գաղափարը, այն

համոզմունքը, որ ռուսական բանակը հայ ժողովրդին բերում է վաղուց սպասված ազատագրությունը, որ այդ պատերազմը, ինչպես ասել է Ա. Ս. Գրիբոյեդովը, «ամենամարդասիրականն» էր։

Հայաստանի ազատագրության մարտերին մասնակցում էին Ռուսաստանի այնքան շատ հիանալի զավակներ, որ թվում էր, թե Կովկասյան կորպուսի դրոշների ներքո ազատագրական արշավի է ելել ռուսական առաջավոր սպայության և այն ժամանակվա մտավորականության ողջ ծաղիկը։ Հայաստանի համար կռվող անվեհեր դեկաբրիստների և «նրանց գործին առնչվածների» թվում էին Ե. Լաչինովը, Մ. Պուշչինը, Բեստուժև եղբայրները, Կոնովնիցին եղբայրները և շատ ուրիշներ։ Անձնուրաց քաջությամբ էին կռվում նշանավոր ազատախոհներ Ի. Բուրցովը և Ն. Ռաևսկին, Սուվորովի թոռը՝ Ալեքսանդր Սուվորովը, Պուշկինի եղբայրը՝ Լև Սերգեևիչը, 1812 թվականի Հայրենական պատերազմի փառաբանված պարտիզան, բանաստեղծ Դենիս Դավիդովը։ Գործող զորքերում էր և ռազմական գործողություններին մասնակցում էր Ալեքսանդր Սերգեևիչ Գրիբոյեդովը։ Իր բարեկամ դեկաբրիստներին հանդիպելու բուռն ցանկությամբ դեպի Էրզրում իր նշանավոր ճանապարհորդությունը կատարեց Ա. Ս. Պուշկինը։

Հայ ժողովուրդը խոր համակրանքով էր վերաբերվում դեկաբրիստներին՝ հանձինս նրանց տեսնելով պրոգրեսիվ Ռուսաստանը։ Դեկաբրիստների գաղափարները բարերար ազդեցություն գործեցին հայ հասարակայնության վրա, մեր ժողովրդի կուլտուրայի և հասարակական-քաղաքական մտքի զարգացման վրա։ Հայ ժողովրդի հետ, նրա մտավորականության հետ դեկաբրիստների շփումը ավելի խորացրեց ռուս և հայ ժողովուրդների դարավոր բարեկամությունը։

Նշելով պանծալի հոբելյանը՝ մենք այսօր հիացմունքով ենք վերհիշում դեկաբրիստների մարտական գործերը, որոնց սխրանքը, ինչպես Հայաստանի ազատագրության համար մարտնչած հազարավոր զինվորների սխրանքը, հավետ անմահ է հայ ժողովրդի հիշողության մեջ, դառնալով Հայաստանի ճակատագրին ռուս ժողովրդի իսկական եղբայրական մասնակցության ամենահոյակապ էջերից մեկը։

Իր սրտում սրբությամբ պահպանելով ռուս ազատարարների, ընկած հերոսների հիշատակը, երախտապարտ հայ ժողովուրդը նրանց պատվին արձաններ և հուշակոթողներ է բարձրացրել։ Նա հուշարձան է կանգնեցրել Էջմիածնից ոչ հեռու, հիմնել դեռ այն ժամանակներում՝ ի հիշատակ ռուսական զորքերի այն հերոսական ջոկատի զոհված ռազմիկների, որոնք Օշականում մղված ճակատամարտում ջախջախեցին տասնապատիկ գերազանցող հակառակորդին։

Մեր ժողովուրդը իր մայրաքաղաքում կանգնեցրել է նաև Ռուսաստանի մեծ զավակ, Անդրկովկասի ժողովուրդների մեծ բարեկամ Ա. Ս. Գրիբոյեդովի արձանը, այն մարդու, որը վճռական դեր է խաղացել Թուրքմենչայի պայմանագրի կնքման գործում, անչափ շատ բան է արել հազարավոր ընչազուրկ հայերի վիճակը թեթևացնելու, նրանց հայրենիք վերադարձնելու համար։ Գրիբոյեդովի անունը ընդմիշտ կապված է Երևանի հետ և այն բանի հետ, որ այստեղ, երբ դեռ չէր մարել ճակատամարտերի բոցը, առաջին անգամ դեկաբրիստների ուժերով, հեղինակի ներկայությամբ, բեմադրվեց նրանց համար հոգեհարազատ «Խելքից պատուհասը»։

Ամբողջ կամպանիայի ընթացքում ռուսական զորամասերի հետ մարտական սերտ գործակցությամբ, իրենց հայրենիքի ազատագրության համար հերոսաբար կռվում էին Հայաստանի ժողովրդական լայն մասսաները։ Հայ աշխարհազորական ջոկատները և կամավորական դումարտակները մասնակցում էին Կովկասյան կորպուսի բոլոր գործողություններին։

Մարտական գործողություններին անմիջականորեն մասնակցելուց բացի, հայ բնակչությունը համակողմանի աջակցում և օժանդակում էր ռուսական զորքերին, ստեղծում հատուկ հետևակային և հեծյալ ջոկատներ սահմանների պաշտպանության համար, օգնում էր պարենամթերքով, խնամում հիվանդներին ու վիրավորներին։ Ռուսական զորամասերին մեծ օգնություն էին ցույց



տալիս հայ կապավորները, ուղեկցողներն ու հետախույզները։

Հայ աշխարհազորայինների հետ միասին Հայաստանի ազատագրության համար հերոսաբար կռվում էին նաև մեր եղբայրները՝ վրացի և ադրբեջանցի կամավորները։ (Բուռն ծափահարություններ):

Ընկերնե՛ր։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման մեծագույն նշանակությունը, ամենից առաջ, այն է, որ այդ ակտի շնորհիվ հայ ժողովրդի մի մասը փրկվեց ֆիզիկական բնաջնջման սպառնալիքից, որին անխուսափելիորեն պետք է հասցներ ռազմաֆեոդալական բռնակալությունների բարբարոսական քաղաքականությունը։ Դրանում մեզ համոզում է հայերի ապրած ցնցող ողբերգությունը օսմանյան կայսրության մեջ, որոնք հետագայում դարձան պլանաչափորեն անցկացվող զանգվածային ջարդերի և կոտորածի, 1915 թվականի անազորույն եղեռնի զոհը։

«Որքան ավելի եմ խորհում պատմության մասին,— գրել է Էնգելսը Մարքսին,— այնքան ինձ համար պարզ է դառնում, որ... Ռուսաստանը իսկապես պրոգրեսիվ դեր է խաղում Արևելքի նկատմամբ»։ Այս խոսքերի իրավացիությունը հաստատվում էր Ռուսաստանի կազմում Անդրկովկասի և մասնավորապես Արևելյան Հայաստանի զարգացման ողջ ընթացքով։ (Ծափահարություններ):

Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմում ձգողական կենտրոն դարձավ աշխարհով մեկ ցրված հայերի համար, դարձավ նրանց կենտրոնացման, հետագա ազգահավաքման կենտրոն։ Արևելյան Հայաստանի ազատագրմամբ հայ ժողովրդի մի մասը, Ռուսաստանի հովանավորության ներքո, առհավետ փրկվեց մշտական ամայացուցիչ պատերազմներից, կողոպուտներից, ջարդերից ու բնաջնջումից։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման շնորհիվ ստեղծվեցին էկոնոմիկայի վերելքի՝ այն ժամանակների համար հնարավոր պայմաններ։ Միավորումից շատ չանցած, ավելացան ցանքատարածությունները, գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ XIX դարի կեսերից զարգացան ապրանքադրամական հարաբերությունները, առևտրատնտեսական կապեր հաստատվեցին Կենտրոնական Ռուսաստանի հետ։ Երևան եկան մանուֆակտուրային տնտեսություններ, տարածվեցին տարբեր արհեստներն ու արտադրությունները։ Դարավերջին երևան եկան բամբակե գործվածքների, կոշկեղենի, մետաքսագործական, գինու-կոնյակի արդյունաբերության ձեռնարկություններ, ծավալվեց պղնձահանքերի շահագործումը Ալավերդում և Զանգեզուրում, նկատելիորեն բարելավվեցին տրանսպորտային կապերը, կառուցվեց Թիֆլիս— Ալեքսանդրապոլ—Կարս երկաթուղին, որը հետո հասավ մինչև Երևան։

Արևելյան Հայաստանում պայմաններ ստեղծվեցին նաև հայ ժողովրդի կուլտուրայի, գրականության և արվեստի հետագա զարգացման համար։

Հայ գրականության և արվեստի գործիչների, որոնցից շատերը կրթություն էին ստացել Մոսկվայում, Պետերբուրգում և Ռուսաստանի այլ քաղաքներում, գաղափարագիտական հայացքների ձևավորումը և նրանց ստեղծագործության զարգացումը ընթանում էին համառուսաստանյան հասարակական կյանքի իրադրության մեջ, ռուսական առաջավոր դեմոկրատական մտքի և կուլտուրայի բարերար ազդեցությամբ։

Իր բախտը կապելով Ռուսաստանի հետ՝ հայ ժողովուրդը հնարավորություն ստացավ լայնորեն հաղորդակցվելու ռուս ժողովրդի հետ, հաստատելու ավելի սերտ բարեկամական կապեր, մտնելու ուղղակի կոնտակտի մեջ նրա հետ, Լենինի խոսքերով ասած, կապվելու տնտեսական, իրավական և կենցաղային բնույթի միլիոնավոր ու միլիարդավոր թելերով, ճանաչելու ռուս մարդու հիանալի հոգին, սովորելու հարուստ և հզոր ռուսաց լեզուն։ (Բուռն ծափահարություններ):

Բայց Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման կարևորագույն, վճռական նշանակությունն այն է, որ դա հայ ժողովրդի բախտը առհավետ կապեց ռուս մեծ ժողովրդի բախտի հետ։

Ահա թե ինչու Արևելյան Հայաստանի ազատագրումը և Ռուսաստանի հետ նրա միավորումը անմոռանալի, բախտորոշ իրադարձություն էր հայ ժողովրդի բազմադարյան պատմության մեջ։ Ահա թե ինչու, անկախ ցարիզմի քաղաքական, ռազմաստրատեգիական և տնտեսական նպատակներից, Անդրկովկասում Ռուսաստանի քաղաքականությունը օբյեկտիվորեն համընկնում էր Անդրկովկասի ժողովուրդների շահերին, և Ռուսաստանի հետ Անդրկովկասի միավորումը խորապես պրոգրեսիվ բնույթ ուներ։

Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման շնորհիվ հայ ժողովուրդը, իհարկե, չփրկվեց շահագործումից և սոցիալական ճնշումից։ Հայաստանում, ինչպես կայսրության մյուս մասերում, ցարիզմը վարում էր իր դասակարգային-սոցիալական շահերին համապատասխանող գաղութային քաղաքականություն։ Բայց Վ. Ի. Լենինը ուսուցանում էր նախահեղափոխական Ռուսաստանի մեջ տեսնել և զանազանել երկու Ռուսաստան։ Պաշտոնական Ռուսաստանը՝ կալվածատերերի ու կապիտալիստների Ռուսաստանը և իսկական Ռուսաստանը, որն ստեղծեց հեղափոխական դասակարգ, մարդկությանը տվեց ազատության պայքարի մեծ օրինակներ, Մարքսի և Էնգելսի բնորոշմամբ՝ «մեծ ու բարձրաշնորհ ժողովրդի» Ռուսաստանը՝ իր հեղափոխական հիանալի ավանդույթներով։

Մեր ժողովրդի առաջավոր զավակները, աշխատավոր մասսաները Հայաստանի ապագան կապում էին հեղափոխական Ռուսաստանի հետ, մեծ կուլտուրայի Ռուսաստանի հետ։ (Ծափահարություններ):

Նշելով մարդկության հանդեպ Ռուսաստանի պատմական ծառայությունը, բանաստեղծի ու մտածողի իր ողջ էությամբ խորապես զգալով այն մեծագույն հեղափոխական նորացումը, որը ռուս ժողովուրդը բերում է համաշխարհային քաղաքակրթությանը, Հովհաննես Թումանյանը գրել է. «Մեծ է Ռուսաստանի էս ծառայությունը քաղաքակիրթ աշխարհքի առաջ, և երբեք նրա կառավարության հոռի կողմերը չպետք է արգելեն տեսնելու էս մեծ գործը, որի հաջող ավարտումը համաշխարհային տոն է քաղաքակրթության համար»։ (Ծափահարություններ):

Ռուսաստանի կազմում ի հայտ եկան Անդրկովկասի և Ռուսաստանի ժողովուրդների առավել մերձեցման հնարավորություններ։ Հայ ժողովրդի ներգրավվելը Ռուսաստանի սոցիալ-տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի ոլորտը նպաստեց Հայաստանում հեղափոխական-դեմոկրատական մտքի զարգացմանը, որը ծնունդ առավ ու ձևավորվեց ռուս հեղափոխական դեմոկրատների անմիջական ազդեցությամբ։ Ռուսական հեղափոխական դեմոկրատիայի առաջավոր գաղափարները բարեբեր հող գտան հայ իրականության մեջ։ Հայ հեղափոխական դեմոկրատական հոսանքի առաջնորդն ու գաղափարախոսը հայ ժողովրդի պանծալի զավակ, ականավոր գրող և հրապարակախոս, բոցաշունչ հայրենասեր հեղափոխական Միքայել Նալբանդյանն էր՝ Չերնիշևսկու և Գերցենի բարեկամն ու զինակիցը։

Հանձին Ռուսաստանի հեղափոխական ուժերի Հայաստանի աշխատավոր մասսաները գտան իրենց վաղեմի իղձերի և հույսերի պաշտպանին։ Հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարը միաձուլվում էր Ռուսաստանի փառապանծ պրոլետարիատի պայքարին, որը դարձավ աշխարհի հեղափոխական վերակերտման մեծագույն ուժը։

Ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «Հայաստանի աշխատավորները ավելի ու ավելի ուժգնորեն էին մղվում դեպի Ռուսաստանի դեմոկրատական ու հեղափոխական ուժերը, հանձինս նրանց տեսնելով իրենց հզոր ու հավատարիմ դաշնակցին։ Ցարական ինքնակալության դեմ Ռուսաստանի պրոլետարիատի պայքարի պատմական փորձը Հայաստանի աշխատավորներին ցույց տվեց ազատության, սոցիալական պրոգրեսի միակ ճշմարիտ ուղին՝ հեղափոխական պայքարի ուղին, սոցիալիստական վերափոխումների ուղին»։

Սոցիալական ճակատամարտերի բոցերի մեջ ծնվում և ամրանում էր Ռուսաստանի բոլոր ժողովուրդների աշխատավորների անխզելի միասնությունը։ Վ. Ի. Լենինի ստեղծած ու դաստիարակած բոլշևիկների կուսակցությունը գլ-



խավորեց Ռուսաստանի պրոլետարիատի, աշխատավոր մասսաների պայքարը ընդդեմ ցարիզմի և բուրժուակալվածատիրական կարգերի։

Վ. Ի. Լենինը ուշադրությամբ հետևում էր Կովկասում հեղափոխական շարժման զարգացմանը, բոլշևիկների գործունեությունն ուղղելով դեպի պրոլետարական դասակարգային միասնության և ինտերնացիոնալ համախմբման հունը։

Հայ ժողովրդի լավագույն շատ զավակներ ընթացել են լենինյան գվարդիայի ավանգարդում, եղել են ինքնակալության դեմ Ռուսաստանի բանվոր դասակարգի մղած հերոսական ճակատամարտերի առաջին շարքերում։ Մեր ժողովուրդը հպարտանում է, որ իր որդիներն ու դուստրերը սկզբից իսկ ակտիվ մասնակցել են Ռուսաստանի պրոլետարիատի հեղափոխական շարժմանը, որ նրանցից շատերը եղել են կոմունիստական կուսակցության հիմնադիր և առաջնորդ Վ. Ի. Լենինի մերձավորագույն զինակիցները։ Ես ուզում եմ կրկնել այն, ինչ այստեղ ասաց ընկեր Դ. Ֆ. Ուստինովը։ Ժողովրդի հիշողությունից երբեք չեն ջնջվի մեր կուսակցության ականավոր գործիչներ Ստեփան Շահումյանի, Բոգդան Կնունյանցի, Սուրեն Սպանդարյանի, Ալեքսանդր Մյասնիկյանի անուններն ու գործերը, անվեհեր հեղափոխական Կամոյի (Սիմոն Տեր-Պետրոսյան), հեղափոխական կարմիր բանակի զորավար Գայի (Հայկ Բժշկյան), Հոկտեմբերյան հեղափոխության և քաղաքացիական պատերազմի հազարավոր ակտիվ մասնակիցների սխրանքները։ (Երկարատև ծափահարություններ):

Մեծ Հոկտեմբերի հաղթանակը դրեց համաշխարհային պատմության նոր դարագլխի՝ կապիտալիզմի կործանման և սոցիալիզմի հաղթանակի դարագլխի սկիզբը։

Մեծ Հոկտեմբերը մեկընդմիշտ վերջ տվեց դասակարգային ճնշմանը, փշրեց ազգային ճնշման կապանքները, նախկին ցարական Ռուսաստանում բնակվող բոլոր ժողովուրդների առջև բացեց պայծառ ապագայի, սոցիալական և ազգային իսկական ազատագրության ուղին։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը ցնծությամբ դիմավորեցին Անդրկովկասի աշխատավորական զանգվածները։ Անդրկովկասի աշխատավորները, բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ, պայքար ծավալելով սովետական իշխանության հաստատման համար, բազում փառավոր էջեր գրեցին այն տարիների հեղափոխական տարեգրության մեջ։ Ժողովրդի հիշողության մեջ երբեք չի խամրի հերոսական էպոպեան Բաքվի կոմունայի, որին գլխավորում էին Ստեփան Շահումյանը, նրա զինակիցներ Ալյոշա Ջափարիձեն, Մեշադի Ազիզբեկովը, Իվան Ֆիոլետովը և լենինյան գվարդիայի մյուս պանծալի հեղափոխականները։ (Բուռն ծափահարություններ):

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները հանուն սովետական իշխանության հաստատման պայքարի հանեցին աշխատավորների լայն մասսաներին։ Բոլշևիկների ղեկավարությամբ բանվորների և գյուղացիների հարաճուն հեղափոխական շարժումը 1920 թվականի մայիսին վերածվեց դաշնակցական արկածախնդիրների տիրապետության դեմ Հայաստանի աշխատավորների զինված ապստամբության։ Ապստամբությունը հզոր հարված հասցրեց բուրժուանացիոնալիստական հակահեղափոխությանը, որի հակաժողովրդական վարչակարգը շուտով փլվեց Հայաստանի հեղափոխական ուժերի նոր, հզոր գրոհի ներքո։

Բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ ապստամբած աշխատավորները հերոսական 11-րդ կարմիր բանակի օգնությամբ 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանում հաստատեցին սովետական իշխանություն։ Մեծ Լենինը ջերմորեն ողջունեց իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանը։

Ընկերնե՛ր։

Սովետական իշխանությունը հայ ժողովրդին, ինչպես երկրի բոլոր ժողովուրդներին բերեց սոցիալական և ազգային իսկական ազատագրություն։ Հոկտեմբերյան հեղափոխությունը, սովետական իշխանությունը հայ ժողովրդին տվեցին սոցիալիստական պետականություն, նրան դարձրին ծաղկուն սոցիա-

լիստական ազգ, նրան բերեցին իսկական ազատություն, խաղաղ աշխատանքի երջանկություն, կյանքի բերկրանք՝ սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում։

Հայաստանում սովետական իշխանության հաղթանակով սկսվեց սոցիալիստական շինարարության դարաշրջանը՝ հայ ժողովրդի ստեղծարար ուժերի վերածննդի, նրա տնտեսական ու կուլտուրական կյանքի ծաղկման դարաշրջանը։

Հայաստանում սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրվանից դրվեց սոցիալական արմատական վերափոխումների, նոր հասարակության հիմքերի կառուցման սկիզբը։ Հայաստանի աշխատավորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, համակող խանդավառությամբ ձեռնամուխ եղան ավերված տնտեսության վերականգնմանը, արցունքի այդ հովիտը, ինչպես ասում էր Ալեքսանդր Մյասնիկյանը, ծաղկուն երկրամաս դարձնելուն։ Եվ այդ գործում Սովետական Հայաստանին մեծ օգնություն ցույց տվեցին Սովետական Ռուսաստանը և եղբայրական մյուս հանրապետությունները։ Չնայած իրենք էլ մեծ դժվարություններ էին կրում, նրանք Հայաստանի աշխատավորներին օգնեցին դուրս գալու ավերմունքի ու սովի ճիրաններից և լայն ճակատով ծավալելու սոցիալիստական շինարարությունը, նոր հիմքի վրա բարձրացնելու էկոնոմիկան ու կուլտուրան։

Սոցիալիզմի մեծ նվաճումը, ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության, ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության գաղափարների հաղթական ավարտը ՍՍՀՄ-ի կազմավորումն էր, որը դարձավ հասարակությունը սոցիալիստական սկզբունքներով վերակառուցելու, սովետական բոլոր հանրապետություններում էկոնոմիկայի և կուլտուրայի բուռն վերելքն ապահովելու գլխավոր գործոններից մեկը։

Հայաստանի օրինակը, այն երկրի, որը սովետական իշխանության հաստատման շնորհիվ վերածնվեց մոխիրներից ու փլատակներից և արդեն առաջին հնգամյակների տարիներին դարձավ զարգացած ինդուստրիայի, կոլեկտիվ գյուղատնտեսության, համատարած գրագիտության, սոցիալիստական կուլտուրայի հանրապետություն, հանդիսանում է մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիզմի գաղափարների, ժողովուրդների մեծ բարեկամության կենարար և ստեղծարար ուժի հիանալի օրինակ։

Սովետական Հայաստանը ձգողական կենտրոն դարձավ աշխարհով մեկ սփռված հայերի համար, որոնք սկսեցին վերադառնալ իրենց նորոգ սոցիալիստական հայրենիքը։

Սոցիալիզմին, Լենինի գաղափարներին, կոմունիստական կուսակցության գործին իր նվիրվածությունը հայ ժողովուրդը, ինչպես և մեր մեծ երկրի բոլոր ժողովուրդները, ցուցադրեց Հայրենական մեծ պատերազմի դժվարին տարիներին, երբ սովետական մարդիկ հերոսաբար պայքարում էին սիրելի հայրենիքի ազատության և անկախության համար, հիտլերյան ֆաշիզմից պաշտպանում աշխարհում առաջին սոցիալիստական պետության նվաճումները։ Ահեղ փորձությունների տարիներին է՛լ ավելի ամրապնդվեց սովետական ժողովուրդների գաղափարաքաղաքական միասնությունը, նրանց եղբայրական բարեկամությունը, որոնք դարձան հաղթանակի կարևոր գործոն։

«Հայ ժողովրդի հետ իմ առաջին ծանոթությունն սկսվել է Հայրենական մեծ պատերազմի օրերին,— ասել է Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը։— Ինձ վիճակվեց այն ժամանակ ճանաչել մեր սովետական հայրենիքին, սոցիալիզմի ու կոմունիզմի գործին անսահմանորեն նվիրված՝ հայ ժողովրդի բազում քաջարի, խիզախ զավակներին։ Նրանք մարտիկներ էին, սպաներ, գեներալներ։ Մարտական բարեկամությունը առանձնահատուկ բարեկամություն է։ Դա հնարավորություն է ընձեռում կարճ ժամանակամիջոցում ճանաչելու մարդու հոգին։ Եվ այն ժամանակ, դաժան ճակատամարտերի օրերին, ես ճանաչեցի հայ ժողովրդի սքանչելի հոգին»։ (Երկարատև ծափահարություններ):

Իրենց արիությամբ, խիզախությամբ, մեր սոցիալիստական հայրենիքին անսահման նվիրվածությամբ պատերազմի դաժան տարիներին աչքի ընկան



Հայաստանի հազարավոր ու հազարավոր որդիներ ու դուստրեր, որոնք, ինչպես բոլոր սովետական մարդիկ, կռվեցին հայրենիքի պատվի և անկախության համար, բազում պայծառ էջեր գրեցին աշխարհը ֆաշիստական ստրկացումից փրկող սովետական ժողովրդի հերոսական տարեգրության մեջ։ Հայ ժողովուրդը հպարտանում է իր զավակների սխրանքով։ Մենք մի անգամ ևս մեր ուրախությունն ենք հայտնում այն առթիվ, որ այսօր մեր մեջ է գտնվում մեր ժողովրդի նշանավոր զավակներից մեկը՝ սովետական փառաբանված զորավար, Սովետական Միության կրկնակի հերոս, Սովետական Միության մարշալ Հովհաննես Քրիստափորի Բաղրամյանը։ Նրա կյանքի փառահեղ, մարտական ուղին հայրենիքին ծառայելու, սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի, կոմունիստական կուսակցությանը անսահման հավատարմության վեհ օրինակ է։ (Երկարատև ծափահարություններ):

Հետպատերազմյան ծանր տարիներին սովետների երկրի ժողովուրդները կրկին ցուցադրեցին իրենց ինտերնացիոնալ անխախտ միասնությունը, ձեռնամուխ լինելով ժողովրդական տնտեսության վերականգնմանն ու վերելքին, մեր հայրենիքի բազմակողմանի առաջընթացին։

Զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը կոմունիստական կուսակցության ղեկավարության, սովետական ժողովրդի վաթսունամյա ստեղծարար գործունեության հիմնական արդյունքն է։

Համաշխարհային պատմական նշանակություն ունեցավ սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը մեր երկրում, որն ընթացավ սոցիալիզմը համաշխարհային սիստեմի վերաճելու պայմաններում։ Անչափ աճեց երկրի տնտեսական պոտենցիալը, անհամեմատ ավելի հարուստ դարձավ սովետական մարդկանց նյութական ու հոգևոր կյանքը, բարձրացավ էկոնոմիկայի հանրայնացման մակարդակը, ավելի ամրապնդվեցին սովետական ժողովուրդների բարոյաքաղաքական միասնությունը, նրանց տնտեսական սերտ համագործակցությունն ու փոխօգնությունը, խոր տեղաշարժեր կատարվեցին հասարակության սոցիալական կառուցվածքում, կազմավորվեց մարդկանց պատմականորեն նոր, սոցիալական և ինտերնացիոնալ հանրությունը՝ սովետական ժողովուրդը, պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը վերաճեց՝ համաժողովրդական սոցիալիստական պետության։

Սովետական երկրի կյանքում տեղի ունեցած բոլոր խոր ու արմատական փոփոխություններն իրենց արտացոլումը գտան Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության՝ զարգացած սոցիալիզմի հասարակության Հիմնական օրենքի մեջ, որի առաջին տարեդարձը երկրի աշխատավորները վերջերս նշեցին մեր հայրենիքի կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած աշխատանքային նոր հաղթանակներով։

Զարգացած սոցիալիզմի հասարակությանը բնորոշ հատկանիշներն է այժմ բնութագրում Սովետական Հայաստանի նյութական ու հոգևոր ողջ կյանքը։

Գեղեցիկ ու բարեկարգ ժամանակակից քաղաքներ, ավաններ ու գյուղեր. արդյունաբերական-արտադրական հզոր պոտենցիալ՝ կենտրոնացված հարյուրավոր ձեռնարկություններում ու միավորումներում, այդ թվում՝ ռադիոէլեկտրոնային, էլեկտրատեխնիկական, սարքաշինական, հաստոցաշինական, քիմիական, թեթև և սննդի արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում, որոնք տալիս են ազգային եկամտի մոտ երկու երրորդը։ Երկրագործության և անասնապահության բարձր կուլտուրա, ագրոտեխնիկայի մեքենայացման, քիմիացման, մելիորացման արդիական մակարդակ ունեցող գյուղատնտեսություն. ճանապարհների և կոմունիկացիաների խիտ ցանց՝ զինված տրանսպորտի և կապի արդիական միջոցներով. ժողովրդատնտեսական և սոցիալ-կուլտուրական նշանակություն ունեցող հարյուրավոր կառույցներ. գիտությունների ակադեմիայում, տասնյակ գիտահետազոտական ինստիտուտներում և հիմնարկություններում կենտրոնացված մտավոր և գիտական հսկայական պոտենցիալ, դպրոցների, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական

ուսումնական հաստատությունների, կուլտուրայի օջախների լայն ցանց, բուռն զարգացած սոցիալիստական գրականություն և արվեստ, աշխատավորների մշտապես բարձրացող բարեկեցություն, սովետական սոցիալիստական ապրելակերպ— այսպիսին է այսօրվա Սովետական Սոցիալիստական Հայաստանի պատկերը։ (Ծափահարություններ)։

Կոմունիստական կուսակցության դաստիարակած և պատրաստած քաղաքականապես հասուն, կրթված, տեխնիկապես գրագետ, բարձր որակավորմամբ հազարավոր սոցիալապես ակտիվ մարդիկ, որոնք կազմում են հերոսական բանվոր դասակարգը և փառապանծ կոլտնտեսային գյուղացիությունը; բարձր քաղաքացիական պարտքի, սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի խոր զգացումով տոգորված ժողովրդական մտավորականություն, աշխատանքում, ուսման և գիտության ասպարեզում խիզախ ու կենսուրախ երիտասարդություն, աճող երջանիկ սերունդ— այսպիսիք են այսօրվա Սովետական Սոցիալիստական Հայաստանի մարդիկ, այսպիսին է մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին, ժողովուրդների եղբայրական բարեկամության իդեալներին անսահման նվիրված, իր պայծառ ապագայի նկատմամբ վստահությամբ լի մեր սովետական հանրապետության ստեղծարար աշխատավոր ժողովուրդը։ (Ծափահարություններ)։

Սովետական Հայաստանի աշխատավորները, ողջ հայ ժողովուրդը խորապես գիտակցում են, որ մեր հանրապետության այդ բոլոր նվաճումները ձեռք են բերվել հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդների և ազգությունների համատեղ պայքարով ու աշխատանքով, ՍՄԿԿ-ի գլխավոր գծի, նրա լենինյան իմաստուն ազգային քաղաքականության շնորհիվ, Սովետական Միության բոլոր ժողովուրդների, առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի բարեկամության և անշահախնդիր օգնության շնորհիվ։ (Բուռն ծափահարություններ)։

Հանրապետության աշխատավորները բարձր են գնահատում այն բարեկամությունն ու եղբայրությունը, օգնությունն ու աջակցությունը, որ իրենց մշտապես ցույց են տվել և ցույց են տալիս եղբայրական սովետական ժողովուրդները։ Եվ այսօր մենք, Հայաստանի աշխատավորության, ողջ հայ ժողովրդի անունից ի սրտե անկեղծ շնորհակալություն ենք հայտնում մեր բոլոր եղբայր ժողովուրդներին։ (Բուռն ծափահարություններ)։

ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը սովետական հասարակության մեծ նվաճումն է, նրա բոլոր հաջողությունների երաշխիքը։ Այդ բարեկամությունը, ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, մեր անգնահատելի գանձն է, սոցիալիզմի ամենանշանակալի և յուրաքանչյուր սովետական մարդու ամենանվիրական հասույթներից մեկը։ Եվ այդ բարեկամությունը մենք, սովետական մարդիկ, միշտ աչքի լույսի պես կպահպանենք։

Ընկերնե՛ր։

Սովետական ողջ ժողովրդի կյանքում նշանակալի իրադարձություն էր ՍՄԿԿ XXV համագումարը, որը նախանշեց կոմունիստական շինարարության նոր հոյակապ հեռանկարները։

Մեր հանրապետության, ինչպես մեր երկրի հասարակական-քաղաքական ողջ կյանքը, տոգորված է կուսակցության XXV համագումարի գաղափարներով։ Կոմունիստների, աշխատավորների բոլոր ջանքերը նպատակամղված են նրա պատմական որոշումների կատարմանը, տասներորդ հնգամյակում մեր երկրի սոցիալական ու տնտեսական զարգացման ծավալուն ծրագրի իրականացմանը։

Համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները, ՍՍՀՄ նոր Սահմանադրության հաստատումը, համագումարի մշակած՝ կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության կենսագործման խնդրում ՍՄԿԿ Կենտկոմի, նրա քաղբյուրոյի, տիտանական կազմակերպչական ու քաղաքական գործունեությունը, կուսակցական, տնտեսական և կուլտուրական շինարարության, միջազգային հարաբերությունների հարցերին նվիրված ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատությունների ու ելույթները, որպես հորդ աղբյուր, մշտապես սնել



և սնում են մասսաների հասարակական-քաղաքական, ստեղծագործական ակտիվությունն ու եռանդը, նրանց մոբիլիզացնում՝ հաջողությամբ կատարելու ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, տասներորդ հնգամյակի առաջադրանքները։

Հետհամագումարյան ժամանակաշրջանում սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի արդյունքն է մեր հասարակության հետագա համակողմանի դինամիկ զարգացումը։ Ավելի է աճել Սովետական Միության տնտեսական ու պաշտպանական հզորությունը, բարձրացել է նրա միջազգային հեղինակությունը, ամրապնդվել են մեր մեծ բազմազգ հայրենիքի ժողովուրդների գաղափարաքաղաքական միասնությունը, նրանց եղբայրական բարեկամությունը, բարձրացել է սովետական մարդկանց կյանքի նյութական ու հոգևոր մակարդակը։

Սովետական Հայաստանի առջև սոցիալ-տնտեսական զարգացման վիթխարի հեռանկարներ են բացվել տասներորդ հնգամյակում։ Հանրապետության արդյունաբերական արտադրանքի ծավալը կմեծանա 43—47 տոկոսով, գյուղատնտեսության համախառն արտադրանքը՝ 22—25 տոկոսով, կիրականացվի մեծ ծավալի կապիտալ շինարարություն։ Առավել կբարելավվեն աշխատավորների աշխատանքի ու կենցաղի պայմանները, ավելի կբարձրանա բնակչության բժշկական սպասարկման մակարդակը, լայնորեն կզարգանան ժողովրդական կրթությունն ու կուլտուրան, որը կնպաստի նոր մարդու հետագա համակողմանի ձևավորմանը, անհատի ներդաշնակ զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը։ Տասներորդ հնգամյա պլանի կարևորագույն արդյունքը կհանդիսանա աշխատավորների բարեկեցության հետագա բարձրացումը։

Տասներորդ հնգամյակում հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման պլանի տեմպային բարձր բնութագրերը, խնդիրների խոշոր մասշտաբայնությունն ու բազմապլանայնությունը, դրանց որակական նոր բնույթը, բնականաբար, թելադրել ու թելադրում են աշխատանքի որակի հետագա բարձրացում մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում, էկոնոմիկայի ղեկավարման բարելավում ու կատարելագործում, քաղաքական և կազմակերպչական աշխատանքի ոճի ու մեթոդների լիովին համապատասխանեցում ծառացած խնդիրների մակարդակին և կուսակցության նոր բարձր պահանջներին։

Այս ամենի իրականացումը դարձել է հետհամագումարյան ժամանակաշրջանում հանրապետության կուսակցական կազմակերպության աշխատանքի միջուկը։

Պայքարելով ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների, տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար, հանրապետության աշխատավորները հիանալի հաջողությունների են հասել։

Դինամիկ զարգանում է հանրապետության էկոնոմիկան՝ երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի օրգանական բաղկացուցիչ մասը։

Արդյունաբերական արտադրության ծավալը երկու տարում ավելացել է գրեթե 17 տոկոսով՝ հնգամյա պլանով նախատեսված 15,7 տոկոսի փոխարեն։ Բարձրացել են թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակն ու որակը։ Տասներորդ հնգամյակի առաջին կեսում պետական որականիշով ապրանքների թողարկումը կրկնապատկվել է և այժմ կազմում է արտադրության ընդհանուր ծավալի 13 տոկոսը։ Գերակատարվել են արտադրանքի ծավալի և իրացման նաև ընթացիկ տարվա անցած ինն ամիսների պլանները։ Անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ արդյունաբերական արտադրության ծավալի աճը կազմել է 8,1 տոկոս, բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։

Նշանակալի հաջողություններ են ձեռք բերել գյուղի աշխատավորները։ Կատարվել է գյուղատնտեսական մթերքների հիմնական տեսակների արտադրության ու մթերումների հնգամյակի առաջին երկու տարիների պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը մեծացել է 22 տոկոսով։

Ներկայումս գյուղի աշխատավորները, չնայած բնակլիմայական դժվարին պայմանների ծանր հետևանքներին, համառ պայքար են մղում երկրագործական և անասնապահական մթերքների արտադրության և պետությանը վաճառելու պլանների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման համար։

Անցած երկուսուկես տարում գործարկվել են ավելի քան երկու միլիարդ ռուբլու հիմնական ֆոնդեր։ Շահագործման են հանձնվել Հայաստանի ատոմային էլեկտրակայանի առաջին հերթը՝ ավելի քան 400 հազար կիլովատ կարողությամբ, Սևան—Շորժա երկաթուղագիծը, արտադրական նոր կարողություններ՝ ձեռնարկություններում և միավորումներում, 2.321 հազար քառակուսի մետր բնակտարածություն, 84.900 ուսումնական տեղ, 15.100 տեղ մանկական նախադպրոցական հիմնարկություններում, կուլտուրական և սոցիալական նշանակություն ունեցող բազմաթիվ այլ օբյեկտներ։

Մեծ հաջողությունների են հասել հանրապետության գիտնականները, որոնք հետազոտություններ են կատարում գիտության ու տեխնիկայի ամենատարբեր բնագավառներում։ Ամրապնդելով գիտության կապը արտադրության հետ, նրանք ակտիվ մասնակցում են ժողովրդատնտեսական կոնկրետ խնդիրների լուծմանը։

Ուրախալի են ստեղծագործական մտավորականության նվաճումները, որոնք ստեղծել են սոցիալիստական ռեալիզմի հիանալի, աշխատավորության դաստիարակությանը նպաստող շատ ստեղծագործություններ. դրանցում արտացոլված է այն, ինչով ապրում է երկիրը, գովերգվում են հայրենիքը, մեր հրաշալի ժամանակակիցների մեծագործություններն ու սխրանքները, ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը։

Համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքների համար Սովետական Հայաստանը 1976—1977 թվականներին հաղթող ճանաչվեց և երկու տարի անընդմեջ արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ (Երկարատև ծափահարություններ):

Հանուն առաջընթացի նոր բարձունքների ծավալած իրենց անձնվեր պայքարում հանրապետության կոմունիստները, աշխատավորները մշտապես զգում են ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության, անձամբ ընկեր Լ. Ի. Բրեժնևի անսահման ուշադրությունն ու օգնությունը, հայրական հոգատարությունը մեր ժողովրդի բարօրության, Սովետական Հայաստանի հետագա համակողմանի ծաղկման նկատմամբ։

Միայն վերջին երեք տարում ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդն ընդունել են մի շարք կարևոր որոշումներ, որոնք նպատակամղված են մեր հանրապետության զարգացման ամենահրատապ հարցերի լուծմանը, նըպաստում են տնտեսական և կուլտուրական շինարարության գործի հետագա բարելավմանը։

«Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին», «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և նրա արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին», «Երևան քաղաքում մետրոպոլիտենի կառուցման մասին», Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը դադարեցնելու և դրա վերապրոֆիլացման մասին՝ ամենքիդ հայտնի որոշումները դրա վառ ու համոզիչ վկայությունն են։ Մեր ժողովուրդը իրավամբ այդ որոշումներն անվանել է պատմական, քանի որ դրանք ուղղված են տնտեսական, սոցիալական, դեմոգրաֆիական, էկոլոգիական բնույթի լայն մասշտաբի պրոբլեմների լուծման նպատակին և անգնահատելի նշանակություն ունեն։

Դրանք ճշտորեն և գիտական հիմնավորվածությամբ սահմանում են հանրապետության սոցիալական և տնտեսական հետագա զարգացման ուղղությունը, ստեղծում ժողովրդական տնտեսության և նրա առանձին ճյուղերի կառուցվածքի բարելավման ռեալ նախադրյալներ, հստակ սահմանում են տնտեսական շինարարության առաջնահերթ խնդիրները, լուծում են սոցիալական բնույթի



մի շարք հանգուցային պրոբլեմներ, ծառայում են հանրապետության նյութական և աշխատանքային ռեսուրսների առավել խնայողական և ռացիոնալ օգտագործման, բնության և շրջակա միջավայրի պահպանության, հանրապետության աշխատավորների նյութական և հոգևոր կյանքի հետագա հարստացման նպատակին։

Հոբելյանի նախօրեին, ընկեր Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդն ընդունեցին ևս մի բացառիկ կարևոր, պատմական որոշում՝ «Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին»։ (Ծափահարություններ): Այս որոշմամբ որակապես նոր, կոմպլեքսային լուծում է ստանում Սևանի պրոբլեմը, որի բախտը վերջին տասնամյակներում հուզում էր բոլորիս։ Խնդիր է դրվում բարձրացնել լճի ջրի մակարդակը, այն հաշվով, որ վերականգնըվի նրա էկոլոգիական ռեժիմը, որի խախտումը սպառնում է լինել բնության այդ եզակի, անգին պարգևի անդառնալի կորուստ, զրկել մեզ Հայաստանի կապույտ մարգարտից, որը մեր ժողովրդի ջերմ սիրո և հպարտության առարկան է։

Այդ որոշմամբ Սևանի պրոբլեմը դառնում է ընդհանուր միութենական նշանակություն ունեցող խնդիր։ Դրա լուծման գործում ներգրավվում են մի շարք միութենական մինիստրություններ ու գերատեսչություններ, գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան։ Պրոբլեմի լուծումը կիրականացվի խիստ գիտական հիմունքներով, Սևանա լճի ավազանի բնության պահպանության և դրա բնական ռեսուրսների հեռանկարային ռացիոնալ օգտագործման կոմպլեքսային սխեմայի հիման վրա՝ ջրամբարներ և այլ ջրատնտեսական օբյեկտներ կառուցելու միջոցով։ Որոտան գետի հոսքը Արփա գետի ավազան շրջելու հիդրոտեխնիկական կառուցվածքների կոմպլեքսի շինարարության միջոցով կառուցվող Արփա—Սևան թունելով լիճը կլցվի 200 միլիոն խորանարդ մետր լրացուցիչ ջուր, որը կնպաստի նրա մակարդակի բարձրացմանը։ Այս նպատակով կիրականացվեն Սևանի ավազանում մթնոլորտային տեղումներն արհեստականորեն ավելացնելու փորձնական աշխատանքներ։

Կապահովվի ջրապահպանական օբյեկտների շինարարությունը և կիրականացվեն կոմպլեքս միջոցառումներ Սևանա լճի աղտոտումը լրիվին դադարեցնելու նպատակով։ Ծավալուն միջոցառումներ կիրագործվեն ավազանի բնական հարստությունների վերարտադրության ապահովման, լճը իշխան ձկով առավելագույնս հարստացնելու, լճափերն անտառապատելու համար։

Թույլ տվեք, ընկերներ, ձեր անունից, հանրապետության բոլոր կոմունիստների, աշխատավորների, ամբողջ հայ ժողովրդի անունից ՍՄԿԿ Կենտկոմին, սովետական կառավարությանը, անձամբ թանկագին ընկեր Լ. Ի. Բրեժնևին խորին շնորհակալություն հայտնել մեր ժողովրդի և մեր հանրապետության բարօրության նկատմամբ ցուցաբերած հոգատարության նոր վառ դրսևորման համար։ (Երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր։

Օրինական հպարտությամբ խոսելով կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ հանրապետության աշխատավորների ձեռք բերած հաջողությունների մասին, այսօր, այս տոնական օրը, պետք է ասեմ, որ մենք կարող էինք ավելի մեծ նվաճումների հասնել, ավելի լավ ցուցանիշներ ունենալ, եթե առավել լրիվ օգտագործեինք բոլոր հնարավորությունները, եթե ժողովրդական տնտեսության առանձին օղակներում տեղ չգտնեին մեր աշխատանքին խանգարող լուրջ թերություններ ու վրիպումներ, եթե մեր կենսագործունեության բոլոր բնագավառներում առավել կազմակերպվածություն և կարգ ու կանոն լիներ։

Մենք կարող էինք ավելի մեծ հաջողությունների հասնել, եթե հանձնարարված գործի, պլանային առաջադրանքների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների լրիվ ու ժամանակին կատարման համար բարձր պատասխանատվության զգացումով տոգորված լինեինք. բոլորս անխտիր, յուրա-

քանչյուր աշխատող, յուրաքանչյուր կոլեկտիվ, յուրաքանչյուր սկզբնական կուսակցական կազմակերպություն։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունը իր խնդիրն է համարում քաղաքական և տնտեսական բոլոր հնարավորությունների լրիվ օգտագործմամբ, սոցիալիստական մրցության լայն ծավալմամբ հասնել հանրապետության բոլոր աշխատավորների ջանքերի մոբիլիզացման հնգամյակի երրորդ տարվա և հնգամյակի սոցիալական ու տնտեսական զարգացման պլանների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անշեղ կատարման, հանրային արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի հետևողական բարձրացման նպատակով։

Մենք պետք է ապահովենք մյուս տնտեսական շրջանների արտադրանքի մատակարարումների պլանների անվերապահ և ժամանակին կատարումը, որը թելադրվում է երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի բարձր շահերով։

Մեր խնդիրն ենք համարում ժամանակին բացահայտել և ավելի արագ վերացնել եղած թերությունները. ամենուրեք բարձրացնել կարգապահությունը, հետևողականորեն, անողոք պայքարել ամեն տեսակ բացասական դրսևորումների դեմ։ Մենք մեր խնդիրն ենք համարում բոլոր օղակների կադրերին դաստիարակել կուսակցական սկզբունքայնության ոգով, ձեռք բերված արդյունքների նկատմամբ քննադատական վերաբերմունքի ոգով, հասնել այն բանին, որ մեր բոլոր կադրերը տիրապետեն աշխատանքի լենինյան ոճին, ղեկավարման արվեստին, ջանան ստեղծագործաբար, նախաձեռնությամբ, գտնեն մեր զարգացման բարդ խնդիրների լուծման նոր եղանակներ ու միջոցներ, ավելի համարձակ հաղթահարեն աշխատանքին խանգարող ստերեոտիպերը, որ նրանց պրակտիկայից լիովին բացառվեն բարեհոգության և գոռոզամտության ռեցիդիվները։

Մենք մեր խնդիրն ենք համարում աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործի հետագա բարելավումը, մեր հասարակության յուրաքանչյուր անդամի հոգում սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի զգացման խորացումը։ Եվ առաջադրված բոլոր խնդիրները մենք անպայման կկատարենք։

Ընկերնե՛ր։

Սովետական ժողովուրդը լավատեսությամբ է նայում վաղվա օրվան, վստահորեն նորանոր բնագծեր է նվաճում ՍՄԿԿ XXV համագումարի նախանշած հոյակապ ծրագրի իրականացման գործում։

Կուսակցության և ժողովրդի կյանքում կարևոր իրադարձություն էր ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումը։ Ինչպես բոլոր սովետական մարդիկ, հանրապետության գյուղի, արդյունաբերական ձեռնարկությունների, գիտական հիմնարկությունների աշխատավորները, ջերմորեն ընդունելով պլենումի որոշումները, ակտիվ պայքարի են ներգրավվել պլենումի նախատեսած ծրագրի՝ գյուղատնտեսությունը սոցիալիստական էկոնոմիկայի բարձր զարգացած սեկտորը դարձնելու ծրագրի, կատարման համար։

Ինչպես մեր երկրում, նույնպես և արտասահմանում մեծ հետաքրքրություն հարուցեց և լայն արձագանք գտավ ընկեր Լ. Ի. Բրեժնևի Բաքվում ունեցած ելույթը։ Այդ փայլուն ճառում բացահայտվել են ամբողջ երկրի ստեղծարար գործունեության հիմնական ուղղությունները, ուշադրություն է հրավիրված մի շարք չլուծված պրոբլեմների ու խնդիրների վրա, ցույց է տրված ժողովրդական մասսաների՝ որպես մեր հաջողությունների անսպառ աղբյուրի, ստեղծագործական ակտիվության ու նախաձեռնության նշանակությունը։ Դրանում խորապես վերլուծված են կարևորագույն միջազգային պրոբլեմները, սահմանված են աշխարհում քաղաքական կլիմայի արմատական բարեփոխման համար մղվող հետագա պայքարի հրատապ խնդիրները։

Սովետական Հայաստանի աշխատավորները, ինչպես ողջ սովետական ժողովուրդը, խորապես հավանություն են տալիս և ջերմորեն պաշտպանում կոմունիստական կուսակցության և սովետական պետության ներքին և արտաքին



իմաստուն քաղաքականությունը, որը հավատարիմ է լենինյան հեղափոխական սկզբունքներին, համապատասխանում է սովետական ժողովրդի արմատական շահերին, ընդհանուր խաղաղության և անվտանգության ամրապնդմանը։ (Ծափահարություններ)։

Մեծ է սովետների երկրի հզորությունը, ինչպես երբեք ամուր է նրա միջազգային դրությունը։ Եվ դա սովետական մարդկանց սրտերը համակում է օրինական հպարտությամբ իրենց սոցիալիստական հայրենիքի համար, որը մարդկության պայծառ իդեալների իրականացման համար ծավալված պայքարում ընթանում է համաշխարհային պրոգրեսի ավանգարդում։ (Ծափահարություններ)։

Թանկագին ընկերնե՛ր։

Հայ ժողովուրդը փառապանծ հոբելյանը նշում է հոգևոր ուժերի լիակատար ծաղկման վիճակում։ Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի տոնակատարությունը հանրապետության աշխատավորներին համակել է քաղաքական և աշխատանքային բուռն խանդավառությամբ, ստեղծագործական թարմ ուժերի հորձանքով՝ սոցիալ-տնտեսական առաջընթացի նոր բարձունքների համար մղվող պայքարում։ Դրա արտահայտությունն են աշխատանքային այն հոյակապ հաղթանակները, որոնցով Հայաստանի աշխատավորները դիմավորեցին ինտերնացիոնալ բարեկամության և եղբայրության մեր այսօրվա տոնը։

Հանրապետության աշխատավորներին խոր ոգևորությամբ համակեց այն նոր բարձր գնահատականը, որ կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը տվել են նրանց անձնվեր աշխատանքին, կոմունիստական շինարարության մեջ նրանց ավանդին։ Այսուհետև Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության դրոշի վրա կշողան հայրենիքի հինգ բարձր պարգևները՝ Լենինի երեք շքանշանները (բուռն ծափահարություններ), Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանը և Ժողովուրդների բարեկամության շքանշանը։ Այդ շքանշանները ցայտուն խորհրդանշում են Սովետական Հայաստանի լիակատար վերածնունդը, նրա երջանկության ու բարգավաճման, բոլոր հաղթանակների հորդ ակունքները, նրա ավանդը կոմունիստական շինարարության համաժողովրդական գործում։

Լենինի անունով, նրա անմահ գաղափարների լույսով են լուսավորված մեր հայրենիքի ողջ պատմությունը, նրա բոլոր վիթխարի նվաճումները։ Լենինի անունով և նրա առաջնորդությամբ հեղափոխական բանվոր դասակարգը գրոհեց հին աշխարհի ամրոցների վրա, Լենինի անունով և նրա ղեկավարությամբ աշխատավոր ժողովուրդը հաստատեց նոր հասարակարգ, ապրեց և ստեղծագործեց, մարտերում պաշտպանեց սոցիալիզմը, նվաճեց առաջընթացի նորանոր բարձունքներ։ Մեր ժողովրդի համար չկա ավելի մեծ ու ավելի թանկ անուն, քան Սովետական Միության կոմունիստական կուսակցության հիմնադիր, աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիր, Ռուսաստանի և համաշխարհային պրոլետարիատի առաջնորդ, հանճարեղ մտածող ու հեղափոխական Լենինի անունը։ (Երկարատև ծափահարություններ)։ Լենինը հայ ժողովրդին, ինչպես և մյուս ժողովուրդներին, ցույց տվեց իսկական սոցիալական ազատագրության և ազգային վերածննդի ուղին։ Լենինը առաջինը ողջունեց սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում, ոգեշնչեց, պաշտպանեց, ուղղություն տվեց հանրապետության աշխատավորներին Սովետական Հայաստանի ամրապնդման ու ծաղկման համար նրանց պայքարում։ (Ծափահարություններ)։

Սովետական Հայաստանի ամբողջ ուղին լուսավորված է Հոկտեմբերյան արևով, սոցիալիստական մեծ հեղափոխության արևով, աշխարհի հեղափոխական նորացման արևով, որի ազատության անմար լույսը մարմնավորված է հանրապետության դրոշը զարդարող Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանի մեջ։ Հոկտեմբերը, ինչպես մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների կյանքում, նոր դարագլուխ բացեց, դարձավ և հայ ժողովրդի պատմության մեծագույն բեկումնային ուղենիշը, մեր հինավուրց հողին բերեց երջանկություն, ուրա-

*խությունՙ ազատագրված աշխատանքի երջանկությունը, ստեղծարար գործունեության բերկրանքը: Հոկտեմբերի գործը, հեղափոխության գաղափարները մարմնավորված են մեր բոլոր մեծագործություններում, դրանք ապրում, ոգեշնչում են, մեր ժողովրդին տանում դեպի նոր հաղթանակներ:* (Երկարատև ծափահարություններ):

*Հանրապետության դրոշի վրա շողացող ժողովուրդների բարեկամության շքանշանը մարմնավորում է լենինյան եղբայրության այն մեծ կենարար ուժը, որը, ինչպես սովետների երկրի բոլոր ժողովուրդների համար, եղել է և Սովետական Հայաստանի վիթխարի հաջողությունների վճռական ու հզոր գործոնը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ասպարեզում, այն անսպառ ուժը, որը ներշնչում է վստահություն, մեծագույն զորավիգ դառնում մեր հաղթական առաջընթացին, օգնում է համատեղ աշխատանքով բազմապատկելու մեր սոցիալիստական հայրենիքի հզորությունը, կերտելու, ստեղծագործելու, կոփելու մեր մեծ հայրենիքի մեծ երջանկությունը:*

*Սովետական մարդկանց եղբայրության իդեալների հաղթանակի վառ արտահայտությունն է նաև մեր այսօրվա տոնը: Հոբելյանի այս օրերին մենք վերստին զգացինք եղբայրության վեհ զգացման, միասնական ընտանիքի զգացմանՙ մեզ բոլորիս միավորող ու ոգեշնչող բարերար ուժը: Մեր տոնը վերածվեց սովետական ժողովուրդների կուռ միասնության, հարազատ կուսակցության շուրջը, նրա մարտական շտաբիՙ Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը նրանց սերտ համախմբման վառ ցույցի:* (Երկարատև ծափահարություններ):

*Սովետական Հայաստանի աշխատավորները, արտահայտելով իրենց անսահման նվիրվածությունը Լենինի անմահ գաղափարներին, Հոկտեմբերի գործին, ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների լենինյան բարեկամության պայծառ իդեալներին, այս հանդիսավոր օրը Սովետական Միության հարազատ կոմունիստական կուսակցությանը հավաստիացնում են, որ իրենք այսուհետ ևս կամրապնդեն ժողովուրդների միասնությունն ու եղբայրությունը, ուժ ու եռանդ չխնայելով կպայքարեն կոմունիստական շինարարության հոյակապ պլանների կենսագործման համար, արժանի ավանդ կմուծեն մեր սիրելի սոցիալիստական հայրենիքի հետագա բարգավաճման և ամրապնդման գործում:* (Ծափահարություններ):

*Լենինի դրոշով, Հոկտեմբերի ճանապարհով, մեր մեծ լենինյան կուսակցության իմաստուն ղեկավարությամբ հայ ժողովուրդը, սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում, ընթանում է դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները:* (Ծափահարություններ):

*Թո՛ղ դարեդար ապրի ռուս մեծ ժողովրդի և հայ ժողովրդի անխախտ բարեկամությունը:* (Ծափահարություններ):

*Կեցցե՛ մեր մեծ հայրենիքըՙ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը:* (Ծափահարություններ):

*Կեցցե՛ ՍՄԿԿ լենինյան իմաստուն ազգային քաղաքականությունը:* (Ծափահարություններ):

*Կեցցե՛ սովետների երկրի բոլոր ժողովուրդների լենինյան ամենահաղթ բարեկամությունը:* (Ծափահարություններ):

*Փա՛ռք Լենինի մեծ կուսակցությանըՙ մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողին ու կազմակերպչին:* (Բուռն, երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում):

---

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ
## ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ
## ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ
## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ ԸՆԿԵՐ ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ

Մենք, նշանակալի իրադարձության հոբելյանինՙ Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակին նվիրված հանդիսավոր նիստի մասնակիցներս, սրտագին, բոցավառ ողջույն ենք հղում հարազատ կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին:

Հայ ժողովուրդը, հանրապետության բոլոր աշխատավորները անսահման ուրախությամբ ու ոգևորությամբ ընդունեցին հանրապետության պարգևատրումը Լենինի շքանշանով և ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության ու սովետական կառավարության ողջույնըՙ նշանակալի հոբելյանի առիթով: Սովետական Հայաստանի աշխատավորների ստեղծարար աշխատանքի, նրանց հիանալի հաջողությունների ու նվաճումների բարձր գնահատականը մեզ ոգեշնչում է նոր մեծագործությունների ու հաղթանակների հարազատ կոմունիստական կուսակցության XXV համագումարի վիթխարի կանխագծումների իրականացման գործում:

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը շրջադարձային ուղենիշ եղավ հայ ժողովրդի կյանքում, վիթխարի դեր խաղաց նրա տնտեսական, կուլտուրական և քաղաքական զարգացման ասպարեզում: Հայ ժողովուրդը, իր բախտը կապելով Ռուսաստանի հետ, ներգրավվեց պատմական այն պրոցեսի մեջ, որը նրան հասցրեց սոցիալական և ազգային ազատագրության:

Հայ ժողովրդի խորին հարգանքի, երախտագիտության ու սիրո զգացմունքներն ուղղված են փորձված և հավատարիմ բարեկամինՙ ռուս մեծ ժողովրդին: Ռուս ժողովրդի հեղափոխական եռանդն ու տաղանդը, նրա անձնվիրությունը, աշխատասիրությունը, հոգու շռայլությունը, ինտերնացիոնալիզմն արժանացել են մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդների խոր սիրուն ու հարգանքին:

Մեծ Հոկտեմբերի դրոշով, եղբայր ժողովուրդների օգնությամբ Հայաստանի աշխատավորները թոթափեցին իրավազրկության և աղքատության դարավոր կապանքները, դարձան իրենց բախտի տերը, հիանալի հաջողությունների հասան սոցիալիստական և կոմունիստական շինարարության ասպարեզում:

Պատմության ծանր փորձությունների միջով անցած, նոր կյանքի համար անդուլ մաքառած, իր հոգևոր ու նյութական ուժերով վերածնված, դեպի ժամանակակից պրոգրեսի բարձունքները ընթացող հայ ժողովուրդը պարզ գիտակցում է, որ իր բոլոր հաջողություններով ու նվաճումներով պարտական է լենինյան մեծ գաղափարների հաղթանակին, կոմունիստական կուսակցության իմաստուն ազգային քաղաքականությանը, ռուս ժողովրդի, մեր սիրելի սոցիալիստական հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ ունեցած բարեկամությանն ու եղբայրությանը:

Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման մեկուկեսդարյա հոբելյանը հանրապետության աշխատավորները նշում են որպես ինտերնացիոնալիզմի և բարեկամության, ռուս և հայ ժողովուրդների անխախտ միասնության հաղթանակի, սովետների մեծ երկրի բոլոր ժողովուրդների եղբայրության համաժողովրդական տոն:

Սոցիալիստական և կոմունիստական շինարարության տարիներին հանրապետության հասարակական կյանքի բոլոր ոլորտներում տեղի ունեցան խորագույն փոփոխություններ: Լենինյան գաղափարների կենդանի մարմնացումը կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքականության, մեր բազմազգ հայրենիքի բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամության ու համագործակցության հաղթանակն է, կառուցումը զարգացած սոցիալիստական հասարակության, որի կյանքի օրենքը դարձավ ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը:

Դինամիկ է զարգանում Սովետական Հայաստանի էկոնոմիկան՝ երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի բաղկացուցիչ մասը: Պայքարելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար, հանրապետության արդյունաբերության, գյուղատնտեսության, էկոնոմիկայի մյուս ճյուղերի աշխատողները հիանալի հաջողությունների են հասել: Դրա հաստատումն է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, որին Սովետական Հայաստանն արժանացել է երկու անգամ՝ տասներորդ հնգամյակի առաջին երկու տարիների արդյունքներով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ հաղթելու համար: Հայաստանի աշխատավորներն այսուհետ ևս անձնվիրաբար կաշխատեն, պատվով կկատարեն այս տարվա պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները, բոլոր ուժերը կգործադրեն տասներորդ հնգամյակի առաջադրանքների անվերապահ կենսագործման համար:

Հանրապետության աշխատավորները մշտապես զգում են ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, սովետական կառավարության, անձամբ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ուշադրությունն ու հայրական հոգատարությունը Սովետական Հայաստանի հետագա զարգացման ու բարգավաճման նկատմամբ: Դրա փայլուն արտահայտությունը եղան ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ մեր հանրապետության համար պատմական մի շարք որոշումները, որոնք միտում են ապահովելու Սովետական Հայաստանի տնտեսական ու սոցիալական զարգացման արագ տեմպերը, պահպանելու ու զարգացնելու նրա բնական հարստությունները:

Հայ ժողովուրդը, հանրապետության բոլոր աշխատավորները միահամուռ հավանություն են տալիս ու ջերմորեն պաշտպանում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, նրա մարտական շտաբի՝ մեր ժամանակի քաղաքական ու պետական ականավոր գործիչ ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի Քաղբյուրոյի լենինյան ներքին և արտաքին քաղաքականությունը: Ձեզ, թանկագին Լեոնիդ Իլյիչ, խորին շնորհակալության և սրտագին երախտագիտության խոսք ենք ուղղում նրանք սովետական ժողովրդի բարօրության նկատմամբ ցուցաբերած անդուլ հոգատարության և այն անձնվեր աշխատանքի համար, որ Դուք կատարում եք սոցիալիզմի և պրոգրեսի ուժերի ամրապնդման, խաղաղության պահպանման ու կայունացման համար:



Արտահայտելով հայ ժողովրդի, հանրապետության բոլոր աշխատավորների կամքը՝ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակին նվիրված հանդիսավոր նիստի մասնակիցները հարազատ կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը, սովետական կառավարությանը հավաստում են իրենց անսահման հավատարմությունը կոմունիզմի իդեալներին, իրենց նվիրվածությունը կուսակցության մեծ գործին, իրենց պատրաստակամությունը՝ աչքի լույսի պես պահպանելու և մշտապես ամրապնդելու ժողովուրդների լենինյան բարեկամությունը, հաջողությամբ կենսագործելու ՍՄԿԿ XXV համագումարի պատմական կանխագծումները: Սովետական Հայաստանի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ժողովրդական մտավորականությունն իրենց բոլոր ուժերը, գիտելիքներն ու եռանդը կնվիրաբերեն մեր սիրելի սոցիալիստական հայրենիքի հարստության և հզորության բազմապատկմանը:

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

*ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՌԱՋԻՆ ԵՐԿԻՐԸ թևակոխեց իր գոյության 61-րդ տարին։ Ու թեև ժամանակը մեզ ավելի ու ավելի է հեռացնում 1917 թվականի հոկտեմբերից, մարդկության պատմության նոր դարաշրջանի սկիզբն ազդարարող «Ավրորայի» համազարկերի արձագանքները մինչև օրս հնչում և տարածվում են երկրագնդի բոլոր անկյուններում, աշխատավոր մարդկանց ոտքի հանում՝ պայքարելու իրենց սոցիալական ու ազգային ազատագրության, շահագործումից զերծ նոր կյանքի կառուցման համար։ 1917 թվականի աշունը դարձավ ազատատենչ մարդկության լուսաշող գարունը, աշխարհի հեղափոխական վերակառուցման, կապիտալիզմից սոցիալիզմին անցման դարաշրջանի սկիզբը։*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը տապալեց շահագործողների իշխանությունը և հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա, լուծեց սոցիալական ու ազգային արմատական պրոբլեմները, բուրժուակալվածատիրական սեփականությունը վերածեց համրային, սոցիալիստական սեփականության, հիմնովին լուծեց հողի հարցը հօգուտ գյուղացիների, նախկինում ճնշված ժողովուրդներին ազատագրեց գաղութային ու ազգային ստրկության լծից, ամրապնդեց նրանց դաշինքն ու եղբայրական սերտ համագործակցությունը բազմազգ սոցիալիստական պետության շրջանակներում, քաղաքական, տնտեսական և հոգևոր նախադրյալներ ստեղծեց սոցիալիզմի հաղթանակի և կոմունիստական հասարակարգի հաջող կառուցման համար։*

*Նշելով աշխարհում առաջին բանվորագյուղացիական պետության փառապանծ տարելիցը, այսօր կոմունիզմ կառուցող սովետական ժողովուրդը, աշխարհի առաջադեմ մարդկությունը կրկին ու կրկին իրենց հարգանքի ու երախտագիտության տուրքն են մատուցում մեծ Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությանը, Հոկտեմբերի անմահ մարտիկներին, որոնք սոցիալիստական հաղթական հեղափոխության շնորհիվ իրականացրին աշխատավոր մարդու դարավոր իղձերն ու երազանքները։*

*Մեծ Հոկտեմբերն իր դրոշին գրեց՝* Խաղաղություն ժողովուրդներին *նշանաբանը, որը փարոսի նման լույս ու հույս է ներշնչում հողագնդի աշխատավոր զանգվածներին, հետևողականորեն արմատավորվում միջպետական փոխհարաբերություններում։ Տարբեր սոցիալական սիստեմների պետությունների միջև խաղաղ գոյակցության լենինյան գաղափարի հաստատումը Սովետական Միության արտաքին քաղաքական կուրսի կենսականության վկայությունն է։ ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունն ակտիվ գործունեություն են ծավալել խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի՝ կուսակցության XXV համագումարի առաջադրած ծրագրի կենսագործման ասպարեզում։*

*Սովետական պետության արտաքին քաղաքական կուրսը լայն ճանաչում է գտել։ Համաշխարհային պրոգրեսիվ հասարակայնությունը գոհունակությամբ ընդունեց Բաքվում, Ադրբեջանի մայրաքաղաքին Լենինի շքանշանի հանձնմանը նվիրված հանդիսավոր նիստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառը։ Այդ ծրագրային ելույթում տրված է կարևորագույն միջազգային պրոբլեմների խոր վերլուծությունը, սահմանված են աշխարհում քաղաքական մթնոլորտի արմատական առողջացման հետագա պայքարի հրատապ խնդիրները։*

*Հաստատակամ պայքարը հանուն խաղաղության բխում է հենց մեր սոցիալիստական հասարակության բնույթից, որի բարձրագույն նպատակն է հոգատարությունը մարդու կյանքի և բարօրության նկատմամբ։ «Ամեն ինչ անել*



*սպառազինությունների մրցավազքի դադարեցման, խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար՝ ահա թե որն ենք համարում մեր արտաքին քաղաքականության արմատական խնդիրը,— ասաց ընկեր Բրեժնևը Բաքվում։— Եվ մենք գտնում ենք, որ հուսալի անվտանգության իրավունք ունեն բոլոր՝ թե՛ մեծ և թե՛ փոքր պետությունները, միջուկային զենք ունեցող և չունեցող պետությունները։*

*Եվ թող ոչ ոք չկասկածի, որ Սովետական Միությունը և սոցիալիստական համագործակցության մյուս երկրներն այսուհետև էլ իրենց արժանավոր ավանդը կներդնեն համայն մարդկության համար կարևոր այդ խնդիրների լուծման գործում»։*

*Մեր բազմազգ երկրի աշխատավորները սեփական փորձով համոզվեցին, որ միայն սոցիալիզմի կառուցման շնորհիվ նրանք կարողացան պատմական կարճ ժամանակամիջոցում շենացնել ու հզորացնել իրենց սոցիալիստական հայրենիքը։*

*Հիրավի, սոցիալիզմի օրոք մեր երկիրը դարձավ ինդուստրիալ հզոր տերու-<br>
թյուն։ Բավական է նշել, որ եթե մինչև հեղափոխությունը Ռուսաստանը տալիս<br>
էր համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտ 4 տոկոսը, ապա<br>
այժմ ՍՍՀՄ-ը տալիս է դրա մեկ հինգերորդ մասը։ Ներկայումս երկուս ու կես<br>
օրում Սովետական Միության արդյունաբերությունը թողարկում է նույնքան<br>
արտադրանք, որքան արտադրվում էր ամբողջ 1913 թվականին։ 1977 թվակա-<br>
նին, 1917 թվականի համեմատությամբ, երկրի ազգային եկամուտն աճել է<br>
103 անգամ։ Այսօր մեր երկիրն ավելի շատ պողպատ, չուգուն, նավթ,<br>
ածուխ, ցեմենտ, տրակտորներ, ջերմաքարշեր ու էլեկտրաքարշեր, բամբակ,<br>
վուշ և բազմատեսակ այլ արտադրանք է տալիս, քան աշխարհի որևէ այլ պե-<br>
տություն։ Այժմ ՍՍՀՄ-ը ավելի շատ արդյունաբերական արտադրանք է տալիս,<br>
քան 1950 թվականին թողարկվում էր ամբողջ աշխարհում։ Գյուղատնտեսու-<br>
թյան արտադրանքի ընդհանուր ծավալը սովետական իշխանության տարինե-<br>
ներին աճել է 4,4 անգամ։*

*Մեր երկրում վերացված են կապիտալիզմին ներհատուկ այնպիսի չարիք-<br>
ներ, ինչպիսիք են սովն ու գործազրկությունը։ Արդյունաբերության և շինա-<br>
րարության բանվորների ռեալ եկամուտները 1913 թվականի համեմատությամբ<br>
ավելացել են 10, իսկ գյուղացիներինը՝ 14 անգամ։ Սովետական իշխանության<br>
տարիներին երկրում իրականացվել է բնակարանային և կուլտուր-կենցաղա-<br>
յին շինարարության վիթխարի ծրագիր։ Միայն 1977 թվականին ՍՍՀՄ-ում<br>
կառուցվել են ավելի քան 110 միլիոն քառ. մետր ընդհանուր մակերեսով բնա-<br>
կելի տներ։*

*Հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ աշխատավոր լայն զանգված-<br>
ների սեփականությունը դարձան գիտության, կուլտուրայի ու մշակույթի<br>
հարստությունները։ Հեղափոխությունից առաջ Ռուսաստանի բնակչության<br>
մոտավորապես երեք քառորդն անգրագետ էր։ Այդ ասպարեզում անհամեմատ<br>
ավելի վատ էր երկրի ծայրամասերում ապրող ազգերի ու ազգությունների վի-<br>
ճակը։ Ներկայումս էկոնոմիկայի բոլոր ոլորտներում աշխատողների ավելի քան<br>
երեք քառորդն ունի բարձրագույն կամ միջնակարգ կրթություն։ Մեր երկրում<br>
հիմնականում ավարտված է անցումն ընդհանուր միջնակարգ կրթության։<br>
1976—77 ուսումնական տարում ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված էր 93,7<br>
միլիոն մարդ։ ՍՍՀՄ-ում աշխատում են 1,3 միլիոն գիտաշխատողներ՝ 108 ան-<br>
գամ ավելի, քան 1913 թվականին։*

*Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո կոմունիստական կուսակցու-<br>
թյան ղեկավարությամբ սովետական ժողովրդի ջանքերով իրականացած սո-<br>
ցիալ-տնտեսական հսկայական վերափոխումների գլխավոր արդյունքը Սովե-<br>
տական Միությունում զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումն<br>
է։ Նյութական ու կուլտուրական առաջընթացի շնորհիվ, ասել է ընկեր Լ. Ի.<br>
Բրեժնևը, «մեզ մոտ զգալիորեն մերձեցան աշխատանքի և կյանքի պայմաննե-<br>
րը քաղաքում և գյուղում, ֆիզիկական և մտավոր աշխատանքի ոլորտներում։<br>
Արդեն սոցիալիզմի օրոք աճեցին ու դաստիարակվեցին սովետական մարդ-*

կանց նոր սերունդներ, ձևավորվեց նրանց սոցիալիստական գիտակցությունը։ Այս պրոցեսների շնորհիվ մենք իրավունք ստացանք ասելու, որ այժմ ՍՍՀՄ-ում կառուցվել է զարգացած սոցիալիզմ՝ նոր հասարակության հասունության այնպիսի փուլ, երբ ավարտվում է ամբողջությամբ վերցրած հասարակական հարաբերությունների վերակառուցումը՝ սոցիալիզմին ներհատուկ կոլեկտիվիստական հիմունքներով»։

Զարգացած սոցիալիստական հասարակարգը կոմունիստական ֆորմացիայի օրինաչափ փուլն է, որի բնորոշ առանձնահատկություններն են՝ երկրի օրեցօր աճող տնտեսական հզորությունը, գիտատեխնիկական հեղափոխության սրընթաց զարգացումը, ժողովրդի նյութական բարեկեցության և նրա կուլտուրական ու կրթական մակարդակի անշեղ բարձրացումը, սովետական հասարակության սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնության հետագա ուժեղացումը։

Հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ արմատական փոփոխություններ կատարվեցին սոցիալական հարաբերությունների բնագավառում, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում, էկոնոմիկայի դինամիկ զարգացման հիման վրա նոր հատկանիշներ է ձեռք բերում սովետական հասարակության սոցիալական կերպարը։ Շարունակվում է դասակարգային տարբերությունների վերացումը, է՛լ ավելի է ամրապնդվում հասարակության սոցիալական միատարրությունը, ավելի ամրակուռ է դառնում սովետների երկրի սոցիալական բոլոր խավերի, բոլոր ազգերի ու ազգությունների բարոյաքաղաքական միասնությունը, որոնց մերձեցման հիման վրա գոյավորվել է մարդկանց պատմական նոր հանրությունը՝ սովետական ժողովուրդը։

Մեծ Հոկտեմբերը ուղի հարթեց ազգային հարցի լուծման համար, լիակատար ազատություն ընձեռեց մեր հայրենիքի բոլոր ժողովուրդներին։ Ազգային հարցը սոցիալիստական հասարակարգի կառուցման կարևորագույն հարցերից մեկն է, որի ճիշտ լուծումից մեծապես կախված է սոցիալիզմի հաղթանակը։ Կոմունիստական կուսակցության վարած լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ հնարավոր դարձավ միասնական ինտերնացիոնալ ընտանիքում համախմբել մեր երկրի բոլոր ազգերին ու ազգություններին և նրանց ուժերը նպատակամղել նոր հասարակարգի կառուցմանը։ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ստեղծվեց բազմազգ պետություն՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որն իրավահավասար սուվերեն հանրապետությունների կամավոր միություն է՝ հիմնված պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների, հասարակության սոցիալ-տնտեսական, քաղաքական, գաղափարական ու կուլտուրական կյանքի ընդհանրության վրա։

Մեր կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը լիովին ապահովեց սոցիալիստական ազգերի ու ազգությունների փաստական հավասարությունը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, ինչպես նաև՝ ՍՍՀՄ կազմի մեջ մտնող եղբայրական հանրապետությունների տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական մակարդակների հավասարեցում և աննախադեպ մեծ վերելք։ Այդ քաղաքականության շնորհիվ ծաղկում է յուրաքանչյուր ազգի՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի շնորհիվ մեր երկրում ազգային հարցի սոցիալիստական լուծման պատմական արդյունքները վավերագրված են ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ, որը, ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, ապահովում է մեր բազմազգ Միության ընդհանուր շահերի և այն կազմող հանրապետություններից յուրաքանչյուրի շահերի իրոք դեմոկրատական զուգակցումը, ապահովում է մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների համակողմանի բարգավաճումն ու անշեղ մերձեցումը։

Լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման փայլուն օրինակ է Սովետական Հայաստանը։ Հիսունութ տարի առաջ՝ 1920 թվականի նոյեմբերի 29-ին, հայ ժողովուրդը մեծ Հոկտեմբերի անմահ գաղա-



փարների հաղթարշավի շնորհիվ փրկվեց վերահաս կործանումից և հաստատակամորեն բռնեց նոր կյանքի՝ սոցիալիզմի կառուցման ուղին։ ՍՍՀՄ եղբայրական հանրապետությունների միասնական ընտանիքում Սովետական Հայաստանը պատմական կարճ ժամանակամիջոցում հասավ տնտեսական ու կուլտուրական այնպիսի բարձունքների, որ իրավամբ օրինական հպարտությամբ է համակում մեզնից յուրաքանչյուրին։

Հանրապետության աշխատավորները, ողջ հայ ժողովուրդը անսահման ուրախությամբ ու ցնծությամբ ընդունեցին Սովետական Հայաստանը Լենինի շքանշանով պարգևատրելու մասին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ողջույնը։ Հայրենիքի բարձրագույն պարգևին մեր հանրապետությունն արժանացել է տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում հայ ժողովրդի ձեռք բերած հաջողությունների համար և ի նշանավորումն Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի։

Ողջույնում շեշտված է պատմական իրադարձության առաջադիմական նշանակությունը, բնութագրված է այն հերոսական ուղին, որ հայ ժողովուրդը ռուս մեծ ժողովրդի, մեր երկրի բոլոր ժողովուրդների հետ միասին անցել է սոցիալիստական իդեալների հաղթանակի համար մղվող պայքարում։

Մեր պետության բարձրագույն պարգևը, ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ողջույնը հայ ժողովրդի նկատմամբ կոմունիստական կուսակցության և սովետական պետության ջերմ հոգատարության ևս մի վառ դրսևորում է, մեր կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության հետևողական իրականացման համոզիչ վկայություն։

Կոմունիստական շինարարության արդի փուլում, երբ անչափ բարդացել է հասարակական պրոցեսների կառավարման մեխանիզմը, բարձրացել սովետական մարդկանց կուլտուրան, նրանց քաղաքական գիտակցությունը, մեծապես աճել է մասսաների դերը երկրի տնտեսական, քաղաքական և հոգևոր կյանքում։ Այս պայմաններում կուսակցությունն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալմանն ու կատարելագործմանը, ժողովրդական դեպուտատների սովետների դերի բարձրացմանը, աշխատավորական զանգվածներին հասարակության ու պետության գործերի կառավարման մեջ է՛լ ավելի լայնորեն ներգրավելուն։

Սոցիալիստական դեմոկրատիան մեր հասարակության առաջընթացի համեմատ շարունակ զարգանում է։ Արդի ժամանակաշրջանում սոցիալիստական հասարակության քաղաքական սիստեմի զարգացման գլխավոր ուղղությունը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա կատարելագործումն ու ծավալումն են։ Սոցիալիստական հասարակարգի զարգացման այդ կարևոր օրինաչափությունը, հասուն սոցիալիզմի դեմոկրատական սկզբունքները վավերագրված են ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ, որի ընդունման տարեդարձը հանդիսավորությամբ նշեց սովետական ժողովուրդը։

Կուսակցության վարած լենինյան հետևողական քաղաքականության, նրա գաղափարաքաղաքական ու դաստիարակչական մեծ աշխատանքի շնորհիվ սովետական իշխանության տարիներին սոցիալիստական ու կոմունիստական շինարարության բովում ձևավորվեց ու կոփվեց սովետական նոր մարդը։ Սովետական նոր մարդը՝ իր բարոյական վեհ հատկանիշներով, մեծ Հոկտեմբերի, սոցիալիստական կարգերի ծնունդն է։

Կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում աշխատավորական զանգվածների շրջանում մարքս-լենինյան աշխարհայացքի, նրանց գաղափարական համոզվածության արմատավորմանը։ Ղեկավարվելով ՍՄԿԿ համագումարների, կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշումներով, կուսակցական կազմակերպությունները հետևողականորեն կատարելագործում են գաղափարադաստիարակչական աշխատանքի ձևերն ու մեթոդները, հոգ են տանում աշխատավորների տարբեր խմբերի գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության սերտ միասնության մասին։

Շեշտելով կոմունիստական շինարարության ասպարեզում սովետական ժողովրդի ձեռք բերած վիթխարի նվաճումները, կուսակցությունը մեր ուշադրությունն ու ջանքերը կենտրոնացնում է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման վրա։

Կոմունիստական շինարարության արդի շրջանի կարևորագույն խնդիրներից մեկը հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումն է։ Կուսակցությունն էկոնոմիկայի բոլոր ճյուղերի աշխատողներից պահանջում է՝ առավել լրիվ օգտագործել եղած արտադրական հզորությունները, խնայողաբար ծախսել հումքը, նյութերը, էլեկտրաէներգիան, արագորեն արմատավորել գիտության նվաճումները, առաջավոր տեխնոլոգիան, կատարելագործել ժողովրդական տնտեսության պլանավորումն ու կառավարումը, յուրաքանչյուր աշխատատեղում, կառավարչական օղակում բարձրացնել կազմակերպվածությունն ու կարգապահությունը։

Իրականացնելով ագրարային հարցի լենինյան ուսմունքը, ՍՄԿԿ-ն հետևողականորեն զարգացնում է այն՝ հաշվի առնելով պատմական կոնկրետ պայմանները և մեր երկրի առաջընթացի հրատապ խնդիրները։

Սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման, գյուղատնտեսության զարգացման համար կարևոր ուղենիշ է ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումը, որը նշանավորում է նոր փուլ կուսակցության արդի ագրարային քաղաքականության իրականացման ասպարեզում, քաղաքականություն, որի սկիզբը դրեց ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումը։ Հուլիսյան պլենումի որոշումներում, ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ տրված է արդի ժամանակաշրջանում կուսակցության ագրարային քաղաքականության կենսագործման համակողմանի գիտական վերլուծությունը, վեր են հանված գյուղատնտեսության բնագավառի թերություններն ու զարգացման կոնկրետ ուղիները։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության նոր վերելքի համար մղվող պայքարում առաջնահերթ դեր է հատկացվում գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ըստ ամենայնի ամրապնդմանը և հետագա զարգացմանը։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում, արդի փուլում կուսակցության ագրարային քաղաքականության հիմնական ուղղությունը գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումն է՝ մեքենայացման, քիմիացման և հողերի մելիորացման հիման վրա։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները կուսակցական կազմակերպությունների, մեր երկրի աշխատավորների գործունեության մարտական ծրագիրն են, որոնց կենսագործումը նոր աստիճանի կբարձրացնի գյուղատնտեսական արտադրությունը, սովետական ժողովրդի բարեկեցությունը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումը, լիովին հավանություն տալով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումներին, ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման դրույթներին ու հետևություններին, հավաստիացրեց, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունները, կոմունիստները, աշխատավորները բոլոր ջանքերը կգործադրեն կուսակցության մարտական ծրագիրն իրականացնելու համար։

Անշուշտ, հանրապետության գյուղատնտեսության աշխատողները լուրջ գործ են կատարել հնգամյակի անցած տարիներին, բայց այդ բնագավառում դեռևս կան չլուծված շատ խնդիրներ ու թերություններ, որոնց մասին հանգամանորեն խոսվեց ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում։ Գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքն ապահովելու համար առաջիկայում լուրջ անելիքներ ունեն հանրապետության աշխատավորները։ Բավական է ասել, որ միայն տասներորդ հնգամյակում գյուղատնտեսական արտադրության ծավալը պետք է աճի 24,9 տոկոսով, որը միութենական հանրապետությունների բարձր ցուցանիշներից մեկն է։ Կուսակցության արդի ագրարային քաղաքականությունը կենսագործելու, զարգացած սոցիալիստական հասարակության հարաճուն պահանջմունքները բավարարելու համար անհրաժեշտ է է՛լ ավելի հետևողա-



կանորեն մոբիլիզացնել կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունների, բոլոր աշխատավորների ուժերը։

Սովետական ժողովրդի մարտական ու աշխատանքային պատմական աննախադեպ հաղթանակները, նոր հասարակարգի կառուցման ասպարեզում ձեռք բերած վիթխարի նվաճումներն անխզելիորեն կապված են կոմունիստական կուսակցության հետ։ Լենինյան կուսակցության ողջ գործունեությունը նպատակամղված է աշխատավոր մարդու բարօրությանը։ Հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին, հասարակական կյանքի երևույթների տեսականորեն իմաստավորումը կուսակցությանը հնարավորություն են ընձեռում գիտականորեն կանխատեսելու հասարակական պրոցեսների ընթացքը, հաջողությամբ լուծելու այն բոլոր կենսական պրոբլեմները, որ առաջադրում է կյանքը։

Կենսագործել ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները՝ նշանակում է առավել ուժեղացնել կուսակցական-քաղաքական, կազմակերպչական և գաղափարական գործունեությունը մասսաների շրջանում, որակական բարձր ցուցանիշներով կատարել հնգամյակի առաջադրանքները և մրցությամբ ընդունած պարտավորությունները։ Կասկածից վեր է, որ կուսակցական հաշվետու-ընտրական ժողովները, կոնֆերանսները, ամփոփելով կատարված մեծ աշխատանքը, քննադատության և ինքնաքննադատության առողջ մթնոլորտում կհայտաբերեն նորանոր ռեզերվներ, կնպաստեն ավելի արագորեն առաջ մղելու արտադրապրոցեսների ինտենսիվացումն ու արդյունավետության բարձրացումը։

Հաշվետու-ընտրական ժողովներում սկզբունքային խոսակցություն է ծավալվել կոմունիստների անձնական օրինակի, նրանց բարոյաքաղաքական բարձր հատկանիշների մասին։ Այդ մեկ անգամ ևս վկայում է, որ գաղափարական հարցերը սերտորեն առնչվում են ժողովրդատնտեսական խնդիրների հետ։ Պատահական չէ, որ կոմպլեքս դաստիարակության հարցերը արժանանում են ժողովների մասնակիցների սթափ ուշադրությանը։

Հայաստանի աշխատավորներն այսուհետև ևս անձնվիրաբար կաշխատեն, պատվով կկատարեն այս տարվա պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները, բոլոր ուժերը կգործադրեն տասներորդ հնգամյակի առաջադրանքների անթերի կենսագործման համար։

Հանրագումարի բերելով կատարվածը, հաշվի առնելով այս տարվա բնակլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքները, անհրաժեշտ է, որպեսզի կուսակցական, սովետական, տնտեսական կազմակերպություններն է՛լ ավելի բարձրացնեն աշխատանքային կարգապահությունը, յուրաքանչյուր աշխատողի անձնական պատասխանատվությունը։ Չպետք է մոռանալ, որ կոմունիստի ու սովետական քաղաքացու անձնական օրինակը էական նշանակություն ունի մեր կյանքում։ Չմոռանանք և այն, որ հանրապետության զարգացման տեմպերը գերլարված են և պահանջում են աշխատանքային նորանոր սխրանքներ ու ներդաշնակ համագործակցություն ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների ու տեղամասերի միջև։

Սոցիալիզմի դիրքերի ամրապնդումն ու զարգացումը գնալով ավելի ուժգին է ազդում կապիտալի աշխարհի դասակարգային ուժերի հարաբերակցության վրա։ Սոցիալիստական պետությունների սոցիալ-տնտեսական նվաճումները, նրանց հզորության աճը նոր թափ են հաղորդում կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի պայքարին։ Օրեցօր ավելի հզոր է դառնում բանվորական շարժումը, որի ավանգարդում ընթանում են կոմունիստական ու բանվորական կուսակցությունները։

Վաթսունմեկ տարի շարունակ, սկսած Վ. Ի. Լենինի մշակած խաղաղության դեկրետից մինչև ՍՄԿԿ առաջադրած խաղաղության ծրագիրը, սովետական պետությունը հետևողականորեն ու հաստատակամորեն պայքարում է խաղաղության ու ժողովուրդների անվտանգության, մարդկության սոցիալական պրոգրեսի համար։

Սովետական ժողովուրդը միահամուռ հավանություն է տալիս ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականությանը, որն ստեղծում է անհրաժեշտ բոլոր պայմանները կոմունիստական շինարարության հաջող իրականացման համար։

---

# ԱԿԱՆԱՎՈՐ ՄԱՐՔՍԻՍՏ-ԼԵՆԻՆՅԱՆԸ

## (Ս. Գ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Հ. Ռ. ՍԻՄՈՆՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտի— ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի ճյուղի ֆիլիալի դիրեկտոր, պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր



Մեր բազմազգ երկրի աշխատավորները երախտագիտության խոր զգացումով նշում են կոմունիստական կուսակցության ու սովետական պետության ականավոր գործիչ, հավատարիմ լենինյան Ստեփան Շահումյանի ծննդյան 100-ամյակը։ Շահումյանի սխրանքներով ու մաքառումներով լի կյանքը ոգեշնչման աղբյուր է կոմունիստական հասարակարգ կառուցող սերունդների համար։

Շահումյանի հեղափոխական կողմնորոշումը դրսևորվել է տակավին դպրոցական հասակում։ Ուսումնատենչ ու իմաստասեր պատանին շատ էր կարդում հայ, ռուս, արևմտաեվրոպական գրողների գործերը, փիլիսոփայական ու տնտեսագիտական աշխատություններ, ուսումնասիրում Վ. Բելինսկու, Ն. Չերնիշևսկու, Մ. Նալբանդյանի երկերը։

Սակայն կյանքի բարդ ու հակասական հարցերի հիմնավոր պատասխանները նա գտավ Մարքսի, Էնգելսի, Լենինի հանճարեղ ստեղծագործություններում։ Սոցիալիստական գաղափարներով տոգորված պատանին մտավ Թիֆլիսի ռեալական ուսումնարանի հեղափոխական աշակերտական խմբակը, որտեղ և սկզբնավորվեց նրա սոցիալական պայքարի ուղին։

1898 թվականին Շահումյանը փայլուն կերպով ավարտեց ռեալական ուսումնարանը և մեկնեց Պետերբուրգ։ Այստեղ նրան չհաջողվեց սովորել և նույն թվականի աշնանը գնաց Ռիգա, ընդունվեց պոլիտեխնիկական ինստիտուտ։ Բայց անիծյալ կարիքը հետապնդում էր նրան, իսկ ծնողներից նյութական օգնություն ակնկալելն ավելորդ էր։ Մի քանի ամիս անց նա ստիպված թողեց ուսումը և վերադարձավ տուն։



Ուսումը շարունակելու բուռն ցանկությունը 1900 թվականի ամռանը Շահումյանին նորից տարավ Ռիգայի պոլիտեխնիկական ինստիտուտ։ Նա այստեղ լիովին կլանվեց հեղափոխական աշխատանքով, ավելի հանգամանորեն սկսեց ուսումնասիրել մարքսիստական գրականությունը։

Բազմաբեղուն էր Ստեփան Շահումյանի գործունեությունը Ռիգայում։ Պոլիտեխնիկական ինստիտուտի հայ ուսանողներից մարքսիստական «Թեորետիկ» խմբակի ստեղծում, ամենագործուն մասնակցություն 1901 թ. դեկտեմբերին Ռիգայում հրավիրված հայ ուսանողների առաջին համագումարին, ապա, իբրև Ռիգայի ուսանողների պատվիրակ, ակտիվ մասնակցություն 1902 թ. սկզբին Պետերբուրգում գումարված հեղափոխական ուսանողության համառուսաստանյան առաջին համագումարին։ Նա մեծ հեղինակություն էր վայելում Ռիգայի ուսանողության շրջանում, լայն ճանաչում ուներ նաև քաղաքի բանվորական միջավայրում։

1902 թվականի գարնանը Շահումյանը Ռիգայից վերադառնում է Թիֆլիս։ Սակայն ուսումը շարունակելու նպատակով նույն թվականի ամռան վերջերին մեկնում է Գերմանիա, ընդունվում Բեռլինի համալսարանի փիլիսոփայության ֆակուլտետը։ 1904 թվականին Շահումյանը վերադառնում է Կովկաս և ամբողջովին նվիրվում կուսակցական գործունեության, ընդմիշտ հարելով լենինյան «Իսկրա»-ի ծրագրային սկզբունքներին։ 1902 թվականի ամռանը Շահումյանը Բոգդան Կնունյանցի հետ միասին գլխավորեց հայկական առաջին սոցիալ-դեմոկրատական կազմակերպության՝ «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» ստեղծման գործը։ Շուտով նրա ջանքերով կազմակերպությունը սկսում է հրատարակել իր տպագիր օրգանը՝ «Պրոլետարիատ» անլեգալ լրագիրը։ Դա հեղափոխական մարքսիստական հայերեն առաջին լրագիրն էր, որը վրացական «Բրձոլա»-ի հետ միասին Անդրկովկասում հետևողական կերպով պրոպագանդում էր լենինյան «Իսկրա»-ի գաղափարները։

«Պրոլետարիատ»-ի առաջին իսկ համարում հրապարակվեց «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» մանիֆեստը, որը ստեղծվել էր Ստեփան Շահումյանի ղեկավար մասնակցությամբ։ «Մանիֆեստը» լիովին բխում էր կուսակցության կառուցման լենինյան սկզբունքներից։

1903 թվականի փետրվարին Վ. Ի. Լենինը ջերմորեն ողջունեց «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» մանիֆեստը, բարձր գնահատեց նրա գաղափարական բովանդակությունը, նշեց «մանավանդ ազգային հարցի ճիշտ դրվածք տալու նրա հիանալի փորձը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 7, էջ 132)։

Նոր տիպի մարքսիստական կուսակցության կառուցման լենինյան հանճարեղ պլանի հետևողական պաշտպանության մշտական դիրքերում էր Ստեփան Շահումյանը նաև արտասահմանում, Բեռլինում սովորելու տարիներին։ Գնահատելով բանվորական շարժման մեջ արևմտաեվրոպական, հատկապես գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների գործունեությունը, Շահումյանը խիստ քննադատում էր այդ կուսակցությունների պրակտիկան։ Այստեղ Շահումյանը մոտիկից ծանոթանում է արևմուտքի սոցիալ-դեմոկրատական մի շարք գործիչների հետ, որոնց մարքսիստական կուսակցության վերաբերյալ հայացքները հակադրվում էին բեռնշտայնականների և զանազան օպորտունիստների հայացքներին։ Նա անձնական սերտ կապեր հաստատեց հատկապես Ա. Բեբելի, Ֆ. Մերինգի, Է. Ֆուքսի և այլ ականավոր գործիչների հետ։

1903 թվականի գարնանը Շահումյանը Ժնևում անձամբ ծանոթանում է Վ. Ի. Լենինի հետ։ Դա նոր տիպի մարքսիստական կուսակցության կառուցման բախտորոշ տարին էր, երբ Իլյիչն ամբողջովին տարված էր ՌՍԴԲԿ II համագումարի նախապատրաստության ու հրավիրման հոգսերով։ Հեղափոխական մտքի խոշորագույն տիտանի՝ Վ. Ի. Լենինի հետ ունեցած այդ անձնական ծա-

նոթությունը և համագործակցությունը բացառիկ մեծ նշանակություն ունեցան Շահումյանի հետագա ողջ կյանքում։

Ստեփան Շահումյանի կուսակցական գործունեության համար կարևոր նշանակություն ունեցավ ՌՍԴԲԿ II համագումարը և Վ. Ի. Լենինի հետևողական պայքարը օպորտունիստների դեմ, որոնք քարոզում էին կուսակցության վերաբերյալ այն նույն դրույթները, որպիսիք վաղուց ղեկավար սկզբունքներ էին դարձել արևմտաեվրոպական սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների համար։ Համագումարում քննարկված բոլոր հարցերում Շահումյանն անվերապահորեն լենինյան դիրքերում էր։ 1903 թվականին գրած «Մեր տակտիկական տարաձայնությունները» նշանավոր ռեֆերատում Շահումյանը շեշտում էր, որ կուսակցությունը ոչ թե պետք է քարշ գա իրադարձությունների պոչից, այլ ընթանա դրանց առջևից, քանի որ այն պայքարի ելած բանվոր դասակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժն է։

1904 թվականին վերադառնալով Թիֆլիս, Ստեփան Շահումյանն ընտրվում է ՌՍԴԲԿ Կովկասյան կոմիտեի և նրա տպագիր օրգան «Պրոլետարիատի կռիվ» լրագրի խմբագրական կոլեգիայի անդամ։ Անդրկովկասի բոլշևիկներն այդ ժամանակ քաջ գիտեին Շահումյանին՝ որպես կայուն լենինյանի, սկզբունքային բոլշևիկի, մեծ էրուդիցիայի տեր մարքսիստի։ Զինված Վ. Ի. Լենինի ցուցումներով, նա վարում էր Անդրկովկասի բոլշևիկների պայքարը, հետևողականորեն պաշտպանում լենինյան կուսակցության գաղափարական և կազմակերպական հիմունքները, բոլշևիզմի տակտիկան և ստրատեգիան։

Ռուսական առաջին հեղափոխության տարիներին Ստեփան Շահումյանը կռվի ելած մասսաների ճանաչված ղեկավարներից էր։ 1904—1906 թվականներին Շահումյանը լինում է Անդրկովկասի արդյունաբերական կենտրոններում, Հայաստանի քաղաքներում ու գյուղերում, հանդես գալիս բանվորների և գյուղացիների հավաքներում, պարզաբանում բոլշևիկյան կուսակցության լենինյան տակտիկան, օգնում սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ամրապնդմանը։ Այդ շրջանում Երևանի բոլշևիկյան կազմակերպության գործունեությունը ղեկավարում էր Շահումյանը։ Նրա անմիջական ղեկավար մասնակցությամբ 1905 թվականին ՌՍԴԲԿ անջատ խմբակները Երևանում միավորվում են մեկ միասնական կազմակերպության՝ ՌՍԴԲԿ Երևանի քաղաքային կազմակերպության մեջ։

1906 թվականին ՌՍԴԲԿ Երևանի, իսկ 1907 թվականին ՌՍԴԲԿ Բորչալուի կազմակերպությունները Շահումյանին ընտրում են կուսակցության IV և V համագումարների պատգամավոր։ Համագումարներում նա անխնա մերկացնում էր մենշևիկներին, բացահայտում նրանց օպորտունիստական տակտիկայի էությունը, հետևողականորեն պաշտպանում հեղափոխական պայքարի լենինյան գիծը։

1907 թվականի հունիսին Շահումյանը ՌՍԴԲԿ V համագումարից վերադառնալով Կովկաս, փոխադրվում է Ռուսաստանի բանվորական շարժումների կարևորագույն օջախներից մեկը՝ Բաքու։ Բաքվի պրոլետարիատի շրջանում Շահումյանը շուտով դառնում է սիրված ու ճանաչված առաջնորդ, քաղաքի բոլշևիկյան կազմակերպության մարտական ղեկավարը։

Ստոլիպինյան ռեակցիայի ծանր տարիներին նա մի պահ անգամ չընկրկեց։ Բանվորական շրջաններում իր բազմաթիվ հանդիպումների ժամանակ, նավթահանքերի բազմազգ աշխատավորների առջև ունեցած ելույթներում, հոդվածներում ու կոչերում նա հաստատ համոզմունք էր հայտնում, որ հեղափոխության նոր վերելքն անխուսափելի է։ 1908 թվականի նոյեմբերի սկզբին Մ. Ցխակայային գրած նամակում Ստ. Շահումյանը նշում էր. «...մենք չենք վհատվում։ Հավատը դեպի ապագան և սերը դեպի մեր գործը անսպառ եռանդ են ներշնչում մեզ... Մենք ամբողջովին Իլյիչի կողմն էինք» (ԵԼԺ, հ. 2, էջ 108—109)։

Ռեակցիայի տարիներին Շահումյանը պայքարում էր հանուն անլեգալ կուսակցական կազմակերպությունների պահպանման ու ամրապնդման։ Միաժամանակ նա անհրաժեշտ էր համարում օգտագործել բոլոր լեգալ հնարա-



վորություններն ու միջոցները՝ մասսաների հետ կապերը պահպանելու և ուժեղացնելու համար։ Իր շուրջը համախմբելով բազմաթիվ լենինյանների, Շահումյանն ապահովում է բոլշևիզմի լիակատար հաղթանակը Բաքվի կազմակերպության մեջ։

1911 թվականի հոկտեմբերին Ս. Գ. Շահումյանը ձերբակալվում է։ Բաքվի Բայիլովի բանտում մի քանի ամիս մնալուց հետո նա Կովկասի սահմաններից արտաքսվում է Աստրախան։ Այստեղ նա շարունակում է ակտիվ հեղափոխական գործունեությունը, կապեր հաստատում տեղական բոլշևիկյան կազմակերպությունների հետ, աշխատակցում բոլշևիկյան հրատարակություններին։

1914 թվականի մարտին Շահումյանը Աստրախանի աքսորավայրից վերադառնում է Բաքու և գլխավորում քաղաքի բոլշևիկյան կազմակերպությունը։ Նույն թվականի ամռանը Շահումյանը ղեկավարում է Բաքվի բանվորների վիթխարի գործադուլը։ Բաքվի հերոսական պրոլետարիատի 1914 թվականի ամռանը ծավալած գործադուլային շարժումները ժամանակավորապես դադարեցին՝ առաջին համաշխարհային պատերազմի բռնկման պատճառով։

1915 թվականի հոկտեմբերին Ստեփան Շահումյանի ղեկավարությամբ Բաքվում գումարվում է Կովկասի բոլշևիկների կոնֆերանս, որը քննարկեց պատերազմի և ընթացիկ մոմենտի, ազգային, կազմակերպական և այլ հարցեր։ Բոլոր հիմնական հարցերի շուրջ ճառերով հանդես եկավ Շահումյանը։ Կոնֆերանսն ընտրեց ղեկավար կուսակցական կենտրոն՝ ՌՍԴԲԿ(բ) Կովկասյան բյուրո՝ Ստեփան Շահումյանի գլխավորությամբ։

Մշտական ջերմ նամակագրական կապ պահպանելով Վ. Ի. Լենինի հետ, Ս. Գ. Շահումյանը հետևողականորեն կենսագործում էր նրա ցուցումները։ 1915 թվականի հոկտեմբերի 1-ին Իլյիչին գրած նամակում Շահումյանը նշում էր. «Ձեր նամակները, խորհուրդները և ցուցումները ինձ համար միշտ ամեն բանից թանկ են եղել... Դուք ուզում եք իմանալ, թե ես ինչ եմ մտածում և ինչ եմ անում։ Կարծեմ այս անգամ էլ Ձեզ հետ միանման եմ մտածում...» (ԵԼԺ, հ. 3, էջ 14)։

1916 թվականի մարտին Շահումյանը նորից է ձերբակալվում։ Բայիլովի բանտից նա շարունակում էր ղեկավարել Բաքվի բոլշևիկյան կազմակերպությունը։ Նույն տարվա դեկտեմբերին նա աքսորվում է Սարատովի նահանգ։

1917 թվական։ Փետրվարին տեղի ունեցած բուրժուադեմոկրատական հեղափոխությունը տապալեց ռոմանովների միապետությունը։ Բանվորներն արյուն էին թափել, իսկ բուրժուազիան գաղտագողի ձգտում էր իշխանության։ Ապրիլի սկզբին Լենինն արտասահմանից եկավ Ռուսաստան։ Ապրիլյան հռչակավոր թեզիսները նոր հեղափոխության էին կոչում։ Բոլշևիկները, բանվորական դրուժինաները, զինվորների հեղափոխական մասսաները նոր մարտերի էին պատրաստվում։ Պատրաստվում էին նաև բուրժուազիան, էսէռներն ու մենշևիկները։ Բոլոր ճեղքերից սողոսկում և հեղափոխական մասսաների դեմ վճռական կռվի էին պատրաստվում նաև մի պահ ասպարեզը թողած միապետականները։ Այո՛, վճռական, դժվարին, արյունահեղ կռիվը դեռ առջևում էր։

Փետրվարյան հեղափոխությունն աքսորից ազատեց Շահումյանին։ Առանց ժամանակ կորցնելու նա Սարատովից մեկնեց Բաքու՝ ճանապարհին իմանալով, որ չնայած մենշևիկների, էսէռների, մուսավաթականների և դաշնակցականների դիմադրությանը, Բաքվի պրոլետարիատը հեռակա կարգով իրեն ընտրել է բանվորների և զինվորների դեպուտատների Բաքվի սովետի նախագահ։ Ժամանելով Բաքու, Շահումյանն անմիջապես մտավ հեղափոխական պայքարի հորձանուտը։ Իր շուրջը համախմբելով աննկուն լենինյաններ Ա. Ջափարիձեին, Մ. Ազիզբեկովին, Ի. Ֆիոլետովին, Յա. Զևինին, Գ. Կորգանովին և մյուսներին, Ս. Գ. Շահումյանը գլխավորեց Անդրկովկասի պրոլետարիատի պայքարը հանուն սովետական իշխանության։ Իր ամբողջ հեղափոխական եռանդը, քաղաքական ղեկավարի և կազմակերպչի իր փայլուն տաղանդը նա նվիրաբերեց այդ մեծ նպատակին։

1917 թվականի հունիսին Շահումյանը մեկնում է Պետրոգրադ և ակտիվորեն մասնակցում Սովետների համառուսաստանյան առաջին համագումա-

րին։ Այստեղ նա ընտրվում է Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեի անդամ։ Այդ օրերին Շահումյանը մի շարք հանդիպումներ է ունենում Լենինի և կուսակցության մյուս ականավոր գործիչների հետ։ Վերհիշելով այդ հանդիպումները, Ն. Կ. Կրուպսկայան հետագայում գրել է. «Ընկ. Շահումյանին՝ Ստեփանին, որը վիթխարի ազդեցություն ուներ Բաքվի պրոլետարիատի շրջանում, մենք գիտեինք արդեն վաղուց... 1917 թ. նույնպես Իլյիչն ուրախ կլիներ տեսնելու Ստեփանին և խոսել նրա հետ ընդհուպ բոլոր հարցերի մասին, որոնք այդպիսի սրությամբ այն ժամանակ ծառացել էին բոլշևիկների առջև» (Ն. Կ. Կրուպսկայա, Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, «Հայաստան» հրատ., 1977, էջ 383, 384)։

Սովետների համագումարից հետո Շահումյանը Պետրոգրադից վերադառնում է Բաքու։ Շուտով տեղի է ունենում բոլշևիկների կուսակցության VI համագումարը։ Կովկասում ծավալված իրադարձությունները Շահումյանին հնարավորություն չեն տալիս անմիջապես մասնակցելու համագումարին, բայց կուսակցության համագումարը նրան ընտրում է ՌՍԴԲԿ(բ) Կենտրոնական կոմիտեի անդամ։ Օգոստոսի 5-ին, համագումարից անմիջապես հետո, Կենտկոմի պլենումն ընտրեց Կենտկոմի նեղ կազմ, որտեղ ընտրվեց նաև Շահումյանը։

1917 թվականի սեպտեմբերին Ստ. Շահումյանը Պետրոգրադում մասնակցում է կուսակցության Կենտրոնական կոմիտեի այն պատմական նիստերին, որտեղ քննարկվում էին Վ. Ի. Լենինի նամակները զինված ապստամբության մասին։ Վերադառնալով Բաքու, Շահումյանը բազմաթիվ ելույթներ է ունենում բանվորական շրջաններում, ակումբներում ու նավթահանքերում, գրում հոդվածներ, մերկացնում ժամանակավոր կառավարության հակաժողովրդական քաղաքականությունը, բացահայտում հակահեղափոխական կուսակցությունների դավաճանությունը, աշխատավոր մասսաներին նախապատրաստում զինված ապստամբության։

***

Ստեփան Շահումյանը մեր կուսակցության խոշորագույն տեսաբաններից է, որոնց հետ մեկտեղ կռեց բոլշևիկյան կուսակցության գաղափարական հիմքերը, իր փայլուն աշխատություններով հարստացրեց բոլշևիզմի տեսական գանձարանը, պատասխան տվեց հեղափոխության առջև ծառացած բազմաթիվ հարցերի։

Շահումյանը հեղափոխական պայքարում հսկայական նշանակություն էր տալիս տեսությանը։ Նրա տեսական նախասիրությունները պարզորոշ դրսևորվեցին տակավին «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» մանիֆեստում։ Հայ նշանավոր դեմոկրատ գրող ու մանկավարժ Ղազարոս Աղայանի գործունեության 40-ամյա հոբելյանի առթիվ, 1902 թվականի մայիսին գրած ելույթում նա անվարան շեշտում էր, որ «Ազգային կուլտուրական գործունեության փոխարեն... մենք քաղաքական-հեղափոխական կռիվ ենք քարոզում. բուրժուական «ազգասիրության» ու «ազատամտության» փլատակների վրա մենք կարմիր, պրոլետարական դրոշակ ենք պարզում, որի վրա գրում ենք առայժմ.

«Կռի՛վ բռնակալության դեմ,
Կեցցե՛ քաղաքական ազատությունը»...

Տեսության հարցերում իր անզիջող դիրքորոշմամբ Շահումյանն ընկերների շրջանում հայտնի էր Բեռլինում ուսանելու տարիներին։ «Ունենալով մեղմ բնավորություն,— վերհիշում է հետագայում նրա բեռլինյան շրջանի դասընկերներից մեկը,— միշտ զիջող լինելով անձնական հարաբերություններում, նա անակնկալ կերպով մեր առաջ բացեց իր բնավորության մի նոր գիծը՝ հասարակական համոզմունքների բնագավառում իր հաստատակամությունը և ծայր աստիճան անզիջողականությունը։ Իր պաշտպանած դրույթներում այդպես անհողդողդ լինելը, մեր կարծիքով, նրան դարձնում էր գրեթե «կարծրաքար», որով այն ժամանակ կուսակցական շրջաններում կնքել էին բոլշևիկներին։ Մենք բազմիցս այդպես էինք կոչում նաև նրան»։

ՌՍԴԲԿ II համագումարից հետո կուսակցությունը Շահումյանին հանձ-



նարարում է արտասահմանում գլխավորել ՌՍԴԲԿ Կենտկոմին առընթեր ստեղծված հայերեն և վրացերեն լեզուներով մարքսիստական գրականություն հրատարակելու հանձնաժողովի աշխատանքը։ Նա 1904 թվականին հայերեն է թարգմանում և հրատարակում Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի, Գ. Վ. Պլեխանովի առանձին աշխատություններ, այդ թվում՝ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, որը նշանավոր իրադարձություն հանդիսացավ հայ հասարակական-քաղաքական կյանքում։

Իր մարքսիստական-լենինյան աշխարհայացքով, դավանած գաղափարներով, աներեր ինտերնացիոնալիզմով Շահումյանը նոր, հիրավի լուսավոր էջ բացեց հայ իրականության մեջ։

1904 թվականի հոկտեմբերին գրած հոդվածներից մեկում, որը լույս տեսավ «Պրոլետարիատի կռիվ» թերթում, Շահումյանը, անդրադառնալով Հայաստանի գավառների իրականությանը, համոզմունք էր հայտնում, որ սոցիալ-դեմոկրատիան իր տեսական հետևողական աշխատանքով, «իր համարձակ պրոպագանդայով», «պայծառ ճառագայթի նման» կթափանցի հայկական պրովինցիայի այդ «մթին թագավորությունը», բնակչությանը կսովորեցնի մտածել քաղաքականորեն և գործել քաղաքականորեն, իր դրոշի տակ կկազմակերպի նրա պրոլետարական և կիսապրոլետարական մասսաներին և վճռական րոպեին նրանց գրոհի կտանի ինքնակալության դեմ, եղբայրորեն միացած ռուս ժողովրդի հետ։

1905 թվականի նոյեմբերից սկսած Ստեփան Շահումյանը խմբագրում է ռուսերեն լեզվով Թիֆլիսում հրատարակվող, Կովկասում առաջին բոլշևիկյան ամենօրյա լեգալ թերթը՝ «Կավկազսկի ռաբոչի լիստոկ»-ը, որի էջերում լույս տեսան Մեր խնդիրները, Հեղափոխության հաղթությունը, Էվոլյուցիոնիզմն ու ռևոլյուցիոնիզմը հասարակական գիտության մեջ, Վերադարձ չկա և այլ խորապես մարքսիստական աշխատություններն ու հոդվածները։ Նա բազմաթիվ հոդվածներ և ուսումնասիրություններ էր հրապարակում նաև բոլշևիկյան այլ պարբերականներում, որոնք նվիրված էին մարքսիստական փիլիսոփայության հարցերին, գիտական սոցիալիզմի տեսությանը, բանվորական շարժման տարբեր խնդիրներին։ Խորապես տիրապետելով մատերիալիստական դիալեկտիկայի մեթոդին, Շահումյանը գիտականորեն վերլուծում էր հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, հիմնավորում բուրժուական կարգերի տապալման անխուսափելիությունը, սոցիալիստական հեղափոխության հաղթանակը։

Դասակարգերը ժամանակակից եվրոպական հասարակության մեջ ընդարձակ հոդվածում Շահումյանն ապացուցում էր ռևիզիոնիստական այն տեսակետի սնանկությունը, թե կապիտալիստական արտադրահարաբերությունների պայմաններում հնարավոր է բանվոր դասակարգի տնտեսական վիճակի բարելավումը։ Նա նշում էր. «...ներկա հասարակության մեջ, որը հիմնված է մասնավոր սեփականության և ազատ մրցման վրա, երբեք չի կարելի վերացնել շահագործությունը» (ԵԼԺ, հ. 1, էջ 85), քանի որ հետզհետե խորանում է «այն վիհը, որ բաժանում է միմյանցից ներկայիս երկու հակամարտ դասակարգերը՝ բուրժուազիան և պրոլետարիատը» (նույն տեղը, էջ 93)։

Հենվելով Կ. Մարքսի հավելյալ արժեքի տեսության վրա, Շահումյանն ապացուցում էր, որ պրոլետարիատի դրության լավացման վերաբերյալ խոսակցությունները ոչ մի հիմք չունեն (տե՛ս նույն տեղը, էջ 102), որ բանվորների աննշան տնտեսական բարելավումները և ամբողջ «սոցիալական օրենսդրությունը» անկարող են որևէ էական փոփոխություն մտցնել պրոլետարիատի վիճակում։ Նրանք աննշան կաթիլներ են թշվառության այն օվկիանոսում, որ ներկայացնում է իրենից բանվոր դասակարգի դրությունը (տե՛ս նույն տեղը, էջ 102—103)։ Քանի որ անխուսափելի է բանվոր դասակարգի տնտեսական վիճակի հետագա վատթարացումը, հետևապես անխուսափելի է նաև նրա հետագա հեղափոխականացման պրոցեսը, շեշտում էր Շահումյանը։

Էվոլյուցիոնիզմը և ռևոլյուցիոնիզմը հասարակական գիտության մեջ աշխատությունում, Շահումյանը հետևողականորեն պաշտպանում էր մարք-

սիստական փիլիսոփայության հիմունքները, քննադատում ռևիզիոնիստ Է. Բեռնշտայնին, բուրժուական տեսաբան Վ. Զոմբարտին, որոնք փորձում էին ժխտել հասարակության մեջ հեղափոխական հեղաշրջումների օրինաչափ լինելը, ընդունում էին միայն էվոլյուցիոն զարգացումը։

Այս շրջանում գրած իր աշխատություններում Շահումյանը լուսաբանում է պետության մասին մարքսիստական ուսմունքը, անդրադառնում պետության ծագման հարցերին, բացահայտում նրա արտաքին ու ներքին ֆունկցիաները, ցույց տալիս բուրժուական պետության խորապես դասակարգային էությունը։

Ռուսական առաջին հեղափոխության օրերին գրած իր աշխատություններում Շահումյանը տեսական փաստարկներով պաշտպանում էր բուրժուադեմոկրատական հեղափոխության մեջ պրոլետարիատի հեգեմոնիայի, զինված ապստամբության, պրոլետարիատի ու գյուղացիության հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրայի, ժամանակավոր հեղափոխական կառավարության վերաբերյալ Վ. Ի. Լենինի հայացքները։

1906—1907 թվականներին Ստեփան Շահումյանը, Ս. Սպանդարյանի, Ս. Կասյանի հետ միասին հիմնադրում և խմբագրում է բոլշևիկյան «Կայծ», «Նոր խոսք», «Օրեր» և այլ թերթերը, որոնք խոշոր դեր խաղացին հայ իրականության մեջ։ Բոլշևիկյան պարբերականներում Շահումյանը հետևողականորեն շարունակում էր տեսական հրատապ պրոբլեմների մշակումը։ Այս շրջանում նա հատկապես կարևորում է բոլշևիկների դումայական տակտիկայի հարցերի լուսաբանումը։ Շահումյանը կտրականապես մերժում էր Պլեխանովի և մենշևիկների այն տեսակետը, թե ցարական դուման ծնունդ է առել հեղափոխությունից և կարող է ծառայել պրոլետարիատին։ Ոչ թե բուրժուական ռեֆորմները, գրում էր Շահումյանը, ոչ թե հոկտեմբերի 17-ի մանիֆեստը կամ պետական դուման են առաջ մղելու Ռուսաստանը, այլ տիրող անարդարացի կարգերի դեմ աշխատավոր մասսաների հետևողական կռիվը։ «Դեմոկրատական հեղափոխությունն է Ռուսաստանի վերակազմության միակ ճանապարհը»,— եզրակացնում էր նա։

Շահումյանի աշխատություններում մեծ տեղ է հատկացվում գյուղացիության հարցին։ Բազմաթիվ հոդվածներում նա անդրադարձել է ագրարային հարցի նշանակությանը հեղափոխական պայքարում, բացահայտել բոլշևիկյան կուսակցության ագրարային ծրագիրը և լայնորեն պրոպագանդել այն։

Ստեփան Շահումյանը ազգային հարցի խոշոր գիտակ ու տեսաբան էր։ Դեռևս 1906 թվականի հուլիսին «Կայծ» թերթում նա հրապարակում է Ազգային հարցը և սոցիալ-դեմոկրատիան նշանավոր երկը, որտեղ մարքսիստական խոր գիտականությամբ քննում է ազգային հարցի դրվածքը պրոլետարիատի, մասնավորապես Ռուսաստանի պրոլետարիատի հեղափոխական պայքարի խնդիրների հետ սերտորեն առնչված։

Մարքսիստական գրականության մեջ նա առաջիններից մեկն էր, որ տվեց ազգի գիտական բնորոշումը, ազգերի առաջացման պատմական ընթացքը, հստակ ձևակերպեց պետական կառուցվածքի ձևերը, մասնավորապես ցենտրալիզմի, ֆեդերալիզմի, քաղաքական կենտրոնացման և ապակենտրոնացման, քաղաքական սուվերենիտետի հասկացությունները, անդրադարձավ ազգերի ինքնորոշման՝ որպես սոցիալ-դեմոկրատիայի ծրագրային պահանջի և այդ անջատման նպատակահարմարության խնդիրներին և այլն։ Շահումյանի այդ աշխատությունն արժեքավոր ավանդ է ազգային հարցի մարքսիստական-լենինյան տեսության գանձարանում։

1912—1914 թվականներին, Աստրախանի աքսորում, Շահումյանը գրում է ազգային հարցի վերաբերյալ տեսական-քաղաքական մի շարք աշխատություններ։ Դրանց թվում առանձնանում է 1914 թվականին հրատարակված Ազգային-կուլտուրական ավտոնոմիայի մասին երկը։

Մերկացնելով «ազգային հարցի» բուրժուական գաղափարախոսներին, որոնք ազգը դիտում էին իբրև «հավերժական» կատեգորիա, Շահումյանը նշում էր ազգի պատմական լինելը, հետևապես նաև ազգային հակասությունների պատմական, անցողիկ բնույթը։ Ազգային հարցը, ասում էր նա, կարող է լուծել



միայն պրոլետարիատն իր հեղափոխական պայքարի, տիրող հասարակական-քաղաքական կարգերի տապալման միջոցով։

Ազգային հարցի մշակումը, սակայն, Ստ. Շահումյանի համար զուտ տեսական նշանակություն չուներ։ Այն նա քննում էր պրակտիկ տեսանկյունով, հեղափոխության շահերի հետ սերտորեն զուգորդված։ Այդ առումով ոչ միայն տեսական, այլև պրակտիկ նշանակություն ունեն Շահումյանի այն աշխատությունները, որոնք ուղղված էին բուրժուական նացիոնալիստների դեմ ու հսկայական դեր են խաղացել տարբեր ազգերի աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության, նրանց միջև եղբայրական համերաշխություն ստեղծելու գործում։

Առանձնապես անգնահատելի եղավ Ստեփան Շահումյանի պայքարը «Դաշնակցություն» բուրժուանացիոնալիստական կուսակցության դեմ։ Իր մի շարք աշխատություններում, այդ թվում՝ Երևանից, Հայ իրականությունից, Դաշնակցությունը պրոլետարիատի «ղեկավար», Առաջիկա ընտրությունները Թիֆլիսում և դաշնակցության կուսակցությունը, Դաշնակցական համագումարը էջմիածնում և այլն, նա մերկացնում էր դաշնակցության ռեակցիոն էությունը, նրա կործանարար հակաժողովրդական քաղաքականությունը։ «Կովկասի հայ բուրժուազիան,— գրել է Շահումյանը,— բնականորեն «դաշնակցություն» կուսակցության մեջ տեսնում էր իր հարազատ զավակին, իր լավագույն դաշնակցին, իր շահերի լավագույն արտահայտչին ու պաշտպանին,— և այդ պատճառով բոլոր ուժերով, նյութապես ու բարոյապես, աջակցում էր այդ կուսակցությանը» (ԵԼԺ, հ 1, էջ 369)։

Ստեփան Շահումյանը շատ է գրել գրականության հարցերի շուրջ։ Հիշենք նրա հայտնի ճառը Ղազարոս Աղայանի գործունեության 40-ամյակի առթիվ, 1902 թվականին։ Հետագա տարիներին նա բազմիցս անդրադարձել է գրականության պրոբլեմներին։ Մասնավորապես 1910—1912 թվականներին Շահումյանը հանդես է գալիս գրականագիտական մի շարք հոդվածներով, որոնցում փայլուն կերպով պաշտպանում է գրականության կուսակցականության լենինյան սկզբունքը։

Խոշոր է Ստեփան Շահումյանի գաղափարական-տեսական ժառանգության դերը բոլշևիկյան տեսական մտքի զարգացման բնագավառում։ «Տեսական մարքսիզմի ծանր հրետանի»— այսպես է Շահումյանին բնորոշել Սերգո Օրջոնիկիձեն։

***

1917 թվականի հոկտեմբերի 25-ին Պետրոգրադի պրոլետարիատը և հեղափոխական զինվորներն իրականացրին սոցիալիստական մեծ հեղափոխություն և իշխանությունը վերցրին իրենց ձեռքը։

Հոկտեմբերյան հեղաշրջումը Շահումյանը դիմավորեց Բաքվում։ «Զքավորագույն գյուղացիների, ստրկացված, սովահար մասսաների, հեղափոխական զինվորների, նավաստիների և բանվորների ամբողջ համակրանքը սովետների կողմն է»,— գրեց նա հեղափոխության լուրը ստանալուն պես։

1917 թվականի նոյեմբերի 3-ին Բաքվի սովետի գործադիր կոմիտեն կոչով դիմեց բանվորներին և քաղաքի ամբողջ բնակչությանը, հայտարարելով, որ Սովետն ամբողջ իշխանությունն իր ձեռքն է վերցրել։ «Կեցցե նոր հեղափոխական կառավարությունը Լենինի գլխավորությամբ։ Կեցցե Սովետների իշխանությունը»,— ասված էր կոչում։

1917 թվականի դեկտեմբերի 16-ին հեղափոխական Ռուսաստանի Ժողկոմխորհը Վ. Ի. Լենինի նախագահությամբ քննարկեց Կովկասի դրության հարցը։ Վիճակը չափազանց ծանր էր երկրամասում։ Պարտություն կրելով Բաքվի սովետում, քաղաքի հակահեղափոխական ուժերը կենտրոնացան քաղաքային դումայում և ազգային խորհուրդներում, սկսեցին դավեր նյութել Սովետին վճռական հարված հասցնելու համար։ Սպասվում էր համառ, արյունահեղ զինված գոտեմարտ։

Երկրամասում հակահեղափոխությունը գլխավորում էր այսպես կոչված

Անդրկովկասյան կոմիսարիատը, որը հետագայում վերածվեց Անդրկովկասյան սեյմի։ Դա երկրամասի բոլոր բուրժուական կուսակցությունների բլոկն էր, որը ստեղծվել էր սովետական իշխանության դեմ պայքարելու համար։

Անդրկովկասյան կոմիսարիատի թևի տակ դավում էր վրացական, ադրբեջանական և հայկական նացիոնալիզմը։ Երկրամասը գլորվում էր ազգամիջյան երկպառակտչական պատերազմների անդունդը։ Իրենց հերթին դեպի Անդրկովկաս, հատկապես դեպի նավթային Բաքու էին իրենց ձեռքերը երկարում գերմանաթուրքական և անգլո-ֆրանս-ամերիկյան իմպերիալիստական խմբավորումները։

Քննարկելով ստեղծված ծանր վիճակը, Ժողկոմխորհը Ստեփան Շահումյանին նշանակեց Կովկասյան գործերի ժամանակավոր արտակարգ կոմիսար, մինչև երկրամասում սովետական իշխանության կազմվելը։ Դեկտեմբերի 18-ին Վ. Ի. Լենինը ստորագրեց Շահումյանի մանդատը։

1918 թվականի փետրվարի վերջերին Ստեփան Շահումյանը, հաղթահարելով մեծ դժվարություններ, կարողանում է Թիֆլիսից գալ Բաքու։ Քաղաքի պրոլետարիատը և ողջ աշխատավորությունը ցնծությամբ են դիմավորում Շահումյանին։ Շահումյանը վիթխարի աշխատանք է ծավալում։ Նա համարյա ամեն օր հանդես է գալիս բանվորների և զինվորների առջև, մասնակցում կուսակցական կազմակերպությունների ժողովներին, ընդունում պատվիրակներ, գրում հոդվածներ ու կոչեր։

Ժամանակը տագնապալից էր։ Քաղաքում տենդագին կերպով զինված ելույթի էին նախապատրաստվում մուսավաթականները։ 1918 թվականի մարտի 30-ին նրանք բարձրացրին հակասովետական խռովություն։ Սակայն եռօրյա քաղաքացիական կռիվներում Բաքվի պրոլետարիատը ջախջախեց այդ խռովությունը։ Արյունահեղ մարտերում ծնունդ առավ Բաքվի կոմունան՝ Անդրկովկասում առաջին սովետական իշխանությունը։ Ապրիլի 25-ին Բաքվի սովետը կազմեց Բաքվի նահանգի ժողովրդական կոմիսարների խորհուրդ, որի մեջ մտան Անդրկովկասի պրոլետարիատի լավագույն զավակները։ Ժողկոմխորհի նախագահ և արտաքին գործերի կոմիսար ընտրվեց Ստեփան Շահումյանը։

Բաքվի ժողկոմխորհն իր առաջին դեկլարացիայում, որը գրել էր Ստեփան Շահումյանը, հայտարարեց, որ ինքը «ամենասերտ կապով կապված է լինելու Համառուսաստանյան կենտրոնական իշխանության հետ և, հարմարվելով տեղական պայմաններին, կենսագործելու է Ռուսաստանի բանվորագյուղացիական կառավարության ժողովրդական կոմիսարների Գերագույն խորհրդի բոլոր դիրեկտիվներն ու կարգադրությունները»։

Կարճ ժամանակամիջոցում Բաքվի կոմունան ստեղծված դժվարագույն պայմաններում իրականացրեց մի շարք արմատական սոցիալ-տնտեսական միջոցառումներ։ Ստեղծվեց կարմիր բանակ, որը 1918 թ. հունիսին արդեն հասնում էր 6 հազար հոգու, ազգայնացվեցին նավթահանքերը, բանկերը, առևտրական նավատորմը, արդյունաբերական ձեռնարկությունները, բռնագրավվեցին կալվածատերերի ու բեկերի հողերը՝ հօգուտ գյուղացիության, վերացվեցին հին դատարանները, ստեղծվեցին տեղական ժողդատարաններ, կազմակերպվեց ժողովրդական կրթության գործը և այլն։

Իր կազմավորման հենց սկզբից Բաքվի կոմունան ստիպված էր մտնել արյունահեղ կռիվների մեջ։ Նա հերոսաբար դիմադրում էր օտարերկրյա զավթիչներին և մուսավաթական ու այլ ներքին հակահեղափոխական ուժերին։

Լենինն ուշադիր հետևում էր դեպքերի զարգացմանն Անդրկովկասում, աշխատում էր անխափան կապ պահպանել Բաքվի կոմունայի հետ։ Հավանություն տալով Ստեփան Շահումյանի գլխավորած Բաքվի բոլշևիկների քաղաքականությանը, ողջունելով նրանց ակտիվ հեղափոխական պայքարը, նա 1918 թ. մայիսի 14-ին Շահումյանին ուղարկած հեռագրերից մեկում գրել է. «Թանկագին ընկեր Շահումյան։ Շատ շնորհակալ եմ նամակի համար։ Մենք հրճվանքի մեջ ենք Ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությունից։ Կարողացեք դրան միացնել այն ամենազգույշ դիվանագիտությունը, որն անպայման թելադրվում է այժմյան դժվարագույն դրությամբ, և մենք կհաղթենք»։



Վ. Ի. Լենինը մի շարք կարգադրություններ արեց Բաքվի կոմունային կոնկրետ օգնություն ցույց տալու վերաբերյալ։ Բաքու են ուղարկվում Պետրովի ջոկատը, փող, սննդամթերք, ռազմական հանդերձանք։ Բայց դրությունը քաղաքում մնում էր ծանր։ Գերմանաթուրքական զորքերն արագորեն մոտենում էին Բաքվին, անգլիացիները նույնպես ուժեղացրին ճնշումը։ Դրությունը ծանրանում էր նրանով, որ քաղաքի ներսում բոլշևիկների դեմ պայքարն ուժեղացրին մենշևիկները, էսէռները, դաշնակցականները և հակահեղափոխական այլ ուժեր։

Ստեփան Շահումյանը թշնամիներով շրջապատված կոմունայի ոգին էր։ Նա հաստատակամ բոլշևիկյան կուրս էր վարում։ Քաղաքի հակահեղափոխական ուժերը, իբր Բաքուն թուրքական զորքերի ներխուժումից փրկելու նպատակով, առաջարկում էին հրավիրել Պարսկաստանում գտնվող անգլիական զորքերին։ Ստեփան Շահումյանը և նրա զինակիցները վճռականապես մերժեցին այդ դավաճանական առաջարկությունը։ 1918 թվականի հուլիսի 29-ին Համառուսաստանյան ԿԳԿ միացյալ նիստում արտասանած ճառում, անդրադառնալով Բաքվի կոմունայի քաղաքականությանը, Վ. Ի. Լենինն ասել է. «Անգլո-ֆրանսիական իմպերիալիստների հետ որևէ համաձայնություն կնքելուց վճռականորեն հրաժարվելը Բաքվի ընկերների միակ ճիշտ քայլն է, քանի որ չի կարելի նրանց հրավիրել, առանց ինքնուրույն սոցիալիստական իշխանությունը, թեկուզ և կտրված տերիտորիայում, վերածելու իմպերիալիստական պատերազմի սարքի» (Երկեր, հ. 28, էջ 9)։

1918 թվականի հուլիսի 31-ին Բաքվում սովետական իշխանությունը ժամանակավորապես ընկավ։ Օգոստոսի 4-ին անգլիացիները մտան Բաքու։ Թուրքական մեծաքանակ զորքերը գտնվում էին քաղաքի մատույցներում։

Իր կյանքի վերջին օրերին գրած հոդվածներում ու կոչերում Շահումյանը մերկացնում էր Անդրկովկասի հակահեղափոխական կուսակցություններին և ուժերին, ցույց տալիս նրանց նողկալի կերպարանքը։ 1918 թվականի օգոստոսի 12-ին Բաքվի բանվորներին ուղղված կոչում նա հաստատ վստահություն էր հայտնում, որ «Բանվորագյուղացիական Ռուսաստանը դեռ կգա Բաքու։ Բաքվի պրոլետարիատը նորից կկանգնի Սովետական Սոցիալիստական Հանրապետության դրոշի տակ»։

***

Կենտրոնական սովետական կառավարությունը, անձամբ Վ. Ի. Լենինը լարված հետևում էին Բաքվի դեպքերին, բոլոր միջոցներով փորձում օգնություն հասնել Բաքվի հերոսական պրոլետարիատին և նրա ղեկավարներին։ Լենինը հատկապես մտահոգված էր Ստեփան Շահումյանի բախտով։ 1918 թ. օգոստոսի 9-ին նա Աստրախան ուղարկած հեռագրում սպառիչ տեղեկություններ էր պահանջում Բաքվի մասին։

1918 թ. սեպտեմբերի 14-ին թուրքերը հարձակման անցան։ «Ցենտրոկասպիի» դիկտատորները և նրանց անգլիացի հովանավորները փախան Բաքվից։ Այնինչ Ստեփան Շահումյանը և նրա ընկերները շարունակում էին մնալ բանտում։ Թուրքական ներխուժումից մի քանի ժամ առաջ միայն հաջողվեց նրանց հանել բանտից և նստեցնել նավահանգստում կանգնած նավերից մեկը՝ «Թուրքմեն» շոգենավը։

Ծով դուրս գալով, «Թուրքմեն»-ը ընտրեց սովետական Աստրախանի ուղին։ Բայց անգլիական գործակալների կողմից դրդված անձնակազմը փոխեց նավի ուղղությունը և կուրս վերցրեց դեպի Կրասնովոդսկ, ուր տնօրինում էր էսէռական այսպես կոչված «Անդրկասպյան» կառավարությունը, որը ծառայում էր անգլիացիներին։

Սեպտեմբերի 17-ին Կրասնովոդսկ ժամանած Բաքվի կոմիսարները զինաթափվեցին և նետվեցին բանտ։ Սեպտեմբերի 20-ի գիշերը թուրքմենական մռայլ ու անկյանք անապատում կատարվեց մարդկային պատմության ահարկու ողբերգություններից մեկը։ Կրասնովոդսկից 207-րդ վերստի վրա Ախչա-

Կույմա և Պերեվալ երկաթուղային կայարանների միջև, ավազուտ լեռնանցքի եզրին հեղափոխության թշնամիները կատարեցին նողկալի ոճրագործություն: Նրանք գազանաբար հոշոտեցին 26-ին: Գնդակահարության վայրում, կեսգիշերյան անապատային խավարում գնդացիրների և հրացանների ճարճատյունի մեջ լսելի էին նահատակների վերջին խոսքերը. «Մենք ուժե՛ղ ենք մահից», «Մենք մեռնում ենք կոմունիզմի համար: Կեցցե՛ կոմունիզմը»:

***

Աննկուն բոլշևիկ Ստեփան Շահումյանի պայծառ անունն ընդմիշտ ոսկե տառերով է գրվել կոմունիզմի համար պայքարի հերոսական տարեգրության մեջ: Մեր օրերում այդ տարեգրությունը նոր էջերով է հարստացնում սովետական ժողովուրդը: Ոգեշնչված հարազատ կուսակցության վիթխարի նախագծումներով, սովետական մարդիկ նվաճում են կոմունիզմի կառուցման նոր բնագծերը, իրենց հերոսական գործերով բազմապատկում սոցիալիստական հայրենիքի տնտեսական և ռազմական հզորությունը, ուժ ու եռանդ չեն խնայում ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները ժամկետից շուտ կատարելու համար:

Դեպի կոմունիզմ սովետական ժողովրդի հաղթական երթն անկասելի է: Այդ երթը միլիոնների երթն է, երթը 70-ական թվականների մի սերնդի, որը ո՛չ միայն խանդավառվել գիտե գալիքի պայծառ հեռանկարներով, այլև գիտե հպարտանալ իրեն նախորդած հեղափոխական սերունդների հերոսական գործերով, աշխարհում առաջին բանվորագյուղացիական երկրում սոցիալիզմ կառուցող սերնդի մեծագործություններով:

Կոմունիզմի հաղթանակի համար իրենց թանկագին կյանքն անմնացորդ նվիրաբերած խիզախ լենինյանների համաստեղության մեջ առանձնակի փայլով է շողշողում Ստեփան Շահումյանի անմար աստղը: Շահումյանը մեզ հետ է, մեր շարքերում:

---

# ՓԱՌԱՎՈՐ ՍԽՐԱՆՔՆԵՐԻ ՈՒՂԻՈՎ

## (ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ 60-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**ԱԻԴԱ ԹՈՓՈՒԶՅԱՆ**
ՀԼԿԵՄ Կենտկոմի երկրորդ քարտուղար

ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 29-ԻՆ ԼՐԱՑԱՎ համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միության 60 տարին:

Կոմերիտմիությունը մեծ Հոկտեմբերի ծնունդն է: Նրան կոփել ու դաստիարակել է կոմունիստների կուսակցությունը: Լենինյան ամենահաղթ դրոշի ներքո, ստեղծագործական ավյունով ու եռանդով նա հաստատում է իր հավատարմությունը Սովետական Միության կոմունիստական կուսակցության գործին, Լենինի ավանդներին: Կոմերիտմիության ուժը կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարության ու օգնության մեջ է:

Աշխատել և ապրել կոմունիստաբար. այս է կոմերիտմիության ողջ գործունեության նշանաբանը:

***

Սովետական ողջ երիտասարդության հետ միասին Սովետական Հայաստանի կոմերիտականները, երիտասարդությունը խորին երախտագիտության ու պատասխանատվության զգացումով ընդունեցին Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտկոմի՝ «ՀամԼԿԵՄ 60-ամյակի և երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրների մասին» որոշումը, որը կոմերիտմիության նկատմամբ կուսակցության, անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Լ. Ի. Բրեժնևի հայրական հոգատարության ու վստահության դրսևորումն է:

Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միության 60-ամյակը հանրապետության կոմերիտական սերնդի, ողջ երիտասարդության տոնն է, հիշարժան տարելից բոլոր նրանց համար, ովքեր կոփվել են կոմերիտմիության շարքերում, հեղափոխության փոթորկածուփ ալիքներում:

Սովետական երկրի պատմության մեջ պայծառ էջեր են գրել կոմերիտականները: Մենք հիանում ենք Հոկտեմբերի բարիկադների վրա ու քաղաքացիական կռիվներում մարտնչած մեր հայրերի ու պապերի սխրանքներով: Նրանց շարքերում էին նրանք, ովքեր հետո դարբնելու էին Հայաստանի նորոգ կյանքը:

Մենք երբեք չենք մոռանա սոցիալիզմի առաջին շինարարների ինքնանվեր, հերոսական աշխատանքը: Մենք խոնարհվում ենք նրանց խիզախումի առաջ, ովքեր կենաց և մահու պայքարում պաշտպանում էին սոցիալիստական հայրենիքը, ազատագրում Եվրոպայի ժողովուրդներին ֆաշիզմի դարչնագույն ժանտախտից և հպարտ ենք, որ մեծ Հայրենականի ռազմաճակատներում քաջաբար մարտնչել են Հայաստանի կոմերիտմիության ավելի քան 70 հազար ներկայացուցիչներ:

Մենք հպարտանում ենք խոպանի նվաճողներով և մեր հայրենիքի ինդուստրիալ հզորությունն ստեղծողներով: Հպարտանում ենք նրանցով, ովքեր հարստացնում են 70-ական թվականների կոմերիտական սերնդի տարեգրությու-

նը՝ Բայկալ—Ամուրյան մայրուղում, ՌՍՖՍՀ-ի ոչ-սևահողային գոտում, Արփա—Սևանում, «Ատոմմաշում», հարվածային մյուս կառույցներում։

Մեկ տարի առաջ մեր ողջ երկիրը մեծ շուքով ու հանդիսավորությամբ տոնեց Հոկտեմբերյան հեղափոխության 60-ամյակը, հաստատվեց ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը։ Մեր ողջ հանրապետությունը ցնծությամբ նշեց Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորվելու 150-ամյակը, տոնահանդես, որը վերածվեց ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների բարեկամության վառ ցույցի։ Այդ պատմական իրադարձություններին հաջորդեց կոմերիտմիության 60-ամյակի տոնակատարությունը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որի ծնունդն է ազատարար նոյեմբերը, կանխորոշեց Հայաստանի երիտասարդության ճակատագրի արմատական բեկումը։ Սոցիալիզմն ազատագրեց երիտասարդությանը շահագործումից, վերացրեց քաղաքական անարդարությունները, բացեց սոցիալական ու տնտեսական առաջընթացի ուղին, ընձեռեց ստեղծագործական աշխատանքի, գիտելիքներին տիրապետելու հնարավորություններ, համակեց մարդկանց վաղվա օրվա նկատմամբ անսասան հավատով։

Երիտասարդ մարդը դարձավ երկրի լիիրավ քաղաքացին, մեր պետության կառավարման ակտիվ մասնակիցը։ Սովետների երկրի վեց տասնամյակների գլխավոր նվաճումներից է այդ՝ վավերացված ինչպես ՍՍՀՄ, նույնպես և մեր հանրապետության նոր սահմանադրություններում։ Մեր երիտասարդության սոցիալական հասունության հաստատումն է դա։ Այսօր հանրապետության ժողովրդական դեպուտատների սովետներում ընտրվածների 30 տոկոսը երիտասարդներ են։

Երիտասարդությունը սովետական ժողովրդի հանճարով ստեղծված հոգևոր ու նյութական բարիքների ժառանգորդն է. ժառանգորդն է բարեկամության այն ավանդների, որոնց հայ ժողովուրդը պարտական է այսօրվա ու ապագայի պայծառ օրերի համար։

***

Լենինի գլխավորած բոլշևիկների կուսակցությունն էր կոմերիտմիության ստեղծման նախաձեռնողը։ Անցած տասնամյակների պատմությունը ցույց տվեց, որ միայն բանվոր դասակարգի հետ, մարքսիստական կուսակցության ղեկավարությամբ, պատանիներն ու աղջիկները կարող են ձեռք բերել իրենց իրավունքների համար պայքարելու ռեալ հնարավորություններ։

Իրեն անմնացորդ նվիրելով աշխարհում բոլոր շահագործվողների ազատագրմանը՝ կուսակցությունն արտահայտում է նաև աշխատավոր երիտասարդության շահերը. ահա ինչու հեղափոխության դրոշի ներքո համախմբվում են հազարավոր երիտասարդներ։ Մենք ապագայի կուսակցություն ենք,— գրում է Վ. Ի. Լենինը,— իսկ ապագան պատկանում է երիտասարդությանը։ Մենք նորարարների կուսակցություն ենք, իսկ նորարարների հետևից միշտ ավելի հաճույքով երիտասարդությունն է գնում։ Մենք հին նեխվածքի դեմ անձնուրաց պայքարող կուսակցություն ենք, իսկ անձնուրաց պայքարի միշտ առաջինը կգնա երիտասարդությունը (տե՛ս ԵԼԺ, հ. 14, էջ 204)։

Եթե թերթենք հոկտեմբերյան փոթորկոտ օրերի տարեգրությունը, ապա կտեսնենք, որ, կանխագծելով զինված ապստամբության կուրսը, բոլշևիկներն իրենց VI համագումարում քննարկեցին երիտասարդական միությունների ստեղծման հարցը։ Եվ Հոկտեմբերյան պատմական օրերին, հայրերի հետ ուսուսի, երիտասարդ բանվորներն ու գյուղացիները, զինվորներն ու նավաստիները պայքարում էին պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար։

Կոմունիստների հետ համատեղ պայքարի էր ելել նաև Հայաստանի երիտասարդությունը։ Երբեք չի խամրի փառքը Մայիսյան ապստամբության օրերին զոհված հերոսների։ Արդինայի ձորում անմահացած Ղուկաս Ղուկասյանը և նրա ընկերները դարձան Հայաստանի կոմերիտմիության հիմնադիրները։

1918 թվականի հոկտեմբերի 20-ին, երբ բանվոր և գյուղական երիտասարդության միությունների առաջին համագումարն ազդարարեց կոմերիտ-



միության ծնունդը. Ռուսաստանի ծայրամասերում ապրող ազգերի երիտասարդության կոմունիստական միությունների ստեղծման ազդակն էր այդ։

Քիչ էին նրանք՝ առաջին կոմերիտականները, ընդամենը 22 հազար, բայց հեղափոխության երիտասարդ մարտիկների միաձույլ ու կուռ մի բանակ, որ հրացան, բահ ու գիրք առած, ներգրավվել էր աշխատանքի տարբեր բնագավառները։

Փոթորկում էր քաղաքացիական պատերազմը, քաղաքներում ու գյուղերում ամենուր փակցված էին այդ ժամանակների համար սովորական դարձած պլակատներ. «Դու գրվե՞լ ես կամավոր», «Շրջկոմը փակ է, բոլորը մեկնել են ռազմաճակատ»։

Այդ հրաշունչ օրերին կոմերիտական բուռն աշխատանք է ծավալվում ռազմաճակատում։ Հեղափոխության վետերանները երիտասարդությանն առաջնորդում էին Ուկրաինայի տափաստաններում, Խաղաղ օվկիանոսի ափերին մղվող դասակարգային թեժ մարտերում։ 11-րդ Կարմիր բանակի զորամասերի մեծաթիվ կոմերիտականներ ևս անդավաճանորեն, դաժան մաքառումներում զորավիգ եղան իրենց ավագ ընկերներին։

Մարտերում ամրանում ու կոփվում էր կոմերիտմիությունը, իր շարքերը համալրում բանվորագյուղացիական գործին, կուսակցության գործին նվիրված հավատարիմ երիտասարդներով։ Ռուսաստանի բոլոր ժողովուրդների որդիներն ու դուստրերն էին ելել պաշտպանելու Հոկտեմբերի նվաճումները։ Ղուկաս Ղուկասյանի, Արմենակ Բուդաղյանի, Ստեփան Ալավերդյանի և այլոց անունների հետ մեկտեղ մեր ժողովրդի սրտում առհավետ մնացել են անվեհեր կոմերիտականներ Նիկոլայ Օստրովսկու, Վիտալի Բոնիվուրի, Ալեքսանդր Կոնդրատևի և հեղափոխության հազարավոր մարտիկների անունները։ Բարձր գնահատվեցին երիտասարդության այդ միասնական պայքարը, անօրինակ սխրանքները. սովետների հանրապետությունը կոմերիտմիության փոշոտված բաճկոնին ամրացրեց առաջին պարգևը՝ մարտական Կարմիր դրոշի շքանշանը։

Քայքայված էր երկիրը։ Ավերված քաղաքների ու գյուղերի, գործարանների ու ֆաբրիկաների վերակառուցումը ժողովրդից պահանջում էր ուժերի լարվածություն, հերոսական աշխատանք ու ինքնանվիրում։ Եվ ծավալվում են Կարմիր սերմնացանի շաբաթ, ՁՕՆ, «Թեթև հեծելազոր» շարժումները, կազմակերպվում կոմունիստական շաբաթօրյակներ։

Դաժան 1920 թվականին, Ռուսաստանի կոմունիստական երիտասարդական միության III համագումարում Լենինը երիտասարդության հետ խոսում էր հաղթանակած պրոլետարիատի դիկտատուրայի ամենաէական, ամենաարմատական խնդիրների մասին։ Այդ կենսական խնդիրները խոր արձագանք գտան Հայաստանի կոմերիտմիության առաջին համագումարում, 1921 թվականի օգոստոսի 21-ին։

1924 թվականի հուլիսին Ռուսաստանի կոմունիստական երիտասարդական միության IV համագումարում որոշվեց կոմերիտմիությունը կոչել Լենինյան։ Եվ իրոք, կոմերիտմիության ողջ հերոսական պատմությունը Լենինի անվանն ու գործին երկրի երիտասարդության հավատարմության աներկբա վկայությունն է։

«Միայն աշխատանքում բանվորների և գյուղացիների հետ միասին կարելի է դառնալ իսկական կոմունիստ». լենինյան այս խոսքերն էին նրանց կյանքի ու գործունեության նշանաբանը։

Նորաստեղծ Սովետական Հայաստանի կոմերիտականները, երիտասարդությունը, ողջ ժողովրդի հետ միասին, հերոսական աշխատանքով ստեղծում էին սոցիալիզմի տնտեսական հիմքը, նրա հզոր ինդուստրիալ բազան, վերափոխում գյուղը։ Հանրապետության երիտասարդության համար լենինյան ավանդներին հավատարմության իրական քննաշրջան էին առաջին հնգամյակների աշխատանքային սխրանքներով լի, փառապանծ տարիները։

Կոմերիտմիությունը, իրոք, կարող է հպարտանալ, որ ինքն էլ իր քարն է դրել սովետական հայրենիքի ինդուստրիալ հզորության ստեղծման հիմքում։ Կոմերիտմիության տարեգրության փառավոր էջերից են Կուզնեցկն ու Մագ-

նիտկան, Դնեպրոգէսն ու Թուրքսիբը, Դավալուի ցեմենտի գործարանն ու Ձորագէսը։ Մեր օրերին կոմերիտական հարվածային հզոր կառույցներն իրենց տոհմագրությունն սկսում են հենց այդ ռոմանտիկ տարիներից։ Բայկալ—Ամուրյան մայրուղին սկսվում է Կորչագինյան նեղգիծ երկաթուղուց։

Հիշենք, թե ինչպես սկսվեց մեծ բեկումը գյուղում, ինչպես էր ընթանում սուր դասակարգային պայքարը, որտեղ գյուղական կոմերիտմիությունը հանդես եկավ որպես կուսակցության հուսալի օգնական։ Այդ տարիներին լայն թափ էր ստացել կոմերիտմիության շեֆական աշխատանքը։ Երևանի երկաթուղային հանգույցի կոմերիտականներն ստանձնել էին Դավալու գյուղի շեֆությունը, Երևանի կաշվի գործարանի կոմերիտականներն օգնում էին Հրազդանի շրջանի Այգեստան գյուղի կոմերիտականներին։

Առաջին հնգամյակի տարիներին կոմերիտմիության շարքերից ելան աշխատանքի այնպիսի հերոսներ, ինչպիսիք են՝ Ալեքսեյ Ստախանովը, Մարիա և Եվդոկիա Վինոգրադովաները, Պաշա Անգելինան և հազարավոր ուրիշներ։ Հարվածայնության և սոցիալիստական մրցության գործում հանդես բերած նախաձեռնության համար լենինյան կոմերիտմիությունը պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։

Սովետական մարդն ինքնամոռաց աշխատում էր, ոգեշունչ ստեղծագործում, սիրում ու երազում... Բայց սովետական ժողովուրդը գիտեր նաև, որ իմպերիալիստները մշտապես փայփայում են սովետների երկրում կապիտալիստական սիստեմի վերականգնման հույսը։ Կոմունիստների կուսակցությունը տեսնում էր նոր պատերազմի վտանգը։ «Պատրաստ աշխատանքի և պաշտպանության». դա լոկ խոսք չէր, դա ո՛չ միայն նշանաբան էր, այլև նախապատերազմյան երիտասարդ սերնդի կյանքի էությունը։ 1935—36 թվականներին, հանրապետության կոմերիտմիության Կենտկոմի նախաձեռնությամբ, խնդիր դրվեց պատրաստել 100 օդաչուներ։ ՊԱՊ-ի մասսայական շարժմանը մասնակցում էր Հայաստանի ողջ կոմերիտմիությունը։

Ժողովրդի հիշողությունից երբեք չեն ջնջվի Հայրենական պատերազմի ծանր տարիները։ Անլուր փորձություններ վիճակվեցին սովետական ժողովրդին։ Կուսակցության կոչով սոցիալիստական հայրենիքի պաշտպանության դիրքերում, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների հետ միասին, կանգնեցին նաև կոմերիտականներն ու երիտասարդները։ Հանրապետության յուրաքանչյուր երկրորդ կոմերիտականը մեկնեց ռազմաճակատ։ Եվ այն օրերին մեր երկրում տարածվեց կոմերիտականների կոչը՝ աշխատել ո՛չ միայն իր, այլև ռազմաճակատ մեկնած ընկերոջ փոխարեն։

Հրաշունչ այդ օրերի ավանդների շարունակությունն էր մեծ հաղթանակի 30-ամյակի տոնակատարության նախաշեմին ծնունդ առած «Իմ և այն տղայի փոխարեն» շարժումը։ Պատերազմից չվերադարձած հազարավոր հերոսներ ընդգրկվեցին կոմերիտական-երիտասարդական բրիգադներում, որոնց անդամները կատարում էին նաև զոհված հերոսների արտադրական նորման։ Այսօր էլ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում, էլեկտրալամպերի գործարանում, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատում և այլուր շարունակվում է այդ շարժումը։

...Պատերազմական ծանր օրերին հերոսությունը դարձել էր սովետական մարդկանց կյանքի նորմը։ Մեր հիշողության մեջ հավերժ մնացել են այն հերոսների անունները, որոնք մարտնչում էին Բրեստի ամրոցի պարիսպների մոտ, պաշտպանում Մոսկվան, ճեղքում Լենինգրադի բլոկադան։ Անմահ է Մալայա զեմլյա լեգենդար պլացդարմի հերոսների հիշատակը, որոնց մասին սիրով է գրել ընկ. Լ. Ի. Բրեժնևը իր «Մալայա զեմլյա» հուշագրության մեջ։ Գիրք, որ սովետական երիտասարդության համար դարձել է հայրենասիրական դաստիարակության ձեռնարկ։ Մենք՝ հայ կոմերիտականներս, հպարտ ենք, որ պատերազմի լեգենդար հերոսներ Մատրոսովի ու Գաստելլոյի, Զոյա Կոսմոդեմյանսկայայի և նրա եղբոր՝ Ալեքսանդրի անունների հետ միասին հիշատակվում է նաև Նելսոն Ստեփանյանի ու Հունան Ավետիսյանի, Ջահան Կարախանյանի և Հայաստանի կոմերիտմիության տասնյակ այլ սաների անուններ։



Ո՞րն է նրանց՝ այդ խիստ սովորական, բայց սխրանքներով այնպես արտասովոր այդ երիտասարդների ուժի աղբյուրը։ Նրանց դաստիարակել է կոմունիստական կուսակցությունը, որոնց համար քաղաքացիականության դըպրոց է եղել կոմերիտմիությունը։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին հայրենիքին մատուցած մեծ ծառայությունների և սովետական երիտասարդությանը բուռն հայրենասիրության ոգով դաստիարակելու գործում ներդրած մեծ ավանդի համար ՀամԼԿԵՄ-ը պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Դեռ չէին լռել հաղթանակի համազարկերի արձագանքները, դեռ ռազմադաշտից վերադարձած զինվորը չէր հասցրել հանել ուսադիրները, երկիրն արդեն ծածկվում էր վերամբարձ կռունկների անտառով։ Կուսակցության ղեկավարությամբ սովետական մարդիկ կարճ ժամանակահատվածում բուժեցին պատերազմի վերքերը, վերականգնեցին քայքայված ժողովրդական տնտեսությունը։

Հետպատերազմյան դժվարին տարիներին, սովետական ողջ երիտասարդության հետ միասին, Սովետական Հայաստանի պատանիներն ու աղջիկները ևս ցուցաբերեցին ինքնանվիրումի ու աշխատանքային հերոսության փայլուն օրինակներ։ Լենինի երկրորդ շքանշանով նշեց երկիրը կոմերիտմիության աշխատանքային նոր սխրանքները։

Կոմունիստական կուսակցությունը ժողովրդի առջև դնում էր նորանոր խնդիրներ։ Այդ տարիներին կոմերիտմիությունը շարունակում ու զարգացնում էր հարվածային շինարարության փառավոր ավանդները։ Կոմերիտմիությունը մեկ անգամ ևս ցույց տվեց, որ ինքը պատրաստ է կատարելու կուսակցության ամենաբարդ ու ամենապատասխանատու հանձնարարությունները։ Սոցիալիստական շինարարության ասպարեզում երիտասարդության ներդրած մեծ ավանդի, խամ ու խոպան հողերի յուրացման գործում ցուցաբերած անձնվեր աշխատանքի համար կոմերիտմիությունը պարգևատրվեց Լենինի երրորդ շքանշանով։

***

Սովետական Հայաստանի երիտասարդությունը ջերմորեն հավանություն է տալիս կոմունիստական կուսակցության տնտեսական քաղաքականությանը, որպես մարտական ծրագիր է ընդունում ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումի որոշումները և հանրապետության ողջ աշխատավորության հետ միասին պայքարում է դրանց իրականացման համար։

Կոմերիտմիության հոբելյանի նախօրյակին հանրապետության 100 ներկայացուցիչներ մեկնեցին աշխատելու Ռուսաստանյան Ֆեդերացիայի ոչ-սևահողային գոտում, Հայաստանի լենինյան կոմերիտմիությունը ստանձնեց հանրապետությունում մելիորացիոն կառույցների շինարարության շեֆությունը, Ջողազի և Ախուրյանի ջրամբարների շինարարությունները հայտարարվեցին կոմերիտական հարվածային կառույցներ։

Հանրապետությունում հաջողությամբ իրականացվում է տասներորդ հնգամյա պլանը, ինտենսիվորեն զարգանում են սոցիալիստական արդյունաբերության առաջատար ճյուղերը։ Արդյունաբերության մեջ այսօր աշխատում են 160 հազար ՀամԼԿԵՄ անդամներ։ 23 հազարից ավելի պատանիներ ու աղջիկներ են ներգրավված «Որակի ու արդյունավետության հնգամյակին երիտասարդության խանդավառությունն ու ստեղծագործությունը» շարժման ոլորտը։

ՀամԼԿԵՄ 60-ամյակի տոնակատարությունը քաղաքական և հասարակական ակտիվության նոր լիցք է հաղորդել հանրապետության երիտասարդությանը։ ՀԼԿԵՄ Կենտկոմն ստանում է բազմաթիվ հաղորդումներ ու հեռագրեր, երիտասարդական կոլեկտիվները, առանձին կոմերիտականներ զեկուցում են իրենց աշխատանքային հաջողությունների մասին։

Հանրապետության երիտասարդությունն ակտիվորեն մասնակցում է գյուղատնտեսության աշխատողների առջև դրված ամենահրատապ խնդիրների լուծմանը։ Հանրապետության համար կենսական նշանակություն ունեն հողա-

տարածությունների ռացիոնալ օգտագործումը, մշակելի նոր հողերի յուրացումը։ Վերջին մի քանի տարիների ընթացքում կոմերիտականների և երիտասարդների ուժերով օգտագործելի են դարձել 85 հազար հեկտար նախկինում անմշակ հողատարածություն։ Լայնորեն ծավալվել է «Անասնապահությանը կոմերիտական հոգատարություն» շարժումը։ Հնգամյակի անցած տարիների ընթացքում կոմերիտական ուղեգրերով մոտ 4.000 կոմերիտականներ ու երիտասարդներ գործուղվել են աշխատելու անասնապահական ֆերմաներում։

ՀամԼԿԵՄ XVIII համագումարում արտասանած ճառում ընկեր Լ. Ի. Բրեժնևը կոմերիտմիության առջև խնդիր դրեց ազնվաբար աշխատել առևտրի և սպասարկման ոլորտում։ Դա առօրեական, բայց ժողովրդին խիստ անհրաժեշտ աշխատանք է։ Այն պահանջում է բարձր պատասխանատվություն, բարեխղճություն։ Հազարավոր երիտասարդներ կոմերիտմիության ուղեգրերով աշխատում են առևտրի և սպասարկման ոլորտում։

***

Դեռևս առաջին համագումարում հանրապետության կոմերիտմիությունն իր գլխավոր խնդիրը հռչակեց կոմունիզմի գաղափարների տարածումը. և ահա արդեն վեց տասնամյակ է՝ հետևողականորեն ու անշեղ իրականացնում է այդ խնդիրը։ Դպրոցներում ու բուհերում, խմբակներում ու սեմինարներում, գիտական կոնֆերանսներում տասնյակ հազարավոր կոմերիտականներ ու երիտասարդներ տիրապետում են հավերժ կենդանի մարքս-լենինյան ուսմունքին։

Կուսակցությունը մեզ կոչ է անում պատրաստել բազմակողմանի զարգացած, գաղափարապես համոզված մարդկանց սերունդ, որի պայքարի գլխավոր նպատակը կոմունիզմի իդեալների հաղթանակն է։ Մեր ողջ երիտասարդությունը պետք է տիրապետի մեծ Լենինի ուսմունքին, կարողանա ապրել ու պայքարել լենինաբար։ Դրան է կոչված քաղաքական և տնտեսագիտական ուսուցման համակարգը, ուր այս ուստարում ընդգրկված են մոտ 100 հազար կոմերիտականներ և երիտասարդներ։

Կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ կոմերիտական կազմակերպությունները կոնկրետ միջոցներ են ձեռնարկում գաղափարական աշխատանքի հետագա կատարելագործման համար՝ օգտագործելով կոմունիստական դաստիարակության ձևերն ու մեթոդները։

Երիտասարդությանը բնորոշ է որոնման ու գիտելիքների տիրապետման ձգտումը։ Կոմերիտական յուրաքանչյուր կազմակերպության, յուրաքանչյուր աշխատողի պարտքն է հմտորեն, ժամանակին հագուրդ տալ երիտասարդության հետաքրքրասիրություններին։ Այդ գործի հիմնաքարը դրվում է դպրոցում։

Երիտասարդ սերնդի գաղափարական հայացքների ձևավորման, գեղագիտական ճաշակի արմատավորման հարցերը մշտապես գտնվում են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, հանրապետության կառավարության ուշադրության կենտրոնում։ Այդ մասին են վկայում նաև վերջին մի քանի տարում ընդունված այն որոշումներն ու միջոցառումները, որոնք անմիջականորեն առնչվում են երիտասարդների ու դեռահասների գեղագիտական դաստիարակության խնդիրների հետ։

Մեծ Հոկտեմբերի 60-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մեր ժամանակը ծնում է իր հերոսին»։ Եվ այդ հերոսները սովորական մարդիկ են, նրանց ճակատագիրը նման է հազարավորների ճակատագրին, իսկ փառք նրանք վաստակել են անձնուրաց աշխատանքով, գաղափարական համոզվածությամբ, բարոյական վեհ իդեալների շնորհիվ։ Մեր երիտասարդությունը հպարտանում է իր հիասքանչ երկրով, նրա հզորությամբ։ Կոմերիտմիության կյանքում արդեն ավանդական են դարձել համամիութենական արշավները սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային փառքի վայրերով։ Փառքի ու հերոսացման երթուղիներով այսօր քայլում են հանրապետության երիտասարդության շուրջ 100 հազար ներկայացուցիչներ։ Երիտասարդությունն զգում է հայրերի հերոսության վեհությունը և հասկանում, որ իր պարտքի ու պատվի խնդիրն է արժանավայել շարունա-



կել նրանց գործը։ Կոմունիզմի շինարարության գործին ակտիվորեն մասնակցելու համար 1968 թվականի հոկտեմբերին կոմերիտմիությունն արժանացավ Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանին։

Անցած 10 տարում, երկրի ողջ կոմերիտական բանակի հետ միասին, Հայաստանի կոմերիտմիությունը ևս ապացուցել է, որ իրոք արժանի է այդ բարձր պարգևին։ Ապացուցել է՝ աշխատելով հարվածային կառույցներում, յուրացնելով նոր հողատարածություններ, բացելով նոր հանքեր, ապացուցել է իր գաղափարական հասունությամբ ու բարոյական անաղարտությամբ։

Հանրապետության կոմերիտականներն ու երիտասարդները համակված են ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարներով։ Այդ արմատները սնվում են լենինյան ազգային քաղաքականության հորդ ակունքներից, դարերի պատմություն ունեն, անցել են ամենադաժան փորձությունների միջով։ Դրա մի նոր հավաստումն էր Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորվելու 150-ամյակի համաժողովրդական տոնակատարությունը։ Կառավարական բարձր պարգևը՝ Լենինի շքանշանը, ռուս մեծ ժողովրդի, ՍՍՀՄ մյուս ժողովուրդների հետ անսասան միասնության նոր առհավատչյան է։

Կոմերիտական սերունդը այդ բարեկամության ավանդների շարունակողն է. դրա վկայությունն են սոցիալիստական մրցությունը տարբեր քաղաքների կոմերիտական-երիտասարդական բրիգադների միջև, պատմական Կարմիր կամուրջի մոտ տեղի ունեցող եղբայրության ամենամյա փառատոները, որոնց մասնակցում են Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի կոմերիտմիության ներկայացուցիչները։

Ինտերնացիոնալիզմով է համակված Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միության վաթսունամյա ողջ պատմությունը։ Եվ մենք երդվում ենք կոմունիստների կուսակցությանը՝ միշտ բարձր պահել հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի դրոշը, անձնվեր աշխատանքով ապացուցել հավատարմությունը սերունդների գործին։

Վերջին տարիներին հանրապետության կոմերիտմիության Կենտրոնական կոմիտեն, կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմները, արհմիությունների, ստեղծագործական միությունների հետ համատեղ, լուրջ աշխատանք են տանում, որպեսզի բոլոր կուլտուր-լուսավորական հիմնարկությունների գործունեությունն առավել լրիվ համապատասխանի ժամանակակից երիտասարդ մարդու աճող պահանջներին։

Հանրապետությունում ֆիզիկական կուլտուրայի և սպորտի հետագա զարգացման նոր ազդակ էր Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Մինիստրների խորհրդի հայտնի որոշումը, որի իրականացումը դարձել է յուրաքանչյուր կոմերիտական կազմակերպության գործունեության գլխավոր խնդիրներից մեկը։ Մենք հպարտանում ենք անվանի մարզիկներով՝ կոմերիտմիության սաներով, որոնք միջազգային մրցասպարեզներում բարձր են պահում սովետական սպորտի պատիվը։ Մենք քաջ գիտակցում ենք, որ օլիմպիական մեկնարկները սկիզբ են առնում մասսայական սպորտից, «Հուսո մեկնարկներ» մրցումներից, «Փայլակ» և «Արծվիկ» ռազմասպորտային խաղերից։

***

Հեղափոխության մեծ առաջնորդը՝ Վ. Ի. Լենինը, կտակել է մեզ՝ համառորեն և հետևողականորեն տիրապետել գիտելիքներին։ Մեզնից յուրաքանչյուրը գիտակցում է, որ առանց լենինյան այդ պատգամի կատարման չիրականացված երազանք կմնային երկրի էլեկտրիֆիկացման ծրագիրը, ատոմային էներգիայի կառավարումը և տիեզերքի նվաճումը։ Համատարած գրագիտություն, բուհերի և տեխնիկումների 110 հազար ուսանողներ, պարտադիր միջնակարգ կրթություն։ Ահա Սովետական Հայաստանի երիտասարդության պատասխանը լենինյան պատգամին։ Գաղափարական համոզվածություն, կոլեկտիվիզմի և ընկերասիրության ձևավորում— այս խնդիրները եղել և մնում են հանրապետության կոմերիտական կազմակերպության ուշադրության կենտրոնում։ Առաջնորդվելով ՀամԼԿԵՄ Կենտկոմի ցուցումներով՝ Հայաստանի լենինյան կոմերիտմիու-

թյունը հետևողականորեն զարգացնում և ամրացնում է դպրոցի հետ կապի լավագույն ավանդույթները, լուծում դպրոցականների կրթության ու աշխատանքային դաստիարակության ամենաբարդ հարցերը։

Աշակերտական արտադրական բրիգադների շարժումը (որոնց այս տարի մասնակցել են 139 հազար դպրոցականներ) նպաստում է սովորողների աշխատանքային դաստիարակությանը։ Բայց կոմերիտմիության առանձնահատուկ հոգածության կարիքն ունի գյուղական դպրոցը։ Հետզհետե լայն թափ է ստանում «Կոմերիտմիությունը՝ գյուղական դպրոցին» շարժումը։

Տասնամյակներ ի վեր կոմերիտմիությունն ստանձնել է բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության շարքերը համալրելու շեֆությունը։ Ներկայումս ավելի քան 35 հազար պատանիներ ու աղջիկներ են սովորում պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարաններում՝ տիրապետելով 170 մասնագիտության։ Կոմերիտմիությունն օգնում է նրանց՝ դուրս գալու կյանքի ինքնուրույն ճանապարհ, որպես բանիմաց, ակտիվ կենսադիրքորոշում ունեցող մասնագետներ։

Մեր երիտասարդության առաջավոր ջոկատներից է ուսանողությունը։ Ապագա մանկավարժներն ու բժիշկները, ինժեներներն ու գյուղատնտեսները, արտադրության հրամանատարները, գիտության ու մշակույթի գործիչներն են նրանք։ Բուհերի կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է մշտապես զբաղվել ուսանողների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, մասնագիտական պատշաճ որակավորման, հասարակական գործունեության ակտիվացման հարցերով։ Հանրապետության բուհերի ավելի քան 37 հազար ուսանողներ մասնակցեցին հասարակական գիտությունների համամիութենական VII մրցույթին։ Բուհերի կոմերիտական կազմակերպությունների ուժերով ստեղծվել են ուսանողական կոնստրուկտորական բյուրոներ, ակտիվացել է ուսանողական գիտական ընկերությունների գործունեությունը։

Բուհական կոմերիտմիության հասարակական բարձր ակտիվության մարմնացումն են ուսանողական շինարարական ջոկատները։ Այս տարի հանրապետության բուհերի ու տեխնիկումների 12 հազար ուսանողներ աշխատել են տասներորդ հնգամյակի կարևորագույն կառույցներում՝ Տյումենում և Մարիական Ինքնավար Հանրապետությունում, Սախալինում և Նովգորոդում։ Ընդհանուր առմամբ նրանք կատարել են 39 միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանք։

***

Լենինյան կոմերիտմիության համար չկա ավելի բարձր պատիվ, չկա ավելի վեհ կոչում, քան լինել կուսակցության հուսալի օգնականն ու մարտական ռեզերվը։ Անցած վեց տասնամյակների ընթացքում ՀամԼԿԵՄ-ի մարտական ջոկատի՝ Հայաստանի կոմերիտմիության շարքերում կոփվել են մոտ 3 միլիոն երիտասարդներ։ Այսօր ՀամԼԿԵՄ-ը՝ սովետական երիտասարդության մարտական ավանգարդը, միավորում է 38 միլիոն պատանիների ու աղջիկների։ Հայաստանի լենինյան կոմերիտմիությունն անցած տասը տարիներին աճել է 207 հազարով և իր շարքերում համախմբում է 470 հազար երիտասարդների։

Կուսակցության ղեկավարությունը եղել և մնում է լենինյան կոմերիտմիության ուժի, ամրության ու մարտունակության գլխավոր աղբյուրը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմն ամենօրյա հոգատարություն է ցուցաբերում հանրապետության երիտասարդության, լենինյան կոմերիտմիության նկատմամբ, ղեկավարում է նրա աշխատանքը, կանխորոշում նրա գործունեության հեռանկարները։

Կոմերիտմիության դերի բարձրացումը պայմանավորում է նրա առավել լայն մասնակցությունը հանրապետության տնտեսական, մշակութային և պետական շինարարությանը։ Դրան մեծապես նպաստում են մի շարք մինիստրություններին ու գերատեսչություններին առընթեր երիտասարդության կոմունիստական դաստիարակությանն օժանդակող խորհուրդները։ Տարեցտարի ամրապնդվում է կուսակցական կորիզը կոմերիտմիությունում։ Կոմունիստական դաստիարակության գործում որոշակի ավանդ են ներդնում կոմերիտմիության



վետերանները, պատերազմի ու աշխատանքի հերոսները, գիտնականները, գրականության ու արվեստի գործիչները։

Կոմերիտական աշխատանքի ամենահրատապ հարցերն այս օրերին քննարկվում են սկզբնական կոմերիտական կազմակերպություններում անցկացվող հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում։ Արվում են տասնյակ առաջարկություններ, որոնք անմիջականորեն վերաբերում են կոմերիտական աշխատանքի արդյունավետության բարձրացմանը, կոմերիտմիության շարքերի կազմակերպական-քաղաքական ամրապնդմանը։

Կենսագործելով ՀամԼԿԵՄ XVIII և ՀԼԿԵՄ XXVIII համագումարների որոշումները՝ կոմերիտմիության կոմիտեները, սկզբնական կազմակերպությունները որոնում են աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ, որոնք նպաստում են յուրաքանչյուր կոմերիտականի դերի բարձրացմանը։ Կոմերիտմիության հեղինակության հետագա բարձրացումը, նրա մարտունակությունը մեծապես պայմանավորված են այն բանով, թե ինչպես է նա կարողանում օգնել երիտասարդությանը՝ իրագործելու իր կենսական ծրագրերը, համատեղելու հասարակական շահերն ու անձնական հետաքրքրությունները։ Յուրաքանչյուր կոմերիտական պատասխանատու է կոմերիտմիության համար այնպես, ինչպես կոմերիտմիությունը՝ յուրաքանչյուր կոմերիտականի համար։

ՀամԼԿԵՄ 60-ամյակի նախաշեմին մեր երկրի բոլոր կոմերիտական կազմակերպություններում անցկացվեցին համամիութենական կոմերիտական ժողովներ. դրանք դարձան նոր հասունների ստուգատեսը, մեր հաշվետվությունը կուսակցության առջև։ Համամիութենական կոմերիտական ժողովը վերստին ցույց տվեց, որ հանրապետության երիտասարդ բանվորներն ու գյուղի աշխատավորները, ինժեներներն ու գիտնականները, ուսանողներն ու աշակերտները հավատարիմ են լենինյան անմահ պատգամներին։

Ահա արդեն վեց տասնամյակ է՝ լենինյան կոմերիտմիությունն ապրում, գործում և պայքարում է կոմունիստների մեծ կուսակցության ղեկավարությամբ։ Ծանր փորձությունների տարիներին, խաղաղ ստեղծագործ աշխատանքում կոմերիտմիությունը մշտապես հետևել է կոմունիստական կուսակցությանը, եղել նրա հուսալի օգնականը։

Կոմերիտմիության 60-ամյա հոբելյանի փառապանծ տարելիցին ՀամԼԿԵՄ-ի մարտական ջոկատներից մեկը՝ Սովետական Հայաստանի կոմերիտմիությունը, երդվում է հավատարիմ լինել կուսակցությանը, մեր սոցիալիստական հայրենիքին, կոմունիզմի կառուցման վեհ գործին։

---

Հոդվածներ

# ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԱՊԱՐԱՏԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՄԱՍԻՆ

Գ. Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԱՊԱՐԱՏԻ կատարելագործման և էժանացման խնդիրները միշտ եղել են կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ուշադրության կենտրոնում։ Կառավարման կատարելագործման պրոբլեմը ներառում է այնպիսի հարցեր, ինչպիսիք են կուսակցության կադրային քաղաքականությունը, աշխատանքի գիտական կազմակերպումը, ապարատի պահպանման միջոցների ռացիոնալ և խնայողաբար օգտագործումը և այլն։

Հանրահայտ է, որ լավ կառավարման համար անհրաժեշտ են ամենից առաջ լավ կառավարողներ։ Արդի ժամանակաշրջանում կարևոր նշանակություն է տրվում պետական ապարատի անձնակազմի, հատկապես ղեկավար աշխատողների պատրաստմանը, նրանց գործունեության առանձնահատկությունների, կարողությունների ու հմտությունների, ինչպես նաև մարդկանց վրա հոգեբանորեն ներգործելու միջոցների ու եղանակների որոշման խնդրին։

Պետական ծառայողներից պահանջվում է մի շարք յուրահատուկ ֆունկցիաների կատարում, որոնք սևեռված են պետական պաշտոնական կանոնագրքերում, որտեղ շեշտվում է ղեկավարի անձնավորության դերը, նրա հանրակրթական որակավորվածության, սուբյեկտիվ և հասարակական հատկությունների որպիսությունը։ «Ժամանակակից ղեկավարը,— ինչպես նշեց կուսակցության XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ,— պետք է իր մեջ կուսակցականությունն օրգանապես զուգորդի խոր բանիմացության հետ, կարգապահությունը՝ նախաձեռնության հետ և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, 1976, էջ 105)։ Գիտատեխնիկական հեղափոխության ծավալումն ավելի կենսական է դարձնում կադրերի ընտրության և տեղաբաշխման հարցը։ Կադրային քաղաքականության հիմունքները խորը և բազմակողմանիորեն մշակել է Լենինը։ Նա նշել է, որ կադրային աշխատանքում գլխավորը աշխատողների ընտրությունն ու տեղաբաշխումն է «...ա) բարեխղճության, բ) քաղաքական դիրքորոշման, գ) գործիմացության, դ) կառավարչական ունակությունների առումով...» (В. И. Ленин, Полн. собр. соч., т. 53, стр. 97.)։

Կադրերի ընտրությունը նախատեսում է գիտականորեն ու հիմնավորված բացահայտել զբաղեցվող պաշտոնի թեկնածուի քաղաքական, գործնական և անձնական հատկությունները։ Այս կապակցությամբ ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշեց, որ կադրային քաղաքականությունը իսկական գիտական և փութաջան աշխատանք է, այն փորձաքարն է, որի միջոցով ստուգվում է ղեկավար կազմի հասունությունն ու սկզբունքայնությունը, աշխատունակությունն ու մարտունակությունը։ Կառավարող ընկերոջը վերաբերող լենինյան պահանջները պետք է դրսևորվեն սերտ միասնության և զուգորդման մեջ։ Այսպես, կառավարման և կազմակերպման գիտելիք-



ներով զինված ամենաորակյալ մասնագետին չի կարելի համարել իբրև կառավարչական աշխատանքի թեկնածու, եթե նա չունի համապատասխան քաղաքական համոզվածություն և հասունություն, այնպիսի հատկություն, ինչպիսին անհաշտվողականությունն է մեր զարգացումը դանդաղեցնող յուրաքանչյուր ոտնձգության դեմ։

Կառավարչական կադրերը բարձր քաղաքական գիտակցությունը պետք է զուգակցեն լավ պատրաստվածության հետ, ունակ լինեն գործիմացորեն լուծել էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման հարցերը։ Վ. Ի. Լենինը բազմիցս շեշտել է, որ «անկարելի է ճշգրիտ սահմանագծել, թե ո՛ր հարցն է քաղաքական և ո՛րը կազմակերպական։ Ամեն մի քաղաքական հարց կարող է կազմակերպական լինել, և ընդհակառակը» (Երկեր, հ. 33, էջ 373)։ Պետական կառավարման ապարատում աշխատելու, ղեկավարի պարտականություններ կատարելու համար անհրաժեշտ են նաև որոշակի հանրակրթական մակարդակ, մասնագիտություն և կառավարման գիտության հիմունքների իմացություն։ Ծառայողի արժանիքներից մեկն էլ նրա բանիմացությունն է ժամանակակից կառավարման հարցերում։ Բանիմացությունն ապահովվում է ամենից առաջ ժամանակակից կառավարման ու կազմակերպման մեթոդների իմացությամբ։ Լենինը նշում էր, որ անհնար է կառավարել առանց իրազեկության, առանց կառավարման գիտության իմացության։

Բանիմացության պահանջը հատկապես կարևոր է ներկայումս, երբ տեղի է ունենում գիտատեխնիկական հեղափոխության մեծ առաջընթաց, արագ տեմպերով են իրականացվում արտադրության հետագա ինտենսիվացումը, մասնագիտացումը և համակենտրոնացումը։ Բանիմացության սկզբունքի խախտումը ստեղծում է այնպիսի բացասական երևույթներ, ինչպիսիք են՝ սուբյեկտիվիզմը և վոլյունտարիզմը։

Ղեկավար աշխատողը պետք է իմանա իր գործը, կառավարվող օբյեկտի առանձնահատկությունները, ճյուղերի սպեցիֆիկան, լավատեղյակ լինի իրեն ենթակա ստորաբաժանումների գործերին։

Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության կողմից վերջին տարիներին ընդունվել են մի շարք որոշումներ, որտեղ շեշտվում են ղեկավար աշխատողների իրազեկության բարձրացման հարցերը։ Կառավարման մարմինների աշխատողները պետք է լավ իմանան էկոնոմիկան, հատկապես կառավարչական գործունեության հետ կապված տնտեսագիտական պրոբլեմները։ Բանիմացությունը նախատեսում է նաև իրավական գիտելիքների տիրապետում, որովհետև կառավարչական գործունեությունն իրականացվում է առավելապես իրավական ձևերով, իրավական միջոցների օգնությամբ։ Իրավական նորմերը կարգավորում են կառավարման որոշակի ֆունկցիաներ, առանձին պրոցեսներ, ամրապնդում են կազմակերպչական-ինֆորմացիոն սիստեմը, պաշտոնատար անձանց իրավունքներն ու պարտականությունները։ Կառավարման կադրերի իրավաբանական պատրաստության կարևորությունը շեշտված է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Ժողովրդական տնտեսության մեջ իրավական աշխատանքի բարելավման մասին» որոշման մեջ։

Իրազեկության մյուս կողմը կապված է այն բանի հետ, որ ղեկավարը պետք է կարողանա օգտագործել և ընդհանրացնել մասնագետների խորհուրդները, մտածել ստեղծագործաբար, վերլուծել կառավարման կոնկրետ իրադրությունը, կենտրոնանալ գլխավոր, առավել էական հարցերի վրա։ Ղեկավարի բանիմացության չափանիշը նրա անձնական, կազմակերպչական ունակություններն են։ Կառավարումը դա և՛ գիտություն է, և՛ արվեստ, երկուսի սերտ միասնություն։ Գիտություն է, քանի որ վարչական գործունեությունն ունի իրեն հատուկ կանոնները։ Արվեստ է այնքանով, որ որոշման նախապատրաստման և ընդունման ու հատկապես կազմակերպչական գործունեության ոլորտում, շատ բան պայմանավորված է ղեկավարի տաղանդով, ունակությամբ, ձեռներեցությամբ։ Խիստ անհրաժեշտ է, որպեսզի ղեկավարն իրեն զգա իր տեղում։ Դա կարևոր հանգամանք է նրա և կոլեկտիվի միջև անհրաժեշտ կոնտակտ, առողջ բարոյահոգեբանական և ստեղծագործական մթնոլորտ ստեղծելու հա-

մար, որը բարենպաստ է ազդում տնտեսական և հասարակական-քաղաքական գործունեության ողջ ընթացքի վրա։

Կառավարչական մարմնի աշխատողը պետք է ուսումնասիրի կառավարման տեսությունը, որոշումներ ընդունելու մեթոդները, տիրապետի տնտեսամաթեմատիկական պլանավորման հիմունքներին, իմանա հաշվողական տեխնիկայի օգտագործման հնարավորությունները, կառավարման սոցիալ-հոգեբանական հարցերը և այլն։ Մանավանդ ժամանակակից կառավարման ամեն մի օբյեկտ ո՛չ միայն ինժեներատեխնիկական, այլև տնտեսական և սոցիալական բարդ օրգանիզմ է, որի նորմալ գործունեության համար ղեկավարը պետք է կարողանա համոզել մարդկանց, պարտավոր է հաշվի առնել կոլեկտիվի շահերը, այն զուգակցելով պետության ընդհանուր շահերի հետ։

Ղեկավարը կոչված է տեսությունը զուգակցել պրակտիկային, աշխատել ստեղծագործաբար, հաջողությամբ լուծել ընթացիկ խնդիրները, չմոռանալով հեռանկարները։ Իհարկե, չի կարելի ժխտել ղեկավարի ընդունակություններն ու փորձը, սակայն ճիշտ չի լինի հենվել միայն դրանց վրա։ Կառավարման սկզբունքներն անհրաժեշտ է սովորել։ Ուսումը կրճատում է ադմինիստրատոր դառնալու երկար ճանապարհը, ժամանակի համեմատաբար կարճ հատվածում օգնում է ստանալու այնպիսի գիտելիքներ, որոնց ձեռք բերման համար պահանջվում են «կյանքի համալսարանի» բազմաթիվ տարիներ։ Ղեկավարի անձնական կազմակերպչական չափանիշներն ընդգրկում են այնպիսի հատկանիշներ, ինչպիսիք են՝ նախաձեռնությունը, աշխատունակությունը, մարդկանց ճիշտ տեղաբաշխելու կարողությունը, ինքնուրույնությունը, կայունությունը, ինքնատիրապետումը, հումանիզմը, համբերությունը, բարյացակամությունը և այլն։

Ղեկավարից պահանջվում է, որ տվյալ կոլեկտիվի աշխատանքը համակվի ընկերականության ոգով, ընթանա վստահության, պահանջկոտության և ինքնակարգապահության մթնոլորտում։ Կառավարչական աշխատողի ոչ ճիշտ գործողությունները (անզգայուն, անարդարացի լինելը, մարդկանց տեղաբաշխել չկարողանալը և այլն) համարվում են կոլեկտիվներում առաջացած կոնֆլիկտների պատճառներից մեկը։ Այս տեսակետից աշխատողների հոգեկան վիճակը շատ բանով պայմանավորված է ղեկավարի վարքով, գործունեությամբ։ Ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում «ոչ մի բան այնպես չի սառեցնում մարդկանց, ինչպես առանձին աշխատողների չմտածված որոշումները, բյուրոկրատիզմի փաստերը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *1971 թ., էջ 87*)։

Կառավարման ապարատի աշխատանքի արդյունավետության վրա բացասաբար է ազդում այն պրակտիկան, երբ ղեկավար աշխատողների զանցանքները, սկզբունքային սխալները միշտ չէ, որ մատնանշվում են։ Անհրաժեշտ է մշտապես գործնական գնահատական տալ կադրերի գործունեությանը, բարձրացնել պահանջկոտությունն աշխատանքում և վարքագծում, ժամանակին բացահայտել եղած սխալներն ու վրիպումները։

Կուսակցության կադրային քաղաքականությունը նախատեսում է նաև ստեղծել և միշտ ունենալ լավ պատրաստված, բազմակողմանի ստուգված և գործնական աշխատանքում աճած կադրերի ակտիվ ռեզերվ։ Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս «...զգուշությամբ և համբերությամբ փորձել և ճանաչել իսկական կազմակերպիչներին, զդաստ խելք և գործնական ըմբռնողություն ունեցող մարդկանց, այնպիսի մարդկանց, որոնք սոցիալիզմին նվիրված լինելը միացնում են սովետական կազմակերպության շրջանակներում մեծ թվով մարդկանց անրակուռ և համերաշխ, համատեղ աշխատանքն առանց աղմուկի (և հակառակ իրարանցման ու աղմուկի) կարգավորելու հետ։ Միայն այդպիսի մարդկանց, տասնյակ փորձելուց հետո, պետք է, նրանց՝ ամենահասարակ խնդիրներից դեպի դժվարագույնները շարժելով, առաջ քաշել... կառավարման... պատասխանատու պոստերը» (Երկեր, 4-րդ հրատ., հ. 27, էջ 314—315)։

Կադրային քաղաքականությունը գիտականորեն հիմնավորված աշխատանք է։ Ուսումնասիրել աշխատողին միայն նրա գործունեության արդյունքներով՝ անտեսելով նրա քաղաքական և բարոյական հատկությունները, նշանակում է հանդես բերել ձևական մոտեցում։ Աշխատանքի արդյունքները դեռևս պատկերացում չեն տալիս այն մոտիվների մասին, որոնցով ղեկավարվել է այս կամ այն ադմինիստրատորը։ Երբեմն ելնելով շահադիտական նկատառումներից, առանձին ղեկավար աշխատողներ դիմում են ամեն միջոցի՝ հասնելու հաջողության։ Հետևաբար, անհրաժեշտ է կադրերի ընտրության ու տեղաբաշխման ժամանակ հաշվի առնել ո՛չ միայն նրանց մասնագիտական ու կազմակերպչական ունակությունները, այլև բարոյահոգեբանական առանձնահատկությունները։

Կադրային քաղաքականությունը նախատեսում է կառավարչական ապարատի աշխատողների դաստիարակություն և վերապատրաստում։ Կադրերի բարձր որակավորումը, նրանց զինվածությունը կառավարման գիտական մեթոդներով և միջոցներով կարևորագույն գործոն են կառավարման արդյունավետությունը բարձրացնելու համար։

Կառավարման կադրերի, առանձնապես ղեկավար աշխատողների առջև կարևոր խնդիրներ են դրված կոլեկտիվի անդամների գաղափարաքաղաքական դաստիարակության բնագավառում։ Այդ մասին հատկապես շեշտվեց ՍՄԿԿ XXIV, XXV համագումարներում, Կենտկոմի վերջին տարիների պլենումներում։ Ղեկավարը ո՛չ միայն ադմինիստրատոր է, այլև փորձված դաստիարակ, մանկավարժ, ավագ ընկեր։ Ղեկավար կադրերի գործունեության մեջ կարևոր տեղ է գրավում աշխատավորական կոլեկտիվների դաստիարակումը։

Կուսակցությունը պահանջում է, որպեսզի ղեկավար աշխատողները մըշտապես մտածեն իրենց ընդունած որոշումների դաստիարակչական հետևանքների մասին։ Հարկավոր է մշտապես հոգ տանել կառավարչական աշխատողների գաղափարաքաղաքական գիտելիքների բարձրացման մասին։ Նրանցից յուրաքանչյուրը պետք է տիրապետի մարքս-լենինյան ուսմունքին, քաջատեղյակ լինի կուսակցության քաղաքական կուրսին։

Պետական ապարատի կատարելագործման կարևոր գործոններից է կառավարչական աշխատանքի գիտական կազմակերպումը։ Ինչպես ցույց են տալիս գիտնականների հաշվարկները՝ ինֆորմացիայի, կառավարչական աշխատանքի ծավալն ավելանում է մի քանի անգամ ավելի արագ, քան արտադրության ծավալը։ Կառավարչական աշխատանքի գիտական կազմակերպման պրոբլեմը նախատեսում է մի շարք հարցերի կոմպլեքս լուծում։ Դա առաջին հերթին պահանջում է խնդիրների և ֆունկցիաների հստակ սահմանազատում, իրավունքների և պարտականությունների ռացիոնալ բաշխում կառավարման սիստեմի բոլոր օղակների, ստորաբաժանումների և ծառայողների միջև*։

Անհրաժեշտ է վերլուծել ֆունկցիաների բաժանումը ժողտնտեսության կառավարման առանձին ճյուղերի միջև։ Սոցիոլոգիական ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կառավարման որոշ օղակներ երբեմն կատարում են իրենց պրոֆիլին չհամապատասխանող ֆունկցիաներ կամ կրկնում են մեկը մյուսին**։ Դա հետևանք է այն բանի, որ կառավարման մարմինների, ինչպես նաև կառուցվածքային բաժանումների կանոնադրությունները, դրանց իրավական վիճակի մասին մյուս ակտերն ընդհանուր են, զուրկ են կոնկրետությունից։ Միաժամանակ, պաշտոնական հրահանգների բացակայության պատճառով շատ ղեկավարներ չեն օգտվում իրենց ընձեռած իրավունքներից և պարտականություններից։ Կառավարման մարմնի ֆունկցիայի ճիշտ սահմանումը պայմանավորում է կառավարման բովանդակությունը, ուղղությունը։

«Կազմակերպական հարցերի էությունը,— ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— պարզ ասած, այն է, որ ամեն ոք, դրա համար ունենալով անհրաժեշտ իրավունքներ և դրա սահմաններում կրելով ամբողջ

* Տե՛ս Правовые проблемы руководства и управления отраслей промышленности в СССР. М., 1973, стр. 451, В. И. Глушков, Г. М. Добров, В. И. Терещенко. Беседы об управлении. М., 1974, стр. 163:

** Տես նույն տեղը, էջ 163։

պատասխանատվությունը, զբաղվի իր գործով։ Այս տարրական առօրեական կանոնը միևնույն ժամանակ կառավարման գիտության և պրակտիկայի հիմքերի հիմքն է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, 1976, էջ 91)։ Ահա թե ինչու այսքան կարևոր նշանակություն է ձեռք բերում իրավունքների և պատասխանատվության, իշխանության և վերահսկողության ռացիոնալ բաշխումը կառավարման բոլոր մակարդակներում։ Մեծ իրավունքներով և փոքր պատասխանատվությամբ օժտված ադմինիստրատորի աշխատանքում հնարավոր են վարչական կամայականության, սուբյեկտիվիզմի երևույթներ։ Իսկ մեծ պատասխանատվությունը փոքր իրավունքների դեպքում հանգեցնում է կառավարման մարմնի ոչ լիարժեք աշխատանքի։ Նման դեպքում ամենաեռանդուն աշխատողն անգամ դառնում է պասսիվ, դժվարանում է կատարել հանձնարարված գործը։

Աշխատանքի գիտական կազմակերպման խնդիրներից է նաև կառավարման ապարատի աշխատողների ընդունակությունների, կարողությունների առավել օգտագործումը։ Տվյալ խնդիրը լուծվում է կառավարչական աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելով, ծառայողների աշխատանքի ռացիոնալ կազմակերպումով, ինֆորմացիայի վերամշակման բնագավառում նրանց հնարավորությունների ընդլայնումով։ Աշխատանքի ռացիոնալ կազմակերպման համար անհրաժեշտ է ունենալ ծառայողների աշխատանքի գիտականորեն սահմանված նորմատիվներ, նրանց աշխատանքի որակի, ապարատի առանձին օղակների աշխատանքի արդյունավետության որոշ մեթոդներ։ Այս տեսակետից ծառայողի աշխատանքի գնահատման չափանիշ են ժամանակը, որակը, քանակը, տնտեսական կամ տեխնիկական օգուտը, ֆունկցիայի իրացման լրիվությունը, սպասարկվող բնակչության կամ կազմակերպությունների բավարարվածությունը և այլն։

Վ. Ի. Լենինը շատ բարձր էր գնահատում ժամանակի գործոնը և պահանջում էր խնայել ժամանակը մեծ և փոքր գործերում, հատկապես աշխատանքում։ «...Ժամանակ շահել-,— ասում էր Լենինը,— նշանակում է ամեն ինչ շահել...» (Երկեր, հ. 32, էջ 636)։ Միաժամանակ անհրաժեշտ է, որ յուրաքանչյուրն աշխատի ստեղծագործաբար, լիովին բացահայտելով իր ունակությունները։ Այստեղ էական դեր են խաղում խրախուսանքի նյութական և բարոյական միջոցները, հավասար աշխատանքի համար հավասար վարձատրության սկզբունքի ճիշտ կիրառումը։ Նման գործոնների, ինչպես և կառավարման օբյեկտի բնույթի և կառուցվածքի, աշխատողների թվի, մեքենայացման-ավտոմատացման մակարդակի, տեխնոլոգիական բարդ պրոցեսների հաշվառումը հնարավորություն կընձեռի սահմանելու կառավարչական անձնակազմի օպտիմալ քանակը տվյալ օղակում։

Խիստ հրատապ է թույլ չտալ կառավարման ոլորտի աշխատողների թվի չարդարացված ավելացում։ Դրան հասնելու կարևոր միջոցներն են կառավարման ներքին կառուցվածքի կատարելագործումը, ավելորդ օղակների և հաստիքների կրճատումը։ Այս կապակցությամբ կուսակցությունը խնդիր է դրել կատարելագործել ու էժանացնել վարչակառավարչական ապարատի հետագա գործունեությունը, վճռականորեն կրճատել ավելորդ օղակները, խնայողության խստագույն ռեժիմ կիրառել կառավարման ծախսերում։

Կառավարման կազմակերպչական կառուցվածքի կատարելագործման նպատակով կարևոր նշանակություն ունեցավ արտադրական և գիտաարտադրական խոշոր միավորումների ստեղծումը։ Այդ է հաստատում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1973 թ. «Արդյունաբերության կառավարման հետագա կատարելագործման մի քանի միջոցառումների մասին» որոշումը։

Միավորումների ստեղծման շնորհիվ հնարավորություն ստեղծվեց անցնելու արդյունաբերության կառավարման երկօղակ և եռօղակ սիստեմի, որը նախատեսված է կառավարման գլխավոր սխեմաներում։ Գլխավոր սխեմաների իրականացումը տալիս է տնտեսական մեծ օգուտ։ Այսպես, կառավարման կառուցվածքի բարելավմամբ միայն ավտոմոբիլային արդյունաբերության մեջ տնտեսվեց մի քանի տասնյակ միլիոն ռուբլի։ Անցումը երկօղակ և եռօղակ



կառավարման կառուցվածքի անտառային արդյունաբերությունում հնարավորություն ընձեռեց կառավարչական ծախսերը կրճատելու ավելի քան 12 միլիոն ռուբլով։

Տնտեսական ղեկավարման երկօղակ և եռօղակ սիստեմին անցնելով՝ հնարավոր եղավ զգալի ամրապնդել այնպիսի կարևոր օղակ, ինչպիսին արտադրական միավորումն է։ Եթե 1970 թվականին երկրում հաշվվում էին շուրջ վեց հարյուր միավորումներ, որոնց բաժին էր ընկնում ամբողջ արտադրանքի միայն 7 տոկոսը, ապա 1977 թ. սկզբին հաշվվում էին ավելի քան երեք հազար նման կոմպլեքսներ, որոնց ներդրումը ժողտնտեսության մեջ կազմում էր իրացվող արդյունաբերական արտադրանքի 40 տոկոսը։

Ինչպես նշվեց, պետական ապարատի կատարելագործման և կառավարչական ծախսերի կրճատման, նրա պարզեցման կարևոր գործոն է տիպային կառուցվածքների և հաստիքային նորմատիվների կիրառումը, որը հնարավոր է դարձնում վերացնել ավելորդ օղակներն ու հաստիքները, կանխում է կառավարչական անձնակազմի տեսակարար կշռի աճը աշխատողների ընդհանուր թվում։ Տիպային կառուցվածքները և կառավարման ապարատի աշխատողների թվի նորմատիվները պետք է արտացոլեն առաջավոր կազմակերպությունների և ձեռնարկությունների փորձը։

Վարչակառավարչական ծախսերի կրճատման գծով կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1969 թ. հոկտեմբերի 13-ի «Կառավարման ապարատի կատարելագործման և էժանացման միջոցառումների մասին» որոշումը, որը պարտավորեցրեց մինիստրություններին և գերատեսչություններին՝ սահմանելու ստորադաս կազմակերպությունների կառավարման ապարատի պահպանման առավելագույն հատկացումների չափը, ինչպես նաև կառավարչական ծախսերի կրճատման ամենամյա պլան։

Այս եղանակով անցած հնգամյակում խնայվեց կառավարչական ծախսը ամբողջ երկրի մասշտաբով 4,4, միլիարդ ռուբլով, իսկ տասներորդ հնգամյակի անցած երկու տարում՝ 2,1 միլիարդ ռուբլով։ Իններորդ հնգամյակի տարիներին կառավարման ծախսերի կրճատումից Հայկական ՍՍՀ բյուջե է մուծվել 26,8 միլիոն ռուբլի։

Վարչակառավարչական ծախսերի կրճատման գործում կարևոր նշանակություն ունեն նաև ֆինանսական մարմինների կողմից կառավարման ապարատի կառուցվածքի և հաստիքների ուսումնասիրությունը և ավելորդ օղակների վերացման նպատակով համապատասխան առաջարկությունների ընդունումը։ Այստեղ առանձնահատուկ ուշադրություն է հատկացվում փաստացի հաստիքները սահմանված ցուցակին, աշխատողների կատարած ֆունկցիաներն ըստ զբաղեցրած պաշտոնների համապատասխանությանը։ Բացի դրանից ստուգվում է ՍՍՀՄ կառավարության հաստատած պաշտոնային դրույքների սխեմաների կիրառման ճշտության, աշխատանքի վարձատրման սահմանված խմբերի համապատասխանությունը վերադաս մարմինների հաստատած ցուցանիշներին և այլն։ Այսպես, 1974—1976 թթ. ֆինանսական մարմինների առաջարկությամբ հանրապետությունում լուծարքվել են 39 կազմակերպություն և 1.082 հաստիք։ Պետական ապարատի էժանացումը նախատեսում է նաև ծառայողների գործուղման ծախսերի կրճատում։ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1973 թ. մարտի 1-ի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի 1973 թ. ապրիլի 2-ի որոշումների համաձայն հանձնարարված է մինիստրություններին և գերատեսչություններին՝ սահմանելու իրենց ենթակա կազմակերպությունների, ձեռնարկությունների և հիմնարկությունների կառավարման ապարատի աշխատողների գործուղման ծախսերի չափը յուրաքանչյուր տարում։ Նախատեսված է, որ կազմակերպությունների ղեկավարները կրում են անհատական պատասխանատվություն այդ նպատակին հատկացված միջոցների ծախսման համար։

Պետական ապարատի պարզեցման և կառավարչական ծախսերի կրճատման համար անհրաժեշտ է բարձրացնել ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարների իրավական կարգապահական պատասխանատվությունը։

---

# ԱՌԱՎԵԼ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՊԱՀԱՆՋՆԵՐԻՆ

Վ. Վ. ՈՍԿԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի
ավագ ռեֆերենտ

*ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ մասսաների հետ կուսակցության կապի կարևոր ձևերից մեկը համարեց աշխատավորների նամակները, որոնք արտացոլում են նրանց աճող հասարակական ակտիվությունը։ Համագումարի պահանջների լույսի ներքո աշխատավորների նամակների բնագավառում տարվող աշխատանքի հետագա կատարելագործման մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թ. որոշմամբ կուսակցական ու սովետական մարմինների առջև խնդիր է դրվում՝ արմատապես բարելավել այդ գործը, հետևողականորեն կիրառել սովետական քաղաքացիներին ունկնդրելու և առաջարկություններին ընթացք տալու լենինյան սկզբունքները, ժամանակին ու կանոնավոր կերպով քննարկել նրանց գրավոր և բանավոր դիմումներն ու բողոքները։ Այդ որոշմամբ միաժամանակ պահանջվում է տուժարկել այն պաշտոնատար անձանց, ովքեր խախտում են աշխատավորների նամակներին ընթացք տալու սահմանված կարգը, ձևական, բյուրոկրատական մոտեցում են ցուցաբերում դրանց քննարկման նկատմամբ։*

*Կուսակցությունը գտնում է, որ սոցիալիստական դեմոկրատիայի հետևողական զարգացման, մասսաների հետ կուսակցության կապի ամրապնդման պայմաններում ավելի մեծ նշանակություն են ստանում աշխատավորների նամակների բնագավառում տարվող աշխատանքի հետագա բարելավումը, դրա ձևերի ու մեթոդների կատարելագործումը։*

*Աշխատավորների նամակներին և դիմում-բողոքներին ընթացք տալու գործը բավականին բարդ է։ Այն պահանջում է բացառիկ հոգատարություն և ուշադրություն մարդու նկատմամբ։ Չէ՞ որ ամեն մի դիմումի ետևում կոնկրետ մարդն է՝ իր հոգսերով ու առաջարկներով։ Հարկ է նշել, որ մեր հանրապետությունում վերջին տարիներին, մանավորապես ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումից հետո, աշխատավորներին հուզող հարցերի լուծման, նրանց դիմում-գանգատներին ու առաջարկություններին արձագանքելու, ժամանակին ընթացք տալու առումով բավականաչափ գործ է արվել։ Մինիստրությունները, գերատեսչությունները, ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետների գործկոմներն ավելի հետևողականորեն են կենսագործում «Քաղաքացիների առաջարկությունները, դիմումները և գանգատները քննարկելու կարգի մասին» ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության 1968 թ. ապրիլի 12-ի հրամանագիրը։*

*Նրանք էականորեն բարելավել են դիմում-գանգատների հաշվառման ու ընթացք տալու գործը, կոլեգիաների ու գործկոմների նիստերում պարբերաբար քննարկում են դրանց ծնող պատճառները, միջոցառումներ մշակում առաջ քաշած հարցերը օրենքի սահմաններում լուծելու համար։ Այս առումով ուսանելի է ժողովրդական դեպուտատների Նաիրիի շրջսովետի գործկոմի ծավալած գործունեությունը։ Նա լուրջ հետևություն է արել ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության հիշյալ հրամանագրից ու այդ առթիվ ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից։ Գործադիր կոմիտեն ավելի հստակորեն է կազմակերպում աշխատավորների ընդունելության, նրանց դիմում-գանգատներին ընթացք տալու գործը, այդ առնչությամբ անհրաժեշտ հսկողություն սահմանում ինչպես գործկոմի բաժինների, այնպես և գյուղական ու ավանային սովետների և շրջանի ձեռնարկությունների գործունեության նկատմամբ։ Գործադիր կոմիտեն պարբերաբար քննարկում է աշխատավորների նամակներում արծարծված հարցերը՝ հատուկ ուշադրություն նվիրելով բնակչության բնակարանային, կոմունալ-կենցաղային պայմանների, առևտրի, կենցաղային և բժշկական սպասարկման բարելավմանը։ Այստեղ հանգամանորեն ուսումնասիրվում և պարզվում են գանգատների պատճառները, ժամանակին սպառիչ պատասխաններ տրվում քաղաքացիներին։ Ուսումնասիրվում և գործադիր կոմիտեի նիստերում քննարկվում են շրջանի տարբեր հիմնարկ-ձեռնարկություններում ու կազմակերպություններում աշխատավորների ընդունելության կազմակերպման ու դիմումներին ընթացք տալու վիճակը. բացահայտվում ու կանխվում տեղ գտած թերությունները։ Այսպես, 1977 թ. ուսումնասիրվել ու գործկոմի նիստերում քննարկվել է աշխատավորների ընդունելության կազմակերպման և նամակներին ընթացք տալու ասպարեզում Պռոշյանի ավանային սովետի տերիտորիայում գործող հիմնարկ-ձեռնարկությունների, շրջանային բուժմիավորման, շրջսժողկրթբաժնի, ավտոնորոգման գործարանի, ճանշինտեղամասի, շրջանային էլեկտրացանցային գրասենյակի, էներգասպառման և ջրային տնտեսության շրջանային տեղամասերի ղեկավարության ծավալած աշխատանքը։*

*Յուրաքանչյուր եռամսյակ ամփոփվում են շրջսովետի գործկոմում ստացված դիմում-գանգատները և քննարկվում գործադիր կոմիտեի նիստում, ինչպես նաև՝ շրջսովետի գործկոմի բաժինների վարիչների, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների խորհրդակցություններում։ Գործադիր կոմիտեի 1978 թ. հունվարի 13-ի նիստում քննարկվել է «Ժողովրդական դեպուտատների Նաիրիի շրջսովետի գործկոմում 1977 թ. ստացված աշխատավորների դիմում-գանգատների ուսումնասիրման և ընթացք տալու արդյունքների մասին» հարցը և ընդունվել այդ գործին օգնող որոշում։ Անցկացվել է սեմինար-խորհրդակցություն, որտեղ համապատասխան հրահանգներ են տրվել նրա մասնակիցներին աշխատավորների ընդունելության կազմակերպման ու դիմումներին ընթացք տալու կարգի վերաբերյալ։*

*Շրջանի գյուղական ու ավանային սովետների գործկոմներում ևս պարբերաբար ուսումնասիրվում և քննարկվում է տվյալ սովետի տերիտորիայում գործող հիմնարկ-ձեռնարկություններում աշխատավորների դիմումներին ընթացք տալու վիճակը։ Դիմումների ուսումնասիրմանը, որպես կանոն, մասնակցում են շրջսովետի սոցիալիստական օրինականության և հասարակական կարգի պահպանության մշտական հանձնաժողովի, գործկոմի իրավաբանական կոնսուլտացիայի արտահաստիքային բաժնի անդամները, բաժինների վարիչները, մասնագետները, շրջսովետի դեպուտատները։*

*Լավ է կազմակերպվում նաև իրավական պրոպագանդան բնակչության շրջանում, ապահովվում է սովետի աշխատանքի հրապարակայնությունը։ Շրջսովետի գործկոմին առընթեր իրավաբանական կոնսուլտացիայի արտահաստիքային բաժնի անդամները, դեպուտատները կազմակերպում են աշխատավորների ընդունելություն, պատասխանում նրանց հարցերին։*

*Շրջսովետի գործկոմի ապարատի աշխատողները և բաժինների վարիչները տարեկան երկու անգամ հաշվետվություններով հանդես են գալիս աշխատավորների առջև, տեղերում կազմակերպում նրանց ընդունելությունը։ 1977 թ. դեկտեմբերի 29-ի նիստում հաստատվել են միջոցառումներ՝ 1977 թ. բնակչության առջև և աշխատավորական կոլեկտիվներում ժողովրդական դեպուտատների Նաիրիի շրջսովետի գործկոմի բաժինների վարիչների և գյուղվարչության պետի հաշվետվությունների ժամանակ բարձրացված հարցերի ու առաջարկությունների լուծման նպատակով։ Այդ առթիվ հանձնարարականներ*

են տրվել նաև համապատասխան կազմակերպություններին։ Շրջսովետի գործկոմը լուրջ ուշադրություն է նվիրում հատկապես վերադաս կազմակերպություններին ուղղված շրջանի աշխատավորների դիմում-գանգատներին ժամանակին ընթացք տալու հարցերին։

Ձեռնարկված միջոցների շնորհիվ տարեցտարի նվազում են շրջսովետի գործկոմում և վերադաս մարմիններում ստացված դիմում-նամակները։ 1976 թ. համեմատությամբ դրանք հաջորդ տարի պակասել են կիսով չափ։

ՍՄԿԿ Կենտկոմը պահանջում է բարձրացնել կուսակցական ու սովետական մարմինների պատասխանատվությունը սովետական օրենքների խստիվ կիրառման ու կատարման համար։ Սակայն հարկ է նշել, որ հանրապետության առանձին կազմակերպությունների ու հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ հաճախ խախտում են օրենքները, իսկ սովետական մարմինները երբեմն հանդուրժում են այդ երևույթը։ Դրա վկայությունը բանվորներին ու ծառայողներին աշխատանքից ազատելու մասին օրենքին հակասող բազմաթիվ հրամաններն ու կարգադրություններն են, նրանց օրինական պահանջները չկատարելու փաստերը։

Այսպես, «Հայտրանսշին» տրեստի Աբովյանի № 396 շինմոնտաժային գնացքի աշխատակից, Սևան քաղաքի բնակիչ Գ. Մկրտչյանը 1976 թ. մայիսին զինկոմիսարիատի կողմից զորակոչվել և գործուղվել էր երկրի արևելյան հեռավոր մարզերը՝ մասնակցելու բերքահավաքի աշխատանքներին։ Սակայն, երբ վերադարձել է, հիմնարկության ղեկավարության գիտությամբ նրա աշխատավարձը պակաս է վճարվել։ Տեղում արդյունքի չհասնելով՝ Գ. Մկրտչյանն ստիպված դիմել է վերադաս կուսակցական ու սովետական մարմիններին, որոնց միջամտությունից հետո միայն հարցը լուծվել է դրականորեն։

Կամ մեկ ուրիշ օրինակ. «Սևանշին» տրեստի բանվոր Մ. Խաչատրյանը միութենական վերադաս սովետական մարմիններին գանգատվել էր, որ իրեն ազատել են աշխատանքից անօրինական կերպով։ Անհրաժեշտություն զգացվեց, որպեսզի գործին միջամտեն ՀԿԿ Սևանի շրջկոմը և հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրությունը։ Վերջիններիս ակտիվ միջամտությամբ նա վերականգնվեց աշխատանքում։

Հոկտեմբերյանի շրջանային սանէպիդկայանի ղեկավարությունը, խախտելով գոյություն ունեցող օրենսդրությունը, աշխատանքից ազատել էր Սովետական գյուղի բնակիչ Ե. Հարությունյանին։ Այդ հարցով զբաղվեցին նաև դատական մարմինները, և քաղաքացին վերականգնվեց իր նախկին աշխատանքում, իսկ պարապուրդ օրերի դիմաց նրան աշխատավարձ վճարվեց հիմնարկության ղեկավարի հաշվին։

Նման փաստերի կարելի է հանդիպել նաև Երևան, Կիրովական, Ալավերդի քաղաքներում, ինչպես նաև Աբովյանի, Աշտարակի, Վարդենիսի, Թալինի և Ստեփանավանի շրջաններում։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այդ հարցերը կարող էին լուծել և իրենք՝ հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները և արհմիութենական կոմիտեները։ Մինչդեռ անպատասխանատվության հետևանքով սովորական թվացող ամեն մի հարց այնքան է բարդացվում, որ գործին միջամտում են վերադաս մարմինները, վատնելով զգալի ժամանակ ու ջանքեր։

Հարկ է միշտ հիշել, որ սոցիալիստական օրինականության ամրապնդումը սովետական դեմոկրատիայի զարգացման, քաղաքացիների իրավունքների ու շահերի պաշտպանության անխախտ պայմանն է։ Հայտնի դրույթ է. օրենքը գործում է, երբ այն կիրառվում է անվերապահորեն։ Ահա թե ինչու սովետներն ու հասարակական կազմակերպությունները պարտավոր են հետևել, որպեսզի բոլոր հիմնարկությունների ու ձեռնարկությունների, կազմակերպությունների ղեկավարները և քաղաքացիները խստագույնս կիրառեն ընդունված օրենքները, խոր հարգանք տածեն դրանց նկատմամբ։

Սահմանադրության 49-րդ հոդվածում նշված է, որ ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացի իրավունք ունի պետական մարմիններին ու հասարակական կազմակերպություններին առաջարկություններ ներկայացնելու նրանց գործու-



նեության բարելավման վերաբերյալ, քննադատելու աշխատանքի թերությունները, իսկ պաշտոնատար անձինք պարտավոր են սահմանված ժամկետներում քննարկել քաղաքացիների առաջարկություններն ու դիմումները, ժամանակին պատասխան տալ դրանց և ձեռնարկել անհրաժեշտ միջոցներ։ Սակայն այդպե՞ս են, արդյոք, վարվում Թալինի շրջանի Մաստարայի սովխոզի ու շրջանային սովետի գործկոմի ղեկավար ընկերները, որոնց դիմել էր այդ գյուղի բնակիչ Ծ. Ասատրյանը՝ գանգատվելով, որ իրենց բնակավայրի փողոցներն անբարեկարգ են, ուշադրություն չի նվիրվում էլեկտրալուսավորման, սանիտարական վիճակի բարելավման վրա, որ կուլտուրայի տունը օրերով փակ է լինում, իսկ խմելու ջուրն օգտագործվում է ոչ-ռացիոնալ կերպով։

Ինչպես տեսնում ենք, Ծ. Ասատրյանի բողոքը չի բխում անձնական շահերից, այլ ունի հասարակական նշանակություն, դրանով իսկ այն առավել կարևորվում է։ Եթե վերը նշված կազմակերպությունները ժամանակին արձագանքեին քաղաքացու ձայնին, կշահեր ընդհանուր գործը, իսկ նա ստիպված չէր լինի դիմելու հանրապետական վերադաս մարմիններին, որոնց միջամտությունից հետո միայն քննարկվեց դիմումը և կարգավորվեցին գործերը։ Նման փաստերի կարելի է հանդիպել Երևան, Լենինական, Հրազդան քաղաքներում, Ամասիայի, Անիի, Արթիկի, Իջևանի, Կրասնոսելսկի և մի շարք այլ շրջաններում։

Քաղաքացիների դիմում-բողոքների քննարկման հարցում ձևական-բյուրոկրատական վերաբերմունքի իսպառ կանխումը սովետական ու տնտեսական մարմինների առաջնահերթ խնդիրն է։ Տեղական սովետների գործկոմներն այն կարող են հաջողությամբ լուծել, եթե բարձրացնեն պաշտոնատար անձանց պատասխանատվությունը, վճռական պայքար ծավալեն քաղաքացիների դիմում-բողոքների, առաջարկությունների հետ տարվող աշխատանքում եղած քաշքշուկի և անհոգի վերաբերմունքի փաստերի դեմ։

Պակաս կարևոր նշանակություն չունի նաև քաղաքացիների ընդունելության և նամակների հարցը։ Սովետական մարմինները չպետք է սահմանափակվեն միայն դրանց ժամանակին ընթացք տալով և արդյունքների մասին դիմողներին հայտնելով։ Այդ հանգամանքները, իհարկե, կարևոր նշանակություն ունեն, սակայն անհրաժեշտ է, որ նրանք հմտորեն ընդհանրացնեն փաստերը, պարզեն, թե որքանո՞վ են դրանք հավաստի, տեղի՞ն են արտացոլում գործերի իրական վիճակը աշխատանքի այս կամ այն տեղամասում և ապա արդյունավետ միջոցներ ձեռնարկեն տեղ գտած թերությունների պատճառները վերացնելու համար։

Հանրապետության Գերագույն սովետի Նախագահությունը աշխատավորների նամակների ու գանգատների ընդհանրացման արդյունքների հիման վրա ընդունել է բազմաթիվ որոշումներ, այդ թվում՝ բնակելի ֆոնդի շահագործման, նորոգման ու պահպանության, հանրապետության սոցիալական ապահովության մինիստրության սիստեմում նամակներին ու գանգատներին ընթացք տալու վիճակի, իրավական պրոպագանդայի բարելավման և բազմաթիվ այլ հարցերի վերաբերյալ։ Սակայն մի շարք շրջսովետների գործկոմներ երբեմն իրենց վերաբերող հարցերը տեղում չեն լուծում, որի պատճառով քաղաքացիներն ստիպված են լինում նույն հարցով շատ հաճախ դիմելու հանրապետական և նույնիսկ միութենական վերադաս մարմիններին։ Օրինակ, Հրազդան քաղաքի բնակիչ Ս. Հովհաննիսյանը 1976 թ. հոկտեմբերի 25-ին դիմել էր քաղսովետի գործկոմի սոցապբաժնին՝ արտոնյալ պայմաններով կենսաթոշակ ստանալու վերաբերյալ։ Բաժինը մերժել էր նրա խնդրանքը, և քաղաքացին ստիպված էր եղել այդ նույն հարցով դիմելու հանրապետության սոցիալական ապահովության մինիստրությանը և ապա՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահությանը։ Նրանց միջամտությունից հետո միայն բավարարվել էր Ս. Հովհաննիսյանի օրինական պահանջը։

Շատ հաճախ կոպիտ կերպով խախտվում են նաև քաղաքացիների դիմում-գանգատներին պատասխանելու ժամկետները։ Այսպես, Թումանյանի շրջանային գազի շահագործման գրասենյակի անբավարար աշխատանքի

հետևանքով, բնակչության գազամատակարարման գործը գտնվում է անմխիթար վիճակում։ Բանն այն է, որ շրջանի մի խումբ բնակիչներ, իրենց բնակարանների գազօջախները փոխելու համար, անհրաժեշտ գումարները մուծել էին գրասենյակի հաշվին դեռևս 1977 թ. մայիս ամսին, սակայն մինչև հոկտեմբեր ամիսը նրանց հարցը չէր լուծված։ ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության 1968 թ. ապրիլի 12-ի հրամանագրի 9-րդ կետով պահանջվում է քաղաքացիների դիմումներին պատասխանել 15 օրում։ Սակայն կոպիտ կերպով խախտվում է այդ ժամկետը։ Այսպես, նույն Թումանյանի գազի ծառայության գրասենյակը մի խումբ քաղաքացիների դիմումներին ընթացք է տվել 3—9 ամիս ուշացումով։ Ամիսներով ձգձգվել են գործածությունից դուրս եկած գազօջախների փոխարեն նորերը տեղադրելու կամ դրանց առանձին մասերը փոխարինելու վերաբերյալ նրանց խնդրանքի կատարումը։

Նոյեմբերյանի գազի գրասենյակը միայն 30—40 օրվա ընթացքում է պատասխանել մի շարք քաղաքացիների, որոնք ցանկացել են իրենց բնակարաններում տեղադրել գազօջախներ։ Գազի բալոններ տեղափոխող ավտոմեքենաներ չլինելու պատճառով նույն Նոյեմբերյանի շրջանում բազմաթիվ քաղաքացիներ դրանք ստացել են 15 օր հետո միայն։ Հրազդանի շրջանից քաղաքացի Ա. Հակոբյանը 1976 թ. մարտի 1-ին դիմել է շրջսովետի գործկոմի գյուղվարչությանը՝ հողամաս ստանալու հարցով, սակայն վերջինս նրա դիմումին պատասխանել է 115 օր հետո։ Կամ նույն Հրազդանից Հ. Հարությունյանը 1977 թ. հուլիսի 7-ին դիմել էր քաղսովետի գործկոմին՝ կենսաթոշակի հարցով, սակայն մինչև նոյեմբեր ամիսը դիմումը գտնվել էր ընթացքի մեջ, իսկ խնդրատուին ոչ մի պատասխան չէր տրվել։

Մի ցավոտ հարցի մասին ևս։ Դեռևս 1969 թ. Երևան քաղաքի կենտրոնական մայրուղին բացելու նպատակով քաղսովետի գործկոմի որոշմամբ Մ. Սարյանի փողոցից մինչև Տեր-Գաբրիելյանի փողոցի հատման կետը քանդվեցին մի շարք բնակիչների առանձնատներ։ Նրանց հետ պայմանագրեր կնքվեցին (իհարկե ի խախտումն գործող օրենքի) Սպանդարյանի շրջանում կառուցվող բնակելի շենքերից բնակարաններ հատկացնելու պայմանով և տրվեցին նույնիսկ կցման կտրոններ։ Անցել է շուրջ ութ տարի, սակայն այդ տնատերերից շատերը մինչև օրս չեն ապահովված բնակարաններով։ Երևանի քաղսովետի գործկոմի նախկին ղեկավարները և Սպանդարյանի շրջգործկոմի համապատասխան աշխատողներ կառուցվող շենքերից պայմանագրով տրամադրված բնակարանները հատկացրել են քանդված շենքերի հետ և ոչ մի առնչություն չունեցող մարդկանց, իսկ պայմանագրերի տերերից շատերի հարցը այսօրվա վիճակով դեռևս «ծեծվում է» ժողդատարաններում և հայտնի չէ, թե ինչ ընթացք կունենա։ Իսկ տնատերերը բողոքներով հեղեղում են վերադաս կուսակցական ու սովետական մարմիններին։ Մինչդեռ այդ գործում մեղավոր պաշտոնատար անձինք, որոնք խախտել են գործող օրենքները, պատասխանատվության չեն ենթարկվում։

Վերջին շրջանում հանրապետական մամուլի էջերում շատ է խոսվել Երևան քաղաքի տրանսպորտի աշխատանքի մասին։ Դրվատանքի խոսքեր են ասվել ներքաղաքային երթուղիների ավտոբուսների և տրոլեյբուսների այն բարեխիղճ վարորդների հասցեին, որոնք, աշխատելով սպասարկման այդ կարևոր բնագավառում, ազնվորեն են կատարում իրենց պարտականությունները։ Սակայն նրանց կողքին կան նաև այնպիսի «վայ» վարորդներ, որոնք, երբ ցանկանում, այն ժամանակ են գործարկում մեքենաները։

Վերադաս սովետական մարմիններում քաղաքացիներից ստացվում են բազմաթիվ դիմումներ ու առաջարկություններ, որոնք վերաբերում են մայրաքաղաքի տրանսպորտի հստակ ու կանոնավոր աշխատանքի ապահովմանը. այն դեռևս գործում է մեծ խափանումներով։ Հատկապես առավոտյան և երեկոյան «պիկ» ժամերին կարելի է ականատես լինել, թե ինչպես պետական բժշկական ինստիտուտին մերձակա հսկիչ կետի մոտ «ընդմիջման» են կանգնած 6 և 7 երթուղիների տրոլեյբուսները, մինչդեռ ժամերով դրանց են սպասում



հարյուրավոր քաղաքացիներ։ Նման փաստերի կարելի է ականատես լինել նաև ուրիշ երթուղիներում։ Ահա այս աննորմալ վիճակի մասին էլ բողոքները հասնում են վերադաս մարմիններին։ Եվ եթե քաղսովետի գործկոմը կարգավորի այս կարևոր հարցը, պատշաճ կարգ ու կանոն մտցնի քաղաքային տրանսպորտի գործունեության մեջ, կնվազեն և այս կարգի բողոքները։ Այստեղից մի կարևոր հետևություն. բողոքների զգալի մասը կրում է հասարակական բնույթ, որի լուծումը յուրաքանչյուր պաշտոնատար անձի պարտականությունն է։

Քաղաքացիների առաջարկություններին, դիմումներին ու գանգատներին ժամանակին ընթացք տալու գործում հիմնական թերությունը շարունակում է մնալ այն, որ հանրապետության մի շարք հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ խորամուխ չեն լինում դիմում-գանգատներ ծնող պատճառների ուսումնասիրման և հայտաբերման մեջ, անհրաժեշտ և պատշաճ միջոցներ չեն ձեռնարկում դրանց վերացման համար։ Դրա հետևանքով հետագայում ձեռնարկված միջոցներն անհրաժեշտ արդյունք չեն տալիս, իսկ վերադաս կուսակցական, սովետական մարմիններին հասցեագրված դիմում-գանգատների քանակը, կրճատվելու փոխարեն, հետզհետե ավելանում է։

Հանրապետության տեղական սովետները, ղեկավարվելով կուսակցության Կենտկոմի ցուցումներով, պարտավոր են և պետք է բարելավեն աշխատավորների նամակներին ընթացք տալու հարցը, այն համարեն իրենց մշտական հոգածության առարկան։

---

## Մրցություն. փորձ և հետազոտություն

# ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՆԸ՝ ԻՆԺԵՆԵՐԱԿԱՆ ԱՋԱԿՑՈՒԹՅՈՒՆ

**Վ. Գ. ՊՈՍՏՆԻԿՈՎ**
Մոսկվայի «ԶԻԼ» արտադրամիավորման արհկոմի նախագահի տեղակալ
**Օ. Ի. ԱԿԱՅՈՄՈՎ**
Միավորման արհկոմի արտադրամասսայական հանձնաժողովի նախագահի տեղակալ

*ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԸ իր հերոսական պատմության յոթերորդ տասնամյակը թևակոխել է համաշխարհային-պատմական մեծագույն նվաճումներով։ Այդ մասին առանձնապես շեշտվեց մեծ Հոկտեմբերի 60-ամյակին նվիրված հանդիսություններում, ինչպես և ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունման ժամանակ։ Հիմնական օրենքում օրենսդրական կերպով ամրապնդվեցին սովետական ժողովրդի մեծագույն նվաճումները, առավել ուժգնությամբ արտացոլվեցին ժողովրդական իշխանության վարման լենինյան սկզբունքները։ Նոր Սահմանադրությունում պատշաճ տեղ է տրվում նաև սոցիալիստական մրցության կազմակերպման և կատարելագործման հարցերին։*

*Հոբելյանական տարվա նշանավոր իրադարձությունները խթանեցին տասներորդ հնգամյակում նախանշված՝ մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման ծրագրի կատարումը, ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների կենսագործումը։ Տասներորդ հնգամյակի անցած երկու տարիներին մեր հայրենիքը խոշոր քայլեր արեց իր առաջընթացի ճանապարհին։ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1977 թ.) պլենումի որոշումները, պլենումում Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության Նախագահ Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառը, 1978 թվականին համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակը հանդիսացան գործողության կոնկրետ ծրագիր և հզոր ազդակ՝ մասսաների աշխատանքային ու քաղաքական ակտիվության բարձրացման համար։ Պատմական այդ փաստաթղթերով պահանջվում է կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, աշխատավորների ողջ ուժերը կենտրոնացնել տասներորդ հնգամյակի արմատական պրոբլեմների անվերապահ լուծման համար։ Կուսակցությունը նրանց ուշադրությունը սևեռում է արտադրության աճի ռեզերվների օգտագործման, պլանային, արտադրական ու տեխնոլոգիական կարգապահության ամրապնդման, աշխատանքի կազմակերպման կատարելագործման վրա, ցույց տալիս սոցմրցության արդյունավետ կազմակերպման կոնկրետ ուղիները։*



*Կուսակցության կոչը, ընթացիկ հնգամյակի նշանաբանը կոնկրետ անդրադարձում են ստանում ամբողջ երկրի, այդ թվում և Մոսկվայի «ԶԻԼ» արտադրամիավորման կոլեկտիվի գործերում։ Եվ դրա վառ օրինակը մեր հաջողություններն են. արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման համար 1977 թ. ծավալած համամիութենական սոցմրցության արդյունքներով «ԶԻԼ» արտադրամիավորման կոլեկտիվն արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին, նրա անունը գրանցվեց ՍՍՀՄ ժողտնտեսության նվաճումների ցուցահանդեսի պատվո տախտակին։*

*Դա ավտոմոբիլաշինարար-զիլական բազմահազարանոց կոլեկտիվի աշխատանքի բարձր ու արժանի գնահատականն էր։ Ահա մեր նվաճումներն արտացոլող սոսկ մի քանի թիվ. անցած տարվա արտադրական ծրագիրը կատարվեց ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 27-ին, 1976 թ. համեմատությամբ ապրանքային արտադրանքն աճեց 4,1, աշխատանքի արտադրողականությունը՝ 8,7 տոկոսով։ Պլանից դուրս թողարկվեց 25,6 միլիոն ռուբլու արտադրանք, այդ թվում 1623 բեռնավտո, 1002 կենցաղային սառնարան։ Այս հաջողությունների ձեռքբերման գործում վճռական դեր խաղաց հնգամյակի երկրորդ տարվա ժողովրդատնտեսական պլանները կատարելու և մեծ Հոկտեմբերի 60-ամյակն արժանավայել դիմավորելու համար ավտոմոբիլաշինարարների ծավալած գործարար սոցիալիստական մրցությունը։*

*Մեր միավորման, նրա գլխամասային ձեռնարկության՝ Մոսկվայի Լիխաչովի անվան ավտոմոբիլային գործարանի կոլեկտիվն ունի սոցիալիստական մրցության լավ ավանդույթներ։ Մեզ մոտ կիրառվում են կոլեկտիվ և անհատական մրցության, արտադրության առաջընթացին, դրա արդյունավետության բարձրացմանն ուղղված մրցույթների բազմազան ձևեր, ծնունդ են առել անհատական ու կոլեկտիվ շատ նախաձեռնություններ։*

*Մեր նպատակը չէ, սակայն, խոսել այդ ամենի մասին, այլ մեր հայ ընթերցողներին ծանոթացնել մրցության մի կարևոր ձևին և դրա կիրառման շնորհիվ ձեռք բերած արդյունքներին։ Դա «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» շարժումն է, որը լայն տարածում է ստացել ոչ միայն մեր միավորման, այլև մեր երկրի հարյուրավոր ձեռնարկություններում։*

*Մինչև հիմնական նյութի պարզաբանմանն անցնելը հարկ ենք համարում խոսել այն ակտիվության մասին, որ սոցմրցության ընթացքում ցուցաբերում են ավտոմոբիլաշինարարները՝ հանուն հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, հանուն մեր երկրի տեխնիկատնտեսական առաջընթացի։*

*Ավելորդ չէ ասել, որ բոլոր ժամանակներում սոցիալիստական մրցությունը խթանում է արտադրության մարդկանց քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը, նպաստում նրանց նախաձեռնության զարգացմանը։ Եվ միանգամայն բնականոն է, որ սոցիալիստական մրցության ընթացքում ծնունդ են առնում առաջավոր բանվորների արժեքավոր շատ առաջարկություններ, որոնք բխում են արտադրության արդյունավետության բարձրացման, արտադրական ծրագրի կատարման շահերից։ Մասնավորապես ուշագրավ է ավտոգործարանի արտադրամասերի ու բաժինների կոմերիտական կազմակերպություններում լայնորեն ծավալված հայրենասիրական շարժումը՝ «Արդյունավետության ու որակի հնգամյակին՝ երիտասարդության խանդավառությունն ու ստեղծագործությունը», որը լայն արձագանք գտավ ողջ երկրի երիտասարդության շրջանում։ Այժմ այդ մրցությունը դարձել է մասսայական։ Այն օգնում է՝ մի ամբողջության մեջ միահյուսելու հարվածային աշխատանքն ու գիտատեխնիկական ստեղծագործությունը, պայքարելու պատանիների ու աղջիկների հանրակրթական ու մասնագիտական մակարդակի բարձրացման համար, երիտասարդ աշխատավորների ուժերն ու նրանց նախաձեռնությունը ծառայեցնելու արտադրության գլխավոր օղակների խնդիրների լուծմանը, օղակներ, որտեղ կարելի է, վերջնական արդյունքի առումով, նվազագույն ծախսումներով և արագորեն հասնել առավելագույն արդյունավետության։*

Լայնորեն տարածվեց նաև Մոսկվայի Պրոլետարական շրջանի ավտոգործարանցի ժողովրդական դեպուտատների՝ «Հնգամյակի երկու տարվա առաջադրանքը կատարել նոյեմբերի 7-ին» նախաձեռնությունը։ Այն պաշտպանեցին ավելի քան տասը հազար ավտոմոբիլաշինարար բանվորներ։ Նրանցից 9263-ը երկու տարվա իրենց անձնական պլանը կատարեցին նոյեմբերի 7-ին։

Ավելի քան 20 հազար երիտասարդ ավտոգործարանցիններ մրցություն էին ծավալել մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին ՍՄԿԿ Կենտկոմին ներկայացվող լենինյան կոմերիտմիության զեկույցի տակ ստորագրելու պատվավոր իրավունքին արժանանալու համար։ Չորս հազարից ավելի բանվորներ պաշտպանեցին «ԶԻԼ»-ի ավտոհավաքման մասնաշենքի փականագործ-ավտովարորդների ՝«Հնգամյակի անձնական առաջադրանքը կատարել Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակի օրը» նախաձեռնությունը։

ՍՄԿԿ XXV համագումարին տված զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Գիտատեխնիկական հեղափոխության հաջողությունը, էկոնոմիկայի վրա, հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա նրա բարերար ազդեցությունը չեն կարող ապահովվել միայն գիտական աշխատողների ջանքերով։ Հետզհետե ավելի մեծ դեր է ստանում հանրային արտադրության բոլոր մասնակիցների, տնտեսական մեխանիզմի բոլոր օղակների ներգրավումն այդ պատմական նշանակություն ունեցող պրոցեսի մեջ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 72)։ Համագումարի առաջադրած այդ խնդիրների լուծմանն էր ծառայում Մ. Ա. Կոչուբեևի ղեկավարած դարբին-կաղապարողների բրիգադի կոչը՝ «ՍՄԿԿ XXV Համագումարի օրերին ձեռք բերածը դարձնել ամենօրյա աշխատանքի նորմա»։ Բանվորների այդ կոչը ազդակ հանդիսացավ միավորման ինժեներատեխնիկական աշխատողների համար՝ սկսելու և արմատավորելու «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» նոր, հայրենասիրական շարժումը։ Եվ այսպես ծնվեց մրցության նոր ձևը, որի շուրջն էլ ուզում ենք ծավալել մեր խոսակցությունը։

«Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» շարժման տարածումը նոր փուլ է մեր կոլեկտիվի ծավալած սոցիալիստական մրցության պատմության մեջ՝ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրումն արագացնելու, այդ հիման վրա բարձրորակ արտադրանքի թողարկման հզորությունը մեծացնելու առումով։ Շարժումն արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի հավանությանը։

Տեխնոլոգիական սարքերի և հաստոցների գլխավոր կոնստրուկտորի վարչությունը եղավ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրումն արագացնելու համար սոցիալիստական մրցության կազմակերպման նախաձեռնողներից մեկը։ Կոլեկտիվի աշխատանքում գլխավորը տեխնիկական առաջընթացի տեմպի արագացումն է, արտադրության արդյունավետության բարձրացումը, աշխատանքի արտադրողականության աճի ապահովումը, նույն արտադրական տարածությունում բանվորների թվի կրճատումը, թողարկվող արտադրանքի որակի բարելավումը, տեխնոլոգիական նոր սարքավորումների ստեղծումը, ունեցած արտադրական հզորությունների առավելագույն օգտագործումը։ Այդ հարցերն իրենց արտացոլումն են գտնում սոցիալիստական պարտավորություններում։

«ԶԻԼ» արտադրամիավորման մեջ մտնող բոլոր գործարանների նոր և գործող արտադրությունների զինման նպատակով վարչությունն իրականացնում է սարքավորումների ու տեխնոլոգիական հարմարանքների նախագծումն ու ներդրումը։ Վարչության կոնստրուկտորական ստորաբաժանումը մշակում է տարբեր տեսակի հաստոցների, ավտոմատ բեռնաբարձման սարքավորումների, հավաքման հարմարանքների և զանազան նշանակության գործիքների կառուցվածքներ։ Նրա նախագծերով պատրաստվում են նաև վահանների ու հարմարանքների, դրոշմահաստոցների, ավտոմատ գծերի, ձուլման և հալման կաղապարների, պնևմատիկ և հիդրավլիկ ապարատների և ուրիշ այլ տեխնոլոգիական պրոգրեսիվ սարքերի նմուշները։ Կոնստրուկտորներն ամեն տարի նախագծում են հատուկ և ագրեգատային 15—20 հաստոց, մշակման ու հավաքման



մինչև 1500 սարքավորում, ավելի քան 300 հսկիչ վահանակ ու հարմարանք, սառը դրոշմման 700—900 դրոշմահատոց, մինչև 150 զոդման հարմարանք, ավելի քան 100 կաղապար, կտրող և օժանդակ գործիքների կիրառման 15 հազար և չափիչ գործիքների ավելի քան 6 հազար կետ և այլն։

Վարչության կոնստրուկտորական բաժիններն ու լաբորատորիաներն ունեն 340 կոնստրուկտոր և 98 ինժեներատեխնիկական աշխատող։ Լաբորատորիաները մասնակցում են փորձնակոնստրուկտորական մշակումների ստեղծմանն ու արտադրության մեջ դրանց ներդրմանը, օգնում միավորման արտադրամասերին ու գործարաններին՝ կարգավորելու և գործարկելու հայրենական և արտասահմանյան նոր բարդ սարքավորումները։

Վարչությունում կառուցվածքների մշակման տեխնիկական բարձր մակարդակի վկայությունն է այն փաստը, որ իններորդ հնգամյակի տարիներին ինժեներատեխնիկական աշխատողները ձևակերպել են գյուտարարության 190 պատվեր, 79 գյուտ ներդրել արտադրության մեջ։ Վարչության 150 աշխատողներ պարգևատրվել են ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի ոսկե, արծաթե և բրոնզե մեդալներով, վեց առաջատար մասնագետներ՝ ՍՍՀՄ շքանշաններով և մեդալներով։ Հսկման միջոցների կոնստրուկտորական բաժնի վարիչ Վ. Գորլովը 1977 թ. արժանացել է պետական մրցանակի դափնեկրի կոչման։

Այս ամենը միաժամանակ վկայում է, որ արտադրության զարգացման և բանվորական նախաձեռնության ինժեներական ապահովումը համարվում է տեխնոլոգիական սարքերի և հաստոցների նախագծման գլխավոր կոնստրուկտորի վարչության, ինչպես և միավորման ինժեներական մյուս ծառայությունների գործունեության հիմնական ուղղությունը։ Ահա ինչու Մ. Կոչուբեևի բրիգադի դարբիններին՝ «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» նշանաբանով օժանդակություն ցույց տալու վերաբերյալ դարբնոցային մասնաշենքի ինժեներների պարտավորությունը լայն ընդունելության արժանացավ։ Իսկ դա հետևյալ պատճառով. առաջին, ինչպես որ ենթադրվում է, այն ժամանակակից արտադրության ինժեների ու բանվորների բնականոն համագործակցություն է, երկրորդ, այդ նախաձեռնությունը ցանկություն է առաջացնում՝ նորովի նայել արտադրական ստորաբաժանումների ինժեներների և բանվորների փոխգործողությանը, գտնել նախաձեռնությանը ինժեներական աջակցություն ապահովելու նոր, առավել ներգործուն ձևեր։

Արտադրական միավորումում բոլոր նախաձեռնությունների տարածման ու զարգացման պատասխանատվությունը դրված է միավորման արհմիութենական կոմիտեի արտադրամասսայական հանձնաժողովի վրա։ Հանձնաժողովը, առաջին հերթին, հանգամանորեն վերլուծել է նորարար-բանվորների՝ նոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման նպատակով ստանձնած սոցիալիստական պարտավորությունները և արած առաջարկությունները։ Առանձնացվել են բանվոր-նորարարների առավել արժեքավոր առաջարկությունները, որոնց հաջող իրականացման համար հարկավոր էր ինժեներների մասնակցությունը։

Այսպիսով, առաջացան ստեղծարար համագործակցության անհրաժեշտության պայմաններ։ Օրինակ, պնևմատիկ (օդաճնշման) լաբորատորիայի վարիչ Պ. Կլենովը որոշեց համագործակցել փականագործ Վ. Բորիսենկոյի հետ՝ գնդերիթը մեջդիրներով հավաքելու ավտոմատի ստեղծման առաջարկության իրականացման գործում։ Հավաքումը պիտի կատարվեր այնպիսի մեթոդով, որը համաշխարհային պրակտիկայում առաջին անգամ մշակվել է մեր գործարանում։ Եվ ինժեներն ու բանվորն ստանձնեցին համատեղ սոցիալիստական պարտավորություններ։ Պ. Կլենովի և Վ. Բորիսենկոյի հաջող համագործակցության շնորհիվ ստեղծվեց շինվածքների հավաքման բարձր գործակից ունեցող, աշխատանքի համար հարմար և հուսալի ավտոմատ։ Հեղինակները պարգևատրվեցին ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի մեդալով։

«Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» մրցության ձևը լայնորեն տարածվել է «ԶԻԼ»-ում։ Համատեղ սոցիալիստական պարտավորություններ են ստանձնել ավելի քան երեք հազար ինժեներներ ու բանվորներ։ Այն նպաստում է միավորման գործարաններում ու արտադրամասերում

նոր տեխնիկայի ներդրման արագացմանը և արտադրության մարդկանց համար ստեղծում լարված պլանային առաջադրանքների ու սոցիալիստական բարձր պարտավորությունների կատարման դյուրին պայմաններ։

«Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» շարժումը ստեղծագործական հետագա զարգացում ստացավ։ Այն իր արտահայտությունը գտավ մի կողմից՝ կոնստրուկտորական և տեխնոլոգիական բաժինների, խմբերի ու առանձին մասնագետների, մյուս կողմից՝ միավորման արտադրական բրիգադների, տեղամասերի, արտադրամասերի և գործարանների կոլեկտիվների համագործակցության վերաբերյալ պայմանագրերի կնքման մեջ։ Այդպիսի համատեղ պայմանագրերի կնքումը բարձրացնում է կատարողների պատասխանատվությունը, ստեղծում բարենպաստ պայմաններ՝ տեխնոլոգիական պրոգրեսիվ սարքերի ստեղծման ու ներդրման արագացման, գործող սարքավորումների արդիականացման և ավտոմատացման համար, նպաստում բանվորների տեխնիկական աճին և, վերջնական արդյունքում, բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը և թողարկվող արտադրանքի որակը։ Ահա այդպիսի պայմանագրերի մի քանի օրինակներ։

Հաստոցների կոնստրուկտորական բաժինը համագործակցության պայմանագիր է կնքել շարժիչների մասնաշենքի «Շարժիչ—2» արտադրամասի կոլեկտիվի հետ։ Այդ պայմանագրի վերջնական նպատակն է՝ ստեղծել ծնկավոր գլանի մշակման կոմպլեքսային-մեքենայացված տեղամաս։ Այստեղ վերացվելու է ձեռքի ծանր աշխատանքը, բարձրացվելու է արտադրանքի որակը։ Պայմանագրով նախատեսված բոլոր միջոցառումների իրականացմամբ գործարանը կըստանա ավելի քան 20 հազար ռուբլու տնտեսական օգուտ։ Կոնստրուկտորական բաժնի և արտադրամասի կոլեկտիվների միջև կնքված այդ պայմանագիրը նախատեսված է մի քանի տարվա համատեղ աշխատանքի համար։ Յուրաքանչյուր տարի կազմվում է միջոցառումների պլան։ Տարվա վերջում հանրագումարի են բերվում միջոցառումների իրականացման արդյունքները և նախանշվում է հաջորդ տարվա միջոցառումների պլանը։

Երկու տարի շարունակվում է կոնստրուկտորների ու արտադրողների ստեղծագործական համագործակցությունը։ Որոշ միջոցառումներ արդեն իրականացվել են, մյուսները գտնվում են նախագծման ու պատրաստման փուլում։ Կուտակվել է համատեղ աշխատանքի փորձ, բացահայտվել են թերությունները, ծագել են նոր մտահղացումներ։ Կարելի է ասել, որ բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական ապահովվածություն ընդունված ձևը լիովին արդարացրել է իրեն։ Դրա վկայությունը կարող է լինել և համագործակցության վերաբերյալ մի ուրիշ երկարաժամկետ պայմանագրի հաջող կատարման ընթացքը։ Այն կնքել է էլեկտրաավտոմատիկայի կոնստրուկտորական բաժինը՝ մամլման մասնաշենքի «ԶԻԼ—130» արտադրամասի կոլեկտիվի հետ։ Այդ պայմանագրի նպատակը ավտոմեքենայի խցիկի, հատակի և մյուս հանգույցների հավաքման ու զոդման գործողության ժամանակ աշխատանքի արտադրողականության ու որակի բարձրացումն է։ Կոնստրուկտորական բաժնի ինժեներները արտադրամասի բանվոր-էլեկտրիկների հետ միասին ցանկալի արդյունքի հասնելու ուղին համարում են արտադրության մեջ արդյունաբերական էլեկտրաավտոմատիկայի նորագույն նվաճումների արմատավորումը, քանի որ նոր տարրերը և հարմարանքներն աչքի են ընկնում բարձր հուսալիությամբ և արագ գործողությամբ։ Այսպիսով, նվազում են աշխատանքի ժամանակ էլեկտրասարքավորման խափանումների քանակը և ավտոմատ ու մեքենայացված գծերի պարապուրդները։ Հետևաբար, արտադրամասի տեղամասերի համար ստեղծվում են հստակ ու համաչափ աշխատանքի լավ պայմաններ։

Կատարելով 1977 թ. միջոցառումների պլանը՝ ստեղծագործական բրիգադը մշակել, պատրաստել և ներդրել է անկոնտակտ ավտոմատիկայի համակարգ՝ տրանսֆորմատորային զոդման մեքենաների վրա օգտագործելով տրամաբանական տարրեր, զոդման տրանսֆորմատորների աշխատանքի հսկման սարքավորում և զոդման ցիկլի անկոնտակտ կարգավորիչ։

Առաջին անգամ «ԶԻԼ»-ի պրակտիկայում, ավտոմատացված մեքենայի վրա շարժիչի վահանի զոդման նպատակով, կիրառվել է միկրոսխեմայով պատրաստված էլեկտրաավտոմատիկայի համակարգ։



Էլեկտրաավտոմատիկայի և արդյունաբերական էլեկտրոնիկայի նորագույն համակարգերի ներդրումը փոխում է էլեկտրամոնտյորների աշխատանքի պայմաններն ու բովանդակությունը, պահանջում է նոր գիտելիքներ ու փորձ։ Այդ պատճառով, հիմնական արտադրական միջոցառումների հետ միասին, էլեկտրաավտոմատիկայի բաժնի կոնստրուկտորների և «ԶԻԼ—130» արտադրամասի կոլեկտիվի միջև կնքված պայմանագիրը նախատեսում է նաև սպասարկող անձնակազմի տեխնիկական մակարդակի բարձրացմանն ուղղված միջոցառումներ։

Հաստոցների ու էլեկտրաավտոմատիկայի բաժինների կոնստրուկտորների և գործարանի արտադրական ստորաբաժանումների կոլեկտիվների միջև կընքված պայմանագրերը ինժեներների և բանվորների՝ մի քանի տարվա համար նախատեսված բազմապլան համագործակցության վկայություն են։

«Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» շարժումը «ԶԻԼ»-ում համարվում է սոցմրցության հիմնական ձև, քանի որ այդպիսի համագործակցությունից սպասվում են առավելագույն արդյունքներ։

Այս կամ այն տեխնիկայի նախագծման ու ներդրման միջև ընկած ժամանակամիջոցում կատարվում է և դրա պատրաստման պրոցեսը։ Իսկ եթե այդ տեխնիկան շտկումներ է մտցնում գործող տեխնոլոգիական պրոցեսում, ապա դրանք տեղ են գտնում նաև հետազոտական աշխատանքում։ Ահա ինչու անհրաժեշտություն է առաջանում՝ պայմանագրի մեջ ներգրավել և՛ պատրաստողներին, և՛ հետազոտողներին։ Այսպիսով, պայմանագրերը դառնում են բազմակողմանի։

Այդպիսի բազմակողմանի պայմանագիր է կնքել գործիքների բաժնի՝ Ի. Ա. Պերեպենովայի ղեկավարած կոնստրուկտորական խումբը։ Այդ պայմանագրին մասնակցում են № 1 գործիքաշինական արտադրամասի տեխնոլոգիական վարչության կենտրոնական խառատաֆրեզերային ավտոմատ լաբորատորիայի և շարժիչների կորպուսի բաժանմունքները։ Պայմանագրի նպատակն է մշակել և ներդնել կարիչ և օժանդակ գործիքների նոր տեսակներ՝ ապահովելով գործիքի ամրությունը և թողարկվող արտադրանքի բարձր որակը։ Պայմանագրի մասնակից յուրաքանչյուր չորրորդ կառուցվածքային ստորաբաժանում ստանձնում է իր աշխատանքային բնույթից բխող միջոցառումների իրականացման պարտավորություններ, իսկ վերջնական հանրագումարը դիտվում է որպես պայմանավորվող կողմերի ջանքերի ամբողջություն։ Այդ ամենի շնորհիվ բարձրանում է արտադրության արդյունավետությունը։

«Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» շարժումը անընդհատ զարգանում, հարստանում է նոր փորձով։ Այդ մրցության ընթացքում ծնունդ են առնում նոր նախաձեռնություններ, նոր գաղափարներ և մտահղացումներ։ Մասնագետների և ստորաբաժանումների կողմից այդ շարժման մասնակցության աստիճանը որոշվում է սոցմրցության պայմաններով։ Դրանք ներառում են մրցության կազմակերպման բոլոր կողմերը։ Ինժեներական ստորաբաժանումների համար գործում է սոցմրցության արդյունքների գնահատման բալային համակարգ՝ ութ բաժիններով։ Դրանք են. սոցմրցության զարգացումը, արտադրական աշխատանքը, հասարակական գործունեությունը, սպորտն ու ֆիզիկական դաստիարակությունը, արտադրության կուլտուրան, գյուտարարությունն ու ռացիոնալիզատորությունը, նոր տեխնիկայի ներդրումից ստացված տնտեսական արդյունավետությունը, աշխատանքային կարգապահությունը և հասարակական կարգի պահպանումը։

Մրցության արդյունքներն ամփոփելիս՝ հաշվի են առնվում բալերի քանակն ըստ առանձին բաժինների։ Հիմնական բաժինները համարվում են արտադրական աշխատանքը և սոցմրցության զարգացումը, որոնց տրվում են համապատասխանաբար՝ առավելագույն 10 և 5 բալեր։

«Սոցմրցության զարգացումը» բաժինը ներառում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, սոցպարտավորությունները, անձնական ստեղծագործական պլանները, սոցմրցությանը նվիրված ցու-

ցադրական ագիտացիան, առաջավոր նախաձեռնությունների ու շարժումների պաշտպանությունը, որոնց մեջ գլխավորը համարվում է «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» շարժումը։

«Սոցմրցության զարգացումը» բաժնի 5 բալից 1,5-ը հատկացվում է առաջավոր շարժումների զարգացմանն ու աջակցությանը։ Վարչության ստորաբաժանումների մրցության մեջ դա էականորեն ազդում է տեղերի բաշխման վրա և դառնում լավ ազդակ «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» շարժման զարգացման և ընդլայնման համար։

Արտադրողներին ինժեներական աջակցություն ցույց տալու շարժմանը «ՋԻԼ»-ի մասնագետների մասնակցությունն արտացոլվում է անձնական ու կոլեկտիվ ստեղծագործական պլաններում, բարերար ազդեցություն գործում դրանց որակի վրա։

Անձնական և կոլեկտիվ ստեղծագործական պլանների կատարման արդյունքներով որոշվում են «Գործարանի լավագույն կոնստրուկտոր» կոչման հավակնորդները և «Սոցիալիստական մրցության հաղթող» կրծքանշանով պարգևատրվողների թեկնածուները։

Մեր վարչությունների մասնագետների շրջանում ծավալված սոցիալիստական մրցության ձևերից մեկը համարվում է պարտավորությունների ստանձնումը ստեղծագործական անհատական պլանների հիման վրա։ Այստեղ հաշվի են առնվում տնտեսական զգալի արդյունավետությամբ ինքնատիպ կառուցվածքների ստեղծումը, ներդրվող գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների հեղինակային հայտերը և այլ գործոններ։ Նոր, առաջավոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման գործում նշանակալի ավանդ ունեցող մասնագետներին շնորհվում է «Տեխնիկական առաջընթացի հարվածային» կոչում և տրվում պատվոգիր ու դրամական պարգև։

«Տեխնիկական առաջընթացի հարվածային» կոչման 1978 թ. մրցության պայմաններով այդ կոչման շնորհման համար պարտադիր է մասնակցությունը «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն» շարժմանը։ Պատվավոր կոչումն այդ շարժման զարգացման լրացուցիչ ազդակ է։

Մասնագետների ուշադրությունը սևեռելով արտադրական ստորաբաժանումների հետ համագործակցության պայմանագրերի կնքման վրա՝ կուսակցական ու արհմիութենական կոմիտեները չեն ձգտում համընդհանուր ներգրավման, չեն տարվում քանակական ցուցանիշներով։

Նոր տեխնիկայի ստեղծման և ներդրման համար ծավալած իրենց գործունեությամբ մեր վարչություններն ինժեներական աջակցություն են ցույց տալիս արտադրողներին՝ լարված պլանային առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում։ Եվ պայմանագրեր կնքում են այնտեղ, որտեղ կա այս կամ այն պրոբլեմի լուծման հրատապ անհրաժեշտություն, որտեղ ինժեներների մասնակցությունն իսկապես կարող է արագացնել արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրումը, նպաստել աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և բանվորների տեխնիկական աճին։

«ՋԻԼ» միավորումում բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն ցույց տալը, բանվորների կողմից իրենց սոցիալիստական բարձր պարտավորությունների հաջող կատարման համար պայմանների ստեղծումը համարվում են յուրաքանչյուր մասնագետի պատվի գործը։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱԿԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

**Է. Ա. ԿՅՈՒՐԵՂՅԱՆ**
Մոսկվայի սոցիոլոգիական հետազոտությունների ինստիտուտի ասպիրանտ
**Ֆ. Է. ՇԵՐԵԳԻ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, **«Социологические исследования»** ժուռնալի պատասխանատու քարտուղար

*Սոցիալիստական հասարակության նյութատեխնիկական բազայի ամրապնդման, նոր տիպի աշխատողի ձևավորման, կոմունիստական շինարարության մյուս խնդիրների լուծման ընթացքում աճում է աշխատանքային սոցիալիստական մրցության նշանակությունը։ Մրցությունն օժանդակում է աշխատանքի արտադրողականության աճի արագացմանը, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը, աշխատանքի նկատմամբ մարդկանց կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակմանը։*

*Հայկական ՍՍՀ-ում աշխատանքային սոցիալիստական մրցության դերի համընդհանուր աճն արտացոլված է այն հաջողություններում, որոնց հասել են աշխատավորական կոլեկտիվները ժողովրդական տնտեսության ամենատարբեր բնագավառներում։*

*Սոցիալիստական մրցության ընթացքում հանրապետության աշխատավորների առջև ծառացած հիմնական խնդիրների մեջ առաջնակարգ տեղ է հատկացվում հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը, արտադրանքի որակի արմատական բարելավմանը։ Այդ առումով մասնավորապես կարևորվում են աշխատավորների մասնագիտական որակավորման, մրցության գիտականորեն կազմակերպման ու կատարելագործման, նրա մեջ ձևականության տարրերի վերացման, մրցության հաղթողների նյութական ու բարոյական խթանման ճիշտ զուգորդման խնդիրները։ Հայաստանում սոցիալիստական մրցության լայն թափի վկայություն է այն, որ ստեղծարար այդ շարժմանը մասնակցում են 800 հազար բանվորներ ու ինժեներատեխնիկական աշխատողներ, կոլտնտեսականներ ու ծառայողներ։ Լայն ծավալ է ստացել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը։ Մրցության մասնակիցներից 350 հազարը, ինչպես նաև 13.903 բրիգադ, 5.857 արտադրամաս ու տեղամաս, 1.037 ձեռնարկություն և կազմակերպություն պայքարում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի ու հարվածայինի բարձր կոչման համար։*

*Սոցիալիստական մրցության արդյունավետության հետագա բարձրացման շահերը պահանջում են կուտակված առաջավոր փորձի գիտական ընդհանրացում ու վերլուծություն և այդ հիման վրա մրցության կազմակերպիչների համար առաջարկությունների մշակում։ Այդ խնդրի լուծմանը մեծապես նպաստում է մրցության սոցիոլոգիական հետազոտությունը։ Սակայն մեթոդապես ոչ ճիշտ հետազոտությունը կարող է հանգեցնել տվյալների աղավաղված մեկ-*

նաքանության, սխալ հետևությունների և եզրակացությունների։ Այդ պատճառով անհրաժեշտ է առանձնահատուկ ուշադրություն նվիրել սոցիալիստական մրցության սոցիոլոգիական հետազոտության մի շարք քիչ հետազոտված մեթոդական կողմերի վրա, օրինակ՝ փաստաթղթերի բովանդակային (կոնտենտ) վերլուծությունը կամ ընտրանքը։

## ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅԱՆ ՆՊԱՏԱԿԸ ԵՎ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Սոցիալիստական մրցության սոցիոլոգիական հետազոտության նպատակն է՝ որոշել արտադրության կոնկրետ պայմաններում մրցության կազմակերպման ձևերի ու մեթոդների և նրա տնտեսական արդյունավետության աստիճանը, ուսումնասիրել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ձևավորման վրա մրցության պրոցեսի ազդեցության սոցիալական ասպեկտները։

Հետազոտման նշված նպատակները վկայում են, որ մրցությունը ոչ միայն ունի տնտեսական նշանակություն, այլև կատարում է դաստիարակչական դեր։ Այդ նպատակներին համապատասխան՝ կարելի է առանձնացնել հետազոտման կոնկրետ խնդիրները.

1. մրցության կազմակերպման մեջ ձեռնարկության վարչական մարմինների, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների մասնակցության, մրցողների խրախուսման ձևերի ու մեթոդների արդյունավետության, մրցության հրապարակայնության ձևերի ուսումնասիրությունը.

2. մրցության արդյունավետության ուսումնասիրություն արտադրության տնտեսական ցուցանիշների բարձրացման տեսանկյունից. աշխատանքի արտադրողականությունը, սարքավորման հերթափոխայնության գործակիցը, թողարկվող արտադրանքի որակը, հնգամյակի ժամկետից շուտ կատարումը, հումքի և նյութերի տնտեսումը.

3. սոցիալիստական մրցության օգնությամբ աշխատողների սոցիալական ակտիվության բարձրացման ուսումնասիրությունը, կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչմանն արժանանալու, անձնական դրոշմ ունենալու իրավունքի, «Լավագույն վարպետ-դաստիարակ» կոչման համար մրցույթներին, վարպետության կոնկուրսներին նրանց մասնակցության վերլուծությունը։

## ՀԱՍԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕՊԵՐԱՑԻՈՆԱԼ ՍԱՀՄԱՆՈՒՄԸ

Սոցիալիստական մրցության սոցիոլոգիական հետազոտության մեջ օպերացիոնալ սահմանման է ենթակա մրցություն հասկացությունը։ Ի տարբերություն «մրցակցություն» կամ «կոնկուրենցիա» հասկացությունների, սոցիալիստական մրցությունը, այդ բառի նեղ իմաստով, աշխատավոր մասսաների կոլեկտիվ համագործակցության և փոխօգնության սկզբունքների վրա հիմնված ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու միջոց է։

Մրցություն հասկացության օպերացիոնալ սահմանումն անհրաժեշտ է անկետաների հարցաբաժինների ճիշտ կառուցման նպատակով՝ ուսումնասիրվող երևույթի հայտաբերիչների ճիշտ հավաքածու առանձնացնելու համար։ Չափազանց կարևոր է ձևակերպվող հարցերի և օգտագործվող հայտաբերիչների հարաբերակցության ճիշտ ընտրությունը։ Դրան համապատասխան կազմվում են հարցերի հետևյալ բաժինները՝ ըստ հետևյալ հայտաբերիչների. սոցիալ-դեմոգրաֆիական գործոնները (սեռ, տարիք և այլն), սոցիալիստական մրցության կազմակերպման մեթոդների և ձևերի, մրցողների բարոյական և նյութական խրախուսման համակարգի արդյունավետությունը, մրցողների սոցիալական ակտիվությունը, նրանց կողմից աշխատանքի նկատմամբ ունեցած վերաբերմունքը, կոլեկտիվում տիրող մթնոլորտը, կոմունիստական բարոյականության նորմերը և այլն։

Անկետաների հիմնական բաժինները պետք է պարունակեն հետևյալ պրոբլեմները բացահայտող հարցեր.

— կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների դերը սոցիալիստական մրցության հետագա զարգացման գործում,



— գիտատեխնիկական առաջընթացի հետագա արագացման վրա մրցության թողած ազդեցությունը.

— մրցության դերը աշխատանքի արտադրողականության աճի, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքային ծախսերի իջեցման, նյութական և հումքային ռեսուրսների խնայողաբար և կապիտալ ներդրումների ու արտադրական ֆոնդերի արդյունավետ օգտագործման, արտադրանքի որակի բարելավման համար աշխատավորներին մոբիլիզացնելու գործում.

— մրցության դերը աշխատավորների սոցիալական ակտիվության բարձրացման գործում.

— մրցության հրապարակայնության աստիճանը, արդյունքների համեմատելիությունը, առաջավոր փորձի ընդհանրացումը.

— մրցության արդյունավետության բարձրացման գործում նյութական և բարոյական խրախուսման միջոցների դերը.

— մրցության դերը աշխատավորներին հասարակական սեփականության և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու, նախաձեռնության զարգացման, կոլեկտիվի նկատմամբ սեր ներարկելու գործում.

— մրցության ազդեցությունն աշխատողների մասնագիտական վարպետության բարձրացման վրա։

Բացի նշված հարցերից, անկետաները կարող են ներառել նաև տեղական պայմանների առանձնահատկությունները հաշվի առնող մի շարք խնդիրներ։

Մրցության սոցիոլոգիական հետազոտության հաջորդ, քիչ ուսումնասիրված մեթոդական հարցերից է փաստաթղթերի, որպես նախնական ինֆորմացիա հավաքելու մեթոդի, վերլուծությունը։

## ՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅԱՆ ՄԵԹՈԴՆԵՐԸ

Հետազոտվող պրոբլեմի և օբյեկտի մասին նախնական ինֆորմացիա հավաքելու կարևորագույն մեթոդ է փաստաթղթերի վերլուծությունը։

Փաստաթղթեր անվան տակ պետք է հասկանալ բոլոր այն նյութերը, որոնք վերաբերում են սոցիալիստական մրցությանը՝ ադմինիստրացիայի հրամանները և արհմիության կոմիտեի որոշումները, բազմատպաքանակ թերթերի և «Կայծակ» պատի թերթի նյութերը, սոցիալիստական պարտավորությունները, պայմանագրերը և այլն։ Փաստաթղթերի վերլուծությունը կարող է լինել նաև ինքնուրույն հետազոտություն, որի ընթացքում հնարավոր է պարզաբանել մի շարք կարևորագույն խնդիրներ. ձեռնարկությունում մրցության հարցերի քննարկման պարբերականությունը. վարչական մարմինների և հասարակական կազմակերպությունների կողմից աշխատանքային մրցությանը ցուցաբերվող մոտեցման յուրահատկությունը. մրցության մասնակիցների խրախուսման համար նախատեսված ֆոնդերի չափը և դրանց բաշխման բնույթը. պարտավորությունների և ժամանակակից արդյունաբերության խնդիրների համապատասխանության աստիճանը. աշխատավորների պարտավորությունների հետ վարչական մարմինների փոխկապակցվածության մակարդակը։

Բոլոր փաստաթղթերը, ըստ իրենց նպատակայնության, կարելի է բաժանել երեք խմբի՝ փաստաթղթեր, որոնցում արտացոլված է մրցության կազմակերպման պրոցեսը (վարչական մարմինների հրամանները և հասարակական կազմակերպությունների որոշումները), մրցության ընթացքն արտացոլող փաստաթղթերը (պարտավորություններ, արդյունքների ամփոփման նյութեր, «կայծակներ», մոնտաժներ և այլն), հասարակական կարծիքն արտացոլող փաստաթղթեր (հիմնականում պատի թերթերում և բազմատպաքանակ մամուլում մրցության մասնակիցների ելույթները)։

Փաստաթղթերն արտացոլում են աշխատանքային մրցության տարբեր կողմերի ցուցանիշները։ Այսպես, օրինակ, տնտեսական ցուցանիշները պարունակվում են պլանային, արտադրական, տեխնիկական վերահսկողության, տեխնիկայի անվտանգության բաժինների, իսկ մրցության սոցիալ-քաղաքա-

կան ֆունկցիայի մասին ինֆորմացիան՝ կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, կոնստրուկտորական և աշխատանքի գիտական կազմակերպման հասարակական բյուրոների նյութերում։ Մրցության դաստիարակչական ֆունկցիան արտացոլված է վարչական մարմինների և հասարակական կազմակերպությունների փաստաթղթերում, ինչպես նաև ձեռնարկության կոլեկտիվի, նրա արտադրամասերի, տեղամասերի, բրիգադների և առանձին բանվորների սոցիալիստական պարտավորություններում։

Մրցության փաստաթղթերը միմյանցից տարբերվում են և՛ ըստ բովանդակության, և՛ ըստ քանակի։ Հետևապես, փաստաթղթերը վերլուծելիս՝ հետազոտողը պետք է կիրառի զանազան մեթոդներ։

Մրցության ընթացքի և արդյունքների վերաբերյալ վարչական մարմինների հրամանները և հասարակական կազմակերպությունների որոշումները, որպես կանոն, շատ չեն և տարբեր են ըստ բովանդակության։ Այդ պատճառով, հետազոտման օբյեկտը և պրոբլեմը ճշտելու նպատակով, հետազոտողը պետք է վերլուծի ամեն մի փաստաթուղթ առանձին-առանձին։ Նման սկզբունք հարկ է կիրառել նաև լուսանկարային ցուցափեղկերի, պատվո տախտակների, վահանակների և այլ նյութերի ուսումնասիրման ժամանակ, քանի որ դրանց բովանդակությունն անհատականացված է ավելի մեծ չափով։

Անհատական և բրիգադային սոցիալիստական պարտավորությունների, բազմատպաքանակ թերթերի հոդվածների, ինչպես նաև «կայծակների» քանակը կարող է հասնել մի քանի հարյուրի, նույնիսկ՝ հազարի։ Այդ պատճառով պետք է դրանց ուսումնասիրման համար կիրառել բովանդակային (կոնտենտ) վերլուծության սկզբունքը։

Բրիգադային պարտավորությունները և բազմատպաքանակ թերթերի նյութերն ուսումնասիրելիս՝ վերլուծությունը պետք է լինի համընդհանուր, իսկ անհատական պարտավորություններն ուսումնասիրելիս՝ ընտրովի։ Վերջինիս դեպքում ամենից հարմար է կիրառել մեխանիկական ընտրանքը։ Բովանդակային վերլուծության համար բրիգադների և անհատական պարտավորությունների ընտրանքը կարելի է իրագործել բանվորների կամ բրիգադների թվին համեմատ։

Որպեսզի հետագայում կարելի լինի համադրել փաստաթղթերի տվյալները և հարցման արդյունքները, հարկ է վերլուծության նյութերում մտցնել հարցման ենթարկված աշխատավորների պարտավորությունները։ Փաստաթղթերի վերլուծությունը միաժամանակ հետազոտման օբյեկտի մասին տալիս է ընտրանքի խնդրի լուծման անհրաժեշտ ինֆորմացիա։

## ԸՆՏՐԱՆՔԸ

Փորձը ցույց է տալիս, որ մրցության սոցիոլոգիական հետազոտման մեջ ամենաընդունելի ընտրանքի ձևը սերիականն է, քանի որ դրա հիման վրա կատարված հետազոտությամբ հնարավոր է համադրել ոչ միայն հարցվողների, այլ նաև բրիգադների մակարդակով ստացված ինֆորմացիան, որը շատ կարևոր է կոմունիստական աշխատանքի բրիգադների արդյունքները մյուսների հետ համեմատելիս։

Սերիական ընտրանքը պահանջում է ընտրված սերիաների համընդհանուր հետազոտություն։ Որպես սերիա հանդես են գալիս բրիգադները կամ ամենափոքր արտադրական միավորները։ Սերիական ընտրանքի ներկայացուցչականությունն ամենից հաճախ ստուգվում է սոցիալ-դեմոգրաֆիական և մի շարք ուրիշ հատկանիշներով, հաշվի առնելով այն հանգամանքը, որ «սոցիալիստական մրցության գիտական կազմակերպման հրատապ պրոբլեմներից մեկը մրցողներին ըստ տարիքի, աշխատանքի ստաժի, սեռի, առողջության վիճակի և կրթության տարբերակումն է»(А. В. Фролов. Соревнование и опыт стимулирования роста культурно-технического уровня рабочих — «Социологические исследования» № 3, 1975 г., стр. 141):

Այժմ քննենք Երևանի ժամացույցի միավորումում սոցիալիստական մրցության սոցիոլոգիական հետազոտման մեջ սերիական ընտրանքի իրագործ-



ման օրինակը[1]։ Ընտրման միավոր եղել են բրիգադները։ Բրիգադները որպես սերիա ընտրելը նպաստում է տեղաշարժի սխալների և «սպիտակ բծերի» (նկատի ունենք ընտրված համախմբի ներկայացուցչականությունը գլխավորի հետ համեմատած) բացառմանը, որովհետև բրիգադից ազատված միավորները նախ, որպես կանոն, փոխարինվում են ուրիշներով՝ համանման բնութագրերով (համենայն դեպս՝ ըստ որակավորման, կրթության և սեռի), և երկրորդ՝ հարցման ընթացքում բրիգադի բացակայող անդամներին կարելի է բաց թողնել՝ նկատի ունենալով, որ բրիգադը բաղկացած է միայն ներկա գտնվող անդամներից, իսկ ինքը՝ բրիգադը, որպես միավոր, միշտ առկա է։

Բրիգադում սովորաբար ընդգրկված են հիմնական մասնագիտությունների ներկայացուցիչները, այդ պատճառով գլխավոր համախումբը կազմել են միավորման հիմնական մասնագիտությունների ներկայացուցիչները (մոտավորապես 2000 բանվոր)։ Հարցերն առաջադրվել են 300 մարդու։ Բրիգադների ընտրությունը կատարվել է ըստ արտադրամասերի։

Յուրաքանչյուր արտադրամասում հարցման ենթակա բանվորների թիվը որոշվել է հետևյալ կերպ. տվյալ արտադրամասի հիմնական մասնագիտությունների բանվորների ընդհանուր թիվը բազմապատկվել է ընտրված համախմբի մեծության հետ և ստացված արդյունքը բաժանվել գլխավոր համախմբի մեծության վրա։ Մեզ մոտ գլխավոր համախումբը կազմել է 1900 բանվոր, ընտրվածը՝ 300։ Այս ձևով յուրաքանչյուր արտադրամասի համար հաշվելիս ստացվել են հետևյալ փաստական տվյալները. հավաքման № 1 արտադրամասի 230 բանվորից հարցման են ենթարկվել 36-ը, հավաքման № 2 արտադրամասում՝ 155-ից 25-ը, մեխանիկականում՝ 295-ից 47-ը, ավտոմատում՝ 250-ից 39-ը, մամլման արտադրամասում՝ 180-ից 28-ը, հարդարման արտադրամասում՝ 135-ից 21-ը, գործիքաշինական և նորոգման-մեխանիկական արտադրամասերում՝ 165-ից 26-ը, № 1 փորձակայանում՝ 190-ից 30-ը և Մաստարայի մասնաճյուղում՝ 300-ից 48-ը։

Ըստ արտադրամասերի բրիգադների ընտրումն իրականացնելու համար կազմվել է բրիգադավարների անվանական ցուցակ՝ այբբենական կարգով։ Այդ ցուցակների օգնությամբ իրագործվել է մեխանիկական ընտրություն՝ արտադրամասերի աստիճանաբար ընտրման օգնությամբ։ Ընտրման քայլը յուրաքանչյուր արտադրամասի համար որոշվել է տվյալ արտադրամասում բրիգադների ընդհանուր թվի և նույն արտադրամասում հարցման ենթակա բրիգադների թվի հարաբերությամբ։ Այսպես, հարդարման արտադրամասում եղել է 27 բրիգադ։ Հետևապես, ընտրման ենթակա էր յուրաքանչյուր յոթերորդ բրիգադը։ Գործնականում այբբենական կարգով եղած անվանական ցուցակից վերցվել է յուրաքանչյուր յոթերորդ բրիգադավարը, իսկ հարցման են ենթարկվել նրա բրիգադի անդամները։

Հաշվի առնելով տվյալ ձեռնարկությունում ըստ բանվորների կրթության, տարիքի, սեռի, որակավորման և աշխատանքի ստաժի բաշխվածության վերաբերյալ միավորումում եղած վիճակագրական տվյալները, այդ ցուցանիշներով ստուգվել է ընտրանքի ներկայացուցչականությունը՝ գլխավոր և ընտրված համախմբերում նրանց բաշխումը համադրելու ճանապարհով։

Հետազոտության արդյունքներն ունեն ինչպես տեսական, այնպես էլ գործնական նշանակություն։ Հետազոտության նյութերը և դրանց հիման վրա արված առաջարկությունները դրվում են ձեռնարկության հասարակական կազմակերպությունների և վարչական մարմինների տրամադրության տակ՝ աշխատանքային սոցիալիստական մրցության կազմակերպման կատարելագործման նպատակով։

[1] Նշված հետազոտությունը կատարվել է հեղինակների կողմից ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի սոցիոլոգիական հետազոտությունների գիտահետազոտական ինստիտուտի «Աշխատանքի սոցիոլոգիա» բաժնի «Ինչպե՞ս է կազմակերպված աշխատանքը և սոցիալիստական մրցությունը Ձեր ձեռնարկությունում» թեմայով կատարված համամիութենական հետազոտության ծրագրի շրջանակներում։

# ԱՆԽԱԽՏ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՄԲ

**ՀԱՍՄԻԿ ՍԱՐԻԲԵԿՅԱՆ**
ՀԿԿ Կրասնոսելսկի շրջկոմի քարտուղար

*Թռչունը թևերով է ուժեղ, մարդը՝ բարեկամությամբ*

ԿՐԱՍՆՈՍԵԼՍԿԸ ՀԱՅՏՆԻ է իր կանաչապատ լեռներով, ծաղկառատ մարգագետիններով, կարկաչուն ու սառնորակ աղբյուրներով, որոնք առանձնահատուկ հմայք են տալիս նրան։ Իսկ ինչ էլ որ պակասում է, լրացնում է լեռնային գեղեցկուհին՝ կապուտաչյա Սևանը։ Բնության այս շնորհները, ասես, մարդկանց դարձնում են բարի, ժպտադեմ, մեծապես խթանում նրանց աշխատանքային ու ստեղծագործական եռանդը, բարիքներ արարելու նրանց ունակությունը։

Կրասնոսելսկի համար բնորոշը միայն դա չէ, այլև այն, որ նրա բնակչությունը բազմազգ է, մարդիկ կապված են միմյանց հետ ինտերնացիոնալ սերտ բարեկամությամբ։ Այդ բարեկամության շունչը թևածում է նրա յուրաքանչյուր շենում, անկյունում, յուրաքանչյուր հարկի տակ։ Անխախտ բարեկամության զգացումը, ասես, ներարկված լինի ամեն մի կրասնոսելսկցու արյան մեջ։

Այս օրերին, երբ հանրապետության աշխատավորները խորին գոհունակությամբ նշում են նշանավոր իրադարձության՝ Արևելյան Հայաստանը Ռուսաստանի հետ միավորվելու 150-ամյակը, մեծ խանդավառությամբ է համակվել նաև Կրասնոսելսկի բազմազգ բնակչությունը։

Կուսակցության շրջանային կոմիտեն, սկզբնական կուսակցական, կոմերիտական կազմակերպություններն առանձին քննարկման առարկա են դարձրել մեծ հոբելյանի նախապատրաստման ու անցկացման հարցը, կազմել միջոցառումների հարուստ պլան։ Այդ պլանին համապատասխան՝ հետաքրքրական միջոցառումներ են անցկացվել դպրոցներում, նախադպրոցական հիմնարկություններում, կուլտուրայի օջախներում, աշխատավորական կոլեկտիվներում։ Այդ ձեռնարկումներն ավելի խորացրին բարեկամության վեհ զգացումը։ Եղեք ցանկացած կոլեկտիվում, թեկուզ ամենափոքրիկների՝ մանուկների, և անմիջապես կհամոզվեք դրանում։ Հեռու գնալ պետք չէ, շրջկենտրոնի մանկապարտեզները մտնողը չի կարող չհիանալ փոքրիկների ջերմ մտերմությամբ։ Այնտեղ միասին երգում, պարում, նկարում, «կառուցում» են Նորայրը, Գրիգորը, Հասմիկը, Տատյանան, Գրիշան, Լեյլան, Եմելյան, Նադիրն ու շատ-շատերը։ Անմիջապես հեշտ չէ տարբերել, թե նրանցից ով ինչ ազգության է պատկանում. նրանք իրար հետ ջերմ են ու սիրալիր, հասկանում են միմյանց լեզուն։

Բարեկամությունն ավելի խոր արմատներ է ձգել ու իմաստավորվել համեմատաբար մեծերի՝ դպրոցականների մոտ։ Շրջանի դպրոցներում գործում են



ինտերնացիոնալ բարեկամության ակումբներ, որոնց գործունեությունը ներդաշնակում ու ղեկավարում է ՀԼԿԵՄ շրջկոմին առընթեր հանձնաժողովը՝ իր մի քանի սեկցիաներով։

Ինտերնացիոնալ բարեկամության ակումբները սիստեմատիկ աշխատանք են տանում դպրոցականների շրջանում։ Արդեն ավանդույթ է դարձել ամեն գարնան բարեկամության շաբաթի անցկացումը։ Այն նպաստում է հայկական, ադրբեջանական և ռուսական, ինչպես նաև ինտերնացիոնալ դպրոցների սովորողների բարեկամական կապերի ամրապնդմանը։

Կրասնոսելսկի շրջկենտրոնի № 1 միջնակարգ դպրոցում թեպետ մի քանի ազգերի ներկայացուցիչներ են սովորում, սակայն դա չի խանգարում, որ նրանք հանդես գան որպես մեկ համերաշխ ընտանիքի անդամներ, որպես մտերիմ բարեկամներ։ Այստեղ չափազանց մեծ է «Խարույկ» ինտերնացիոնալ բարեկամության ակումբի դերը, որի անդամները, հետաքրքրական միջոցառումներ կազմակերպելուց բացի, նամակագրական սերտ կապերի մեջ են եղբայրական հանրապետությունների շատ դպրոցների ու կոլեկտիվների հետ։ Հիշատակության արժանի է առանձնապես Լիտվայի «Կրասնոսելսկ» ձկնորսական նավի անձնակազմի հետ հաստատած նրանց բարեկամությունը։ Կրասնոսելսկցիները ձկնորսներին ուղարկել են Սովետական Հայաստանի, մեր շրջանի մասին պատմող ալբոմներ, նամակներ։

Արդեն ավանդական է դարձել մեր շրջանի Օրջոնիկիձե գյուղի և Ուկրաինայի Վորոշիլովգրադի մարզի Բելովոդսկ ավանի № 1 միջնակարգ դպրոցների աշակերտների և ուսուցիչների բարեկամությունը։ Բելովոդսկի դպրոցի ավագ ջոկատավար Սվետլանա Դոլգինայի ղեկավարությամբ պատանի հետախույզներն իրենց ավանում հայտնաբերել էին ֆաշիստական օկուպացիայից Ուկրաինայի ազատագրման համար մղվող մարտերում հերոսաբար զոհված օրջոնիկիձեցի կրտսեր լեյտենանտ Արշակ Թորոսյանի գերեզմանը և տեղյակ պահել նրա հարազատներին։

Հետզհետե ավելի են ամրապնդվում երկու դպրոցների և գյուղերի բնակիչների միջև հաստատված կապերը։ Անսահման հետաքրքրական այդ ծանոթությունը խորանում ու ջերմանում է, վերածվում հարազատության։ Հայկական և ուկրաինական գյուղերը դառնում են հավետ բարեկամներ. ուկրաինուհիներ Սվետլանան և Տատյանան ամուսնացել են հերոսի մահով ընկած Ա. Թորոսյանի եղբորորդիներ Ազատ և Լևոն Թորոսյանների հետ։ Այժմ Սվետլանան երեք երեխաների մայր է, իսկ Տատյանան՝ մեկ։ Նրանց երեխաներից Նաիրան, Տաթևիկը արդեն խոսում են Տ. Շևչենկոյի և Հ. Թումանյանի լեզուներով։ Սվետլանան Օրջոնիկիձե գյուղի միջնակարգ դպրոցում մեծ Հոկտեմբերի լեզու է դասավանդում, իսկ Տատյանան Ջարենցավանում՝ մաթեմատիկա։ Նրանք Ուկրաինայից եկած հյուրերին ռուսերեն ու հայերեն են ողջունում, «բարի գալուստ» ասում։

Ն. Բաշգյուղի միջնակարգ դպրոց մտնողն անմիջապես կնկատի «Բազմագույն վզկապներ» անկյունը, որը դպրոցը կապում է աշխարհի, սոցիալիստական երկրների, մեր անծայրածիր հայրենիքի բոլոր կողմերի հետ։ Այդ դպրոցի ինտերնացիոնալ բարեկամության ակումբի անդամները հավաքների ժամանակ կրում են տարբեր երկրների վզկապներ և ներկայացնում տվյալ երկիրը։ Նորբաշգյուղցի պիոներները նամակագրական կապերի մեջ են շատ երկրների պիոներների հետ։ Վերջերս նրանց փոստը հարստացավ նոր ծրարներով։ Դրանք ԲԱՄ-ի շինարարներին ուղարկված նամակների ու ծանրոցների սրտառուչ ու հուզիչ պատասխաններ էին, հուշանվերներ ու լրագրային հոդվածներ։

Շրջանի հայկական, ռուսական, ադրբեջանական դպրոցների սովորողների այցելության ցանկալի վայր է դարձել հեղափոխական շարժումների ակտիվ մասնակից Բորյան եղբայրների՝ Ներքին Ճամբարակում գտնվող տուն-թանգարանը։ Նրանք հաճախակի այցելում են այստեղ ու երդվում՝ սրբությամբ պահպանել աննկուն հեղափոխականների լավագույն ավանդույթները։

Շրջանի դպրոցների բարձր դասարաններում անցկացվել է լավագույն շարադրությունների ստուգատես։ Դրանցից մի քանիսն արժանացել են հանրա-

պետական հանձնաժողովի հավանությանը։ Կազմակերպվել են էքսկուրսիաներ տասնմեկերորդ կարմիր բանակի հետքերով (դեպի Ադրբեջանական ՍՍՀ Գետաբեկի շրջան)։ Դպրոցականներն իրենց հայրենի գյուղերի մասին արժեքավոր շատ նյութեր են հավաքել ու հանձնել հանրապետության «Վերածնունդ» արշավախմբի անդամներին։ Գրադարաններում քննարկվում են Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի», Մ. Արազու «Իսրայել Օրի» պատմավեպերը, Ս. Այվազյանի «Առավոտ լուսո» և մի շարք այլ գրքեր։ Մեծ հետաքրքրությամբ են անցնում «Հյուսիսային ծիածան» կինոնկարի կոլեկտիվ դիտումները։ Շրջանի կուլտուրայի օջախներում՝ կենտրոնական գրադարանում, նրա մասնաճյուղերում, տացքակետերում ու ակումբներում կազմակերպվում են գրքի ցուցահանդեսներ, թեմատիկ բաց դարակներ՝ «Հավետ միասին», «Դարավոր բարեկամություն», «Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-ամյակը» խորագրերով։ «Գիտելիք» ընկերության հետ միասին անցկացվում են զրույց-զեկուցումներ, դասախոսություններ, թեմատիկ երեկոներ՝ «Հայաստանի վիճակը թուրք-պարսկական պատերազմի ժամանակ», «Լենինը և Անդրկովկասը», «Համատեղ խիզախում գիտության ասպարեզում», «19-րդ դարի 2-րդ կեսը հայ ժողովրդի պատմության մեջ», «Հավերժ Ռուսիայի հետ», «Օրհնվի էն սհաթը...» և զանազան այլ թեմաներով։

Շրջանի աշխատավորների միջև հաստատված ջերմ բարեկամության արմատավորման ու ծավալման վրա բարերար է ազդում գործարար սոցիալիստական մրցությունը։ Հայկական, ռուսական, ադրբեջանական բոլոր գյուղերը, տնտեսությունները մցում են միմյանց, իսկ շրջանը՝ Գետաբեկի շրջանի հետ։ Մրցության արդյունքների ամփոփման ամեն մի միջոցառում վերածվում է բարեկամության մեծ տոնախմբության։ Մարտունու և Գյուլքենդի պետական տնտեսություններում առաջավորների պատվո տախտակներին, տվյալ տնտեսության առաջավորների հետ միասին, փակցվում են նաև մրցակից տնտեսության առաջավորների լուսանկարները։

Կրասնոսելսկի և Գետաբեկի կուսշրջկոմներն ու ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները սահմանել են փոխանցիկ կարմիր դրոշներ, որոնք հանձնվում են մրցակից շրջանների՝ սոցմրցությունում հաղթող տնտեսություններին։ Այդ դրոշներին արժանանալու նպատակով համառ պայքար է ծավալվում տնտեսություններում, դրոշները հաճախակի փոխում են իրենց հասցեները։ Գետաբեկցիների դրոշն այժմ գտնվում է մեր շրջանի Գյուլքենդի պետական տնտեսությունում։

Մեր շրջանի էկոնոմիկայի առաջատար ճյուղը գյուղատնտեսությունն է, որը վերջին տարիներին անշեղ վերելք է ապրում։ Դա բացատրվում է նաև հողի աշխատավորների միջև հաստատված սերտ բարեկամությամբ ու ծավալված սոցմրցության արդյունավետությամբ։ Այդ բարեկամությունն ու մրցությունը ոգևորում են մեր մարդկանց, նպաստում նրանց ակտիվության բարձրացմանը, տնտեսությունների առաջընթացին։ Այս առումով գոհացուցիչ են հատկապես Արծվաշեն գյուղի աշխատավորների հայրենանվեր գործերը։ Նրանք դարձան «Հնգամյակը՝ չորս տարում» հայրենասիրական շարժման նախաձեռնողներն ու դրոշաշակիրները։ Սակայն, հաշվի առնելով իրենց հնարավորություններն ու արտադրության բարձրացման ռեզերվները, արծվաշենցիները պայքարում են գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների հնգամյա պլանն ավելի վաղ, 3,5 տարում կատարելու համար, իսկ շատ առաջավորներ՝ ավելի շուտ։ Այսպես, շրջանում առաջին 3000-ական կթվորուհի Թամամ Ղալեչյանն արդեն կատարել է հնգամյակի իր առաջադրանքը և այժմ աշխատում է 1981 թ. հաշվին։ Նրա օրինակին հետևողները շատ են։ Այս հասումներում զգալի է և ինտերնացիոնալ բարեկամության դերը, որ արծվաշենցիները հաստատել են հարևան Ադրբեջանական ՍՍՀ Գետաբեկի շրջանի գյուղերի (Ն. Իվանովկա, Սարատովկա, Իսալի, Արաբաչի, Դուզ Ռասուլու) աշխատավորների հետ։

Հաստատապես կարելի է ասել, որ շրջանի աշխատավորներն իրենց աննախադեպ հաջողությունները ձեռք են բերում նաև սոցիալիստական մրցության



ընթացքում սկսված ու ամրապնդված ինտերնացիոնալ բարեկամության շնորհիվ։ Շրջանի բոլոր տնտեսություններում ինտերնացիոնալ կապերը խորանում ու նոր բովանդակություն են ստանում։ Որպես կարգ, անցկացվող միջոցառումներին (պետական թե անձնական) անխտիր մասնակցում են բոլոր ազգերի ներկայացուցիչները։ Նրանց կարելի է տեսնել և՛ ցանկացած հարսանյաց սեղանի շուրջը, և՛ հանդիսավոր ժողովներում, և՛ այլուր։

Ինտերնացիոնալ խոշոր կոլեկտիվ է Կրասնոսելսկի շրջկենտրոնի պետական տնտեսությունը։ Այստեղ ուս-ուսի աշխատում են տարբեր ազգության պատկանող բանվորներ, բրիգադավարներ ու մասնագետներ։ Նրանք միշտ խորհրդակցում են միմյանց հետ, համատեղ պլանավորում իրենց անելիքները, փոխադարձ աջակցություն ցույց տալիս իրար, հասնում բարձր արդյունքի։ Բրիգադավարներ Խաչիկ Արշակյանը, Համիդ Ալիևը, Ֆեոդոր Տրեգլազովը, մասնագետներ Էդիկ Ավագյանը, Գրետել Մուսայելյանը, Եվդոկիա Տրեգլազովան և ուրիշներ զորավիգ են միմյանց։ Հանրային բարիքների արտադրության ավելացման համար ծավալված պայքարն առաջ է քաշել աշխատանքային խիզախումների ընդունակ մի ստվար ջոկատ։ Հովիվներ Աբդուլլա Ալիևը, Իվան Տոլմուսովը, տրակտորիստներ Վլադիմիր Արշակյանը, Գրիգորի Ժուրավլյովը, կթվորուհիներ Թելլի Իսկանդարովան, Մարիա Կոնովալովան և շատ ուրիշներ քայլում են մրցության ավանգարդում, իրենց ուսանելի փորձը հաղորդում ինտերնացիոնալ ընտանիքի բոլոր անդամներին։

Շրջանում չկա մի կոլեկտիվ, որտեղ միասին աշխատելիս չլինեն մի քանի ազգերի ներկայացուցիչներ։ Շորժայի հրակայուն աղյուսի փորձնական գործարանի կոլեկտիվը մեծ չէ, բայց դա չի խանգարում, որ կողք-կողքի, հարազատ քույրերի ու եղբայրների նման միասին աշխատեն հայը, ռուսը, ադրբեջանցին, քուրդն ու մորդվինը։ Այստեղ միմյանց հետ մրցում, իրար օգնում ու իրարից սովորում են Սաթենիկը, Բաստին, Եկատերինան, Հասրաթը և շատ ուրիշներ, որոնք արդեն երկար տարիներ համատեղ բարիքներ են ստեղծում։

Զափազանց հարազատ միջավայր է ստեղծված նաև Կրասնոսելսկի արտադրական ձեռնարկությունում։ Միևնույն արտադրամասում են աշխատում երիտասարդ կոմունիստ Անուշ Նազարյանը, Մարիա Կոբզևան, Խանում Իսաևան, Զեմֆիրա Աբբասովան, Ռոզա Վալիևան, Մարիա Ֆուդինան և ուրիշներ։ Այստեղ շատ հետաքրքրական է անցնում բանվորների ո՛չ միայն աշխատանքային առօրյան, այլև՝ կուլտուրական հանգիստը։ Ձեռնարկությունում ստեղծված ջերմ մթնոլորտը նպաստում է, որ պլանային առաջադրանքները կատարվեն հաջողությամբ։

Ինտերնացիոնալ բարեկամության ամրապնդմանը և բարեկամական մրցության ծավալմանը մեծապես նպաստում է շրջանային «Բարեկամություն» թերթը։ Հրապարակվող հոդվածներում հանգամանորեն ցույց են տրվում բարեկամության ուժը, նրա բարերար ազդեցությունը արտադրության առաջընթացի վրա։ Շրջանային թերթը հաճախակի էջեր է փոխանակում մեր մրցակից Ադրբեջանական ՍՍՀ Գետաբեկի շրջանի «Թարագգի» թերթի հետ։

Շրջանի կուսակցական, սովետական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպություններն ամեն ինչ արին, որպեսզի հանդիսավորությամբ նշվեր հայ ժողովրդի համար ճակատագրական նշանակություն ունեցող մեծ իրադարձության տարելիցը՝ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը։

Մենք աշխատավորների ջանքերը, նրանց ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունն ուղղում ենք ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների կենսագործմանը։

---

# Արվեստը և մանկան աշխարհը

ՄԱՐԴԿՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ զարգացման տարբեր փուլերում մշակել է անհատի ձևավորման չափանիշներ, որոնք կրել են ժամանակի իշխող գաղափարախոսության կնիքը: Սակայն միայն սոցիալիստական հասարակարգում են ռեալ հնարավորություններ ըստեղծվում անհատի անարգել զարգացման համար: ՍՍՀՄ նոր Սահմանադրության 20-րդ հոդվածում ասված է. ««Յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է» կոմունիստական իդեալին համապատասխան, պետությունն իր առջև նպատակ է դնում ընդլայնել ռեալ հնարավորությունները քաղաքացիների կողմից իրենց ստեղծագործական ուժերի, ընդունակությունների ու ձիրքերի գործադրման համար, անհատի համակողմանի զարգացման համար»:

Դաստիարակել ազատ ու համակողմանի զարգացած անհատ, նշանակում է ձևավորել այնպիսի մարդ, որի հոգևոր աշխարհում հաստատվում է խոհերի ու հույզերի ներդաշնակություն, բնավորության մեջ՝ ստեղծագործական ակտիվություն: Անհատի ձևավորման առաջին ու հիմնական միջոցը աշխատանքն է, պրակտիկ գործունեությունը, որտեղ իրականացվում ու առարկայանում են մարդու խոհերն ու զգացմունքները: Վերլուծելով աշխատանքի կապիտալիստական ձևը՝ Կ. Մարքսը այն բնութագրել է որպես մարդու էությունից «օտարված» աշխատանք, այսինքն՝ աշխատանք, որի մեջ ունեզրկված անհատն անկարող է լիակատար չափով ներդնել իր հոգևոր «եսը»: Այդպիսի օտարված, այսինքն՝ մարդու հոգևոր էությանը հակադիր աշխատանքի պրոցեսը զուրկ է գեղագիտական պարամետրերից և, բնականաբար, չի կարող հանդիսանալ գեղագիտական դաստիարակության միջոց: Հետևաբար, գեղագիտական պոտենցիալը պետք է փնտրել ոչ թե վերացական, այլ որոշակիորեն «սոցիալացված», ստեղծագործական պահանջմունք հանդիսացող աշխատանքում:

Նման ըմբռնումը համապատասխանում է Կ. Մարքսի այն հայտնի դրույթին, որ մարդն ստեղծագործում է ո՛չ միայն անհրաժեշտաբար, այլև «գեղեցկության օրենքներով»:

Իրոք, այս առումով զննելով ստեղծագործման առավել հասուն ձևերը, կարելի է եզրակացնել, որ ստեղծագործությունը, որպես այդպիսին, միշտ կատարելագործվում է գեղեցկության օրենքներով և այդ օրենքների սահմաններում: Գեղեցկության օրենքներից դուրս, լայն առումով ստեղծագործություն չկա:

Հետաքրքրական է, որ վաղ շրջանում մարդկության գործունեությունը գեղեցկության օրենքներով, ինչպես և յուրաքանչյուր անհատի ձևավորումն իր բնույթով առավել գեղարվեստական են եղել: Այս մտքի վկայությունն են հին քարե դարի արվեստի այն բազմաթիվ նմուշները, որ մեզ են հասել հնագիտական պեղումների շնորհիվ: Մարդկության բնօրրանի մոտ, իր ողջ պարզունակությամբ հանդերձ, հենց արվեստն էր այն ոլորտը, ուր առավել լիակատար էին մարմնավորվում մարդկության ստեղծագործական հնարավորությունները:

Հարկ է ասել, որ մարքսյան դրույթն ըստ էության նեղ էին մեկնաբանում մի շարք հետազոտողներ, որոնք բացարձակացնում էին հարցի միայն մեկ, թեկուզ և բավական կարևոր առումը: Ճիշտ են այն հեղինակները, ովքեր «գեղեցկության օրենքներով» մարդու գործունեության մարքսիստական ըմբռնումը դուրս են բերում գեղարվեստական ոլորտի սահմաններից ու տարածում մարդու ստեղծագործության բոլոր բնագավառների վրա: Աշխատանքի բնույթի մատերիալիստական ըմբռնումը ցույց տվեց, որ «գեղեցկության օրենքներով» ստեղծագործությունն աշխատանքի համընդհանուր և բուն բովանդակությունն է, որ «գեղեցկության օրենքները» ոչ այլ ինչ են, եթե ոչ ըստեղծագործական աշխատանքի գործունեություն՝ ամբողջությամբ առած:



Չնայած մանկական ու նախասկզբնական գեղարվեստական ստեղծագործությունները, ասես, հերքում են այսպիսի լայն մեկնաբանությունը, սակայն «գեղեցկության օրենքներով» ստեղծագործությունը, որը նույնական չէ բուն գեղարվեստական գործունեության, արվեստի հետ առավել բովանդակալից է:

Հանրահայտ է լենինյան այն դրույթը, որ մարդկային գիտակցությունը ո՛չ միայն արտացոլում է աշխարհը, այլև վերստեղծում է այն: Ընդ որում, մարդկային գիտակցության ստեղծարար գործունեությունն ունի նաև գեղագիտական արժեք, ծայրահեղ դեպքում՝ իր սկզբնավորման առումով:

Սույն հոդվածում, անդրադառնալով մանկական գեղարվեստական ստեղծագործությանը, ամենից առաջ հիշենք, թե փիլիսոփայության, լեզվի, հոգեբանության և զգայարանների ֆիզիոլոգիայի պատմության հետ միասին ինչպիսի կարևոր նշանակություն էր տալիս Վ. Ի. Լենինը «երեխայի մտավոր զարգացման պատմությանը», դրանք համարելով այն տարրերը, «որոնցից պետք է կազմվի իմացաբանությունը և դիալեկտիկան», կարճ ասած՝ «իմացության պատմությունն ընդհանրապես» (տե՛ս Երկեր, հ. 38, էջ 448):

Ձգտելով առանձնացնել այն ընդհանուրը, ինչը միավորում է մանկական ու նախասկզբնական գեղարվեստական ստեղծագործությունը որպես մարդու ստեղծագործության սկզբնական չափանիշ, մենք կելնենք ամենից առաջ այն բանից, որ արվեստը մարդկության ձևավորման արշալույսին ամենևին էլ նույն նշանակությունն ու իմաստը չուներ, ինչպիսիք այն ձեռք բերեց հետագայում: Նպատակ չունենալով հետազոտել նախասկզբնական արվեստի առանձնահատկությունները, որոնք հատուկ քննարկման առարկա են, նշենք, որ այն մարմնավորելով նախնադարյան մարդու մտածողության չտարբերակվածությունը, միաժամանակ և՛ մոգություն էր, և՛ իմացություն, և՛ առանձնահատուկ հոգևոր ֆենոմեն, որոնք ոչ մի բանի հետ չհամեմատվող, յուրահատուկ հաճույք են պատճառում: Այն բազմաֆունկցիականությունը, որը բնորոշում է ժամանակակից նույնիսկ «ամենաբյուրեղացված» արվեստը, անհամեմատ ավելի մեծ չափերով էր հատուկ նախասկզբնական արվեստին, որն ուներ բազմազան, զգալի չափով արտագեղագիտական ֆունկցիաներ: Ուստի և հարցին մոտենալով հասարակության հոգևոր կյանքում արվեստի ունեցած նշանակության ու դերի ժամանակակից ըմբռնման դիրքերից, կարելի է ասել, որ մարդկային հոգու այդ նախասկզբնական, չտարբերակված դրսևորման մեջ ամենից առաջ արտահայտվում է դրա էությունը հատուկ ավելի լայն պահանջ՝ ստեղծագործության պահանջը: Ընդ որում, ըստ էության չլինելով գեղարվեստական, այդ գործունեությունը կատարվում էր, այնուամենայնիվ, «գեղեցկության օրենքներով», տարածվելով այն աստիճան, որ աշխարհը դառնում էր մարդու ստեղծագործական վերափոխման օբյեկտ:

Հայտնի է, որ իր օնտոգենետիկական զարգացման ընթացքում մարդկային անհատն ընդհանուր գծերով կրկնում է ֆիլոգենեզի ընթացքում մարդկության անցած ուղին: Իհարկե, մենք հեռու ենք դրանց միջև հավասարության նշան դնելու մտքից: Նախնադարյան մարդու գիտակցությունն իր հիմքում արդեն պարունակում էր ժամանակակից մարդու բանականության նշանների զգալի մասը: Բայց, միաժամանակ, նրա գիտակցությունը միջնորդավորված էր սոցիալական չհասունացած հարաբերություններով, որոնք անխուսափելիորեն որոշակի սահմանափակության կնիք էին դնում նաև մարդկային անհատականության հոգեկան կերտվածքի վրա:

Մանկական գեղարվեստական ստեղծագործության առանձնահատկությունները դետերմինացված են այլ կերպ: Այստեղ էական է տակավին լրիվ չդրսևորված գիտակցության գործոնն իր այնպիսի բաղադրամասերով, ինչպիսիք են չտարբերակված ընկալումը, հուզականի իշխումը և այլն: Հենց դրանք էլ պայմանավորում են երեխաների ստեղծագործական գիտակցության յուրահատկությունը, որն առավել ակնբախ է ազդում նրանց գեղարվեստական ստեղծագործության վրա:

Գիտակցության վերլուծող-համադրող և աբստրահող հատկությունները՝ հասուն բանականության այդ կարևորագույն տարրերը, ձևավորվում են մարդու ողջ պրակտիկ գործունեության ընթացքում և, համապատասխանաբար, գիտելիքներով ու փորձով զինված մարդու հարստությունն են: Մինչ հուզական ունակությունը համապատասխան առարկայի և պահանջմունքի անմիջական արձագանքն է: Պ. Ի. Սիմոնովի արտահայտությամբ, էմոցիան «ընդհանրացված պահանջմունք է» (П. И. Симонов, Система К. С. Станиславского и физиология эмоции, М., стр. 23, 1962), այն կատարում է ընդհանրացնող գործոնի դեր, արտահատելով մարդու ամբողջական վերաբերմունքն արտաքին աշխարհի նկատմամբ:

Մանկական հասակում էմոցիոնալ ռեակցիան արտաքին առարկաների վրա հակազդելու հիմնական ձևն է: Անտեղ, որտեղ չափահաս մարդիկ վերլուծում են, երեխան, առանց դատելու, իսկույն ընկալում է ամեն ինչ՝ գույ-

նը, ձայնը, նյութը, ռիթմը, հոտը: Լինելով չտարբերակված ռեակցիայի ձև, էմոցիոնալ ռեակցիայի այդ ներքին, ինքնաբուխ հոգեկան պրոցեսը մանկական գեղարվեստական-ստեղծագործութան մեջ իր համապատասխան դրսևորումն է գտնում խիստ ընդհանրացված, վերացական-սիմվոլիկ նշանի ձևով: Հենց դրանով էլ բացատրվում է այն, թե ինչու մանկական պատկերավոր ստեղծագործության մեջ ամեն ինչ երևան է գալիս չափազանց պարզունակ, սխեմատիկ ձևով, առանց կոնկրետացման: Միայն ավելի ուշ, մանկական զգայարանների զարգացման ու արտաքին աշխարհի տարբերակված ընկալման զարգացման հետ մեկտեղ մարդկային անհատի գեղարվեստական գործունեության մեջ ձևավորվում է նաև կոնկրետզգայական կողմը:

Այսպիսով, մանկական և նախասկզբնական արվեստի ընդհանրության մասին եղած պատկերացումը խոտելի է զուտ արտաքին, մեխանիկական համապատասխանության առումով, քանի որ դրանք չեն համընկնում ո՛չ դետերմինացման, ո՛չ էլ զարգացման հաջորդական փուլերի ժամանակագրությամբ: Բայց նման պատկերացումը կարող է արգասավոր լինել և, իրոք, այդպիսին է այն առումով, որը հնարավորություն է ընձեռում առանձնացնելու ինչ-որ ընդհանուր հատկանիշ, այլազանի մեջ տեսնելով ընդհանուրը:

Մանկական գեղարվեստական ստեղծագործությունը, որպես մարդկային անհատի ստեղծագործական պոտենցիաների առավել անմիջական դրսևորում՝ իր ձևավորման բուն ակունքների մոտ, հարազատ է նախասկզբնական արվեստին: Որակական տարբերությունն այստեղ առնչվում է հիմնականում այն մոտիվների հետ, որոնք մանկական ու նախասկզբնական գեղարվեստական ստեղծագործության մեջ ընդհանուր լինելով՝ կանխորոշում են դրանց յուրահատկությունը:

Երեխան գիտակցության մեջ, իսկ դրա միջոցով՝ ձեռքով ստեղծածի մեջ աշխարհն արտացոլում է խիստ անմիջականորեն, տեսողական, այսինքն՝ միայն այն, ինչ տեսնում է, ինչ կա երևույթի մակերեսին: Այդ պատճառով էլ մանկական ստեղծագործությունը գերազանցապես պատկերավոր է: Միաժամանակ մանկական անմիջական աշխարհընկալումն օրգանական է, բնածին, այսինքն՝ բնական:

Ճիշտ է, բոլոր երեխաներն ունեն ստեղծագործելու հակում, բայց ոչ բոլորն են դառնում նկարիչներ, երգիչներ, կոմպոզիտորներ, կատարողներ: Այդպիսի երջանիկները կազմում են երեխաների ընդհանուր թվի 3—4 տոկոսը: Այդ պատճառով էլ գեղարվեստական դաստիարակության իմաստն ու նպատակը ոչ թե երեխաների բուն գեղարվեստական հակումների մշակումն է, այլ, գլխավորապես, նրանց ստեղծագործական պահանջմունքի խթանումը, որը հետագայում կդրսևորվի կենսագործունեության ամենատարբեր ասպարեզներում:

Վաղ մանկության շրջանից երեխաների բուն գեղարվեստական դաստիարակությունն ավելի բազմաբովանդակ է, քան նրանց մեջ սոսկ գեղարվեստական մտածողության ու ընկալման ունակությունների ձևավորումը: Գեղարվեստական ստեղծագործության, դրա էության մեջ առավել հստակ են դրսևորվում այն հատկանիշները, որոնք ընդհանրապես բնորոշ են ստեղծագործությանը՝ որպես մարդկության յուրահատուկ գործունեություն: Երեխայի գեղարվեստական ստեղծագործությունն ի վերջո կարող է հանգեցնել այնպիսի հետևանքների, որոնք այնքան էլ նույնական չեն սկզբնական շրջանում դաստիարակների առջև դրված նպատակների հետ: Այս առումով երեխայի գեղարվեստական դաստիարակությունն ստեղծագործաբար մտածող, աշխարհը որպես արարման օբյեկտ ընկալող անհատի դաստիարակություն է:

Գրեթե բոլոր երեխաներն էլ նկարում են, երգում, պարում, արտասանում. դա երեխայի բնական, ֆիզիոլոգիական պահանջն է: Այստեղ իրոք «գեղագիտական պահանջը» բուն իմաստով գեղագիտական չէ: Այդ պահանջի բավարարումն անհրաժեշտ է երեխայի ո՛չ միայն գեղագիտական, այլև հոգեկան ու ֆիզիկական ճիշտ զարգացման համար: Այսպես, նկարելու շնորհիվ կատարելագործվում են ձեռքի շարժումները, զարգանում է աչքաչափը և գույներ տարբերելու ունակությունը: Պատահական չէ, որ նկարչությունը ներառված է մանկական նախադպրոցական հիմնարկությունների դաստիարակչական աշխատանքի ծրագրում: Ճիշտ է, իսկական գեղագիտական պահանջի տարրերը մարդը ժառանգում է մանկուց, ընդմիշտ պահպանելով մի ժամանակ իրեն հաղորդված գույնի, հնչյունի, ռիթմի և այլ «զգացումները», այսինքն՝ գեղարվեստական, գեղագիտական ընկալման ունակությունը: Դրանք անհրաժեշտ են նրան ո՛չ միայն արվեստին առնչվելու համար, այլև առօրյա կյանքում: Այդուհանդերձ, դժվար է երեխայի այս նախնական պահանջը բուն իմաստով գեղագիտական, իսկ գործունեությունը լիովին գեղարվեստական համարել: Այստեղ ավելի արագ է դրսևորվում բնածին, մարդկային այն պահանջը, որն իրականացվում է համակող ստեղծագործությամբ, քանզի մանկական հասակում այդ պահանջը դրսևորվում է ամենից





առաջ և գլխավորապես գեղարվեստական գործունեության ձևով: Այդ վկայում է, որ հենց այդպիսի գործունեությունն է ամբողջովին արտահայտում ստեղծագործության էությունը:

Սկզբնական գործունեության միջոցով երեխան հաղորդակցվում է արտաքին աշխարհին, շրջապատող իրականությանը, սովորում աշխարհին նայել զարգացած աչքերով, գիտակցել ու հասկանալ օբյեկտիվ օրինաչափությունները: Մանկական գեղարվեստական ստեղծագործությունը թերևս թույլ է, պատահական, սակայն ընդգրկում է անհատի ապագա ստեղծագործական պոտենցիալի ուրվագիծը:

Հանրահայտ է, որ ստեղծագործելու ձիրք ունեցող անհատի ունակությունները դրսևորվում են տակավին վաղ հասակում՝ մանկական զարգացած հետաքրքրասիրության, շրջապատող աշխարհի, դրա գույների, հնչյունների, ռիթմերի, տարածության, ծավալի և այլնի զգայուն ընկալման ձևով: Այս առումով շատ կարևոր է մարդու վաղ շրջանի գեղարվեստական (գեղագիտական) դաստիարակությունը: Գեղագիտական հրապուրիչ հնարներով երեխայի առջև բացելով աշխարհը՝ արվեստը նաև բարոյական ու մտավոր դաստիարակության կարևորագույն միջոց է: Այն երեխային օժտում է շրջապատող աշխարհի ճանաչողության կարողությամբ, համակում աշխարհը բարեփոխելու ձգտմամբ:

Այսպիսով, արվեստի աշխարհը, որ երեխային շրջապատում է վաղ մանկությունից, նշանակալի է այնքանով, որքանով որ զարգացնում է անեղծ մարդու, նրա մեջ ձևավորելով ստեղծագործական որոշակի աշխարհընկալում և աշխարհզգացողություն: Մարդ միայն հասուն տարիքում է տարբերակում արվեստի գեղագիտական, բարոյական, ճանաչողական, դիդակտիկ հատկանիշները: Մանկան համար գեղարվեստական ստեղծագործությունն ինչ-որ ընդհանուր, ամբողջական ու վարդագույն ֆենոմեն է: «Եթե երեխան երգ է հյուսում՝ դյութված դաշտերի գեղեցկությամբ, աստղերի առկայծումով, ծղրիդների անվերջանալի երգով, դաշտային ծաղիկների բուրմունքով, նշանակում է նա հասել է մարմնի և ոգու ներդաշնակության... գագաթնակետին: Հոգատարությունը մարդու առողջության նկատմամբ սոսկ սանիտարահիգիենիկ նորմերի ու կանոնների համալիր չէ... Դա ամենից առաջ հոգատարություն է ֆիզիկական ու հոգևոր բոլոր ուժերի լիակատարության նկատմամբ, և այդ ներդաշնակության պսակը ստեղծագործության բերկրանքն է»,— գրել է սովետական հիանալի մանկավարժ Վ. Ա. Սուխոմլինսկին («О воспитании», М., стр. 60, 1973): Ձևավորվող անհատի դաստիարակության մեջ հույժ կարևորելով ստեղծագործական հակումների բացահայտումը, Վ. Ա. Սուխոմլինսկին գտնում էր, որ հմուտ դաստիարակը պետք է պրպտի ու գտնի յուրաքանչյուր սանի «ստեղծագործական ջիղը» և նրան մղի ստեղծագործական ունակությունների մրցության (տե՛ս նույն տեղը, էջ 29): Ըստ Սուխոմլինսկու, երեխայի համար ստեղծագործական ակտը նշանակալի է ոչ այնքան իր արդյունքով (չնայած վերջինս ունի խթանիչ նշանակություն), որքան այդ պրոցեսի մեջ պոտենցիալ կերպով ամփոփված մարդկային ինքնահաստատման ուժով, մարդու հոգևոր ու ֆիզիկական բոլոր ուժերով:

Սովորաբար ընդունված է տարբերակել դաստիարակություն և կրթություն հասկացությունները, մասնավորապես գեղագիտական ասպեկտը գեղարվեստականից տարբերելու առնչությամբ. ասում ենք գեղագիտական դաստիարակություն, բայց՝ գեղարվեստական կրթություն: Եվ, չնայած, ենթադրվում է, որ երկրորդը կազմում է առաջինի մասը, սակայն գեղագիտական ողջ դաստիարակությունը չի հանգեցվում լոկ գեղարվեստական կրթության:

Բայց այս փոխադարձ կապի մեջ մի փոքր փոխվում է մասերի հարաբերակցությունը, երբ խոսքը վերաբերում է երեխաների գեղագիտական ձևավորմանը: Եթե ձևավորված, բանականությամբ ու ճաշակով օժտված մարդու համար այս երկու պրոցեսները, իրոք, նույնական չեն, ապա երեխաների նկատմամբ նման նույնականությունը բնական է, ընդհանուր: Սուխոմլինսկին բազմիցս առանձնացրել է մարդու ձևավորման պրոցեսի այդ առանձնահատկությունը: «...մենք հանդիպում ենք այնպիսի միակողմանի հայացքի, ըստ որի դաստիարակությունն ուսուցումից, կրթությունից ինչ-որ անջատ մի բան է,— գրել է նա:— Կարելի՞ է, արդյոք, համաձայնել, որ դաստիարակությունը, հասկացության նեղ իմաստով, չի ընդգրկում կրթությունը և ուսուցումը, չի ընդգրկում աշխարհայացքի, բարոյական կերպարի ձևավորումը, գեղագիտական ճաշակի զարգացումը, ֆիզիկական զարգացումը» (նույն տեղը, էջ 18): Սուխոմլինսկին շեշտում էր, որ անհնար է աշխարհայացքը ձևավորել առանց ուսուցման ու կրթության: «Մի՞թե կարելի է դաստիարակել մարդկային հոգին, նկատի չունենալով, թե մարդն ինչ է տեսնում, ճանաչում, իմաստավորում կրթության պրոցեսում: Մյուս կողմից, մի՞թե հնարավոր է կրթություն՝ առանց աշխարհայացքի դաստիարակման» (նույն տեղը):

Այսպիսով, մարդու ստեղծագործական պահանջմունքը սերտորեն առնչված է ճանաչողա-

կան պահանջմունքի հետ: Այն ո՛չ միայն սընում, այլև համապատասխանաբար կողմնորոշում է ստեղծագործական պահանջմունքը, մարդու ստեղծագործական տարերային պոտենցիայից ստեղծելով նպատակամղված, որոշակիորեն նպատակաուղղված ուժ, որը ձևավորում է մարդու կոնկրետ վարքը: Ստեղծագործության կապը ճանաչողության հետ հատկապես ակնհայտ է մանուկ հասակում: Հետևեցեք երեխաներին և կհամոզվեք, թե ինչպիսի՛ հիացմունք է առաջացնում նրանց առջև բացված աշխարհի յուրաքանչյուր պատառիկի ճանաչումը: Ճանաչողությունն այստեղ կատարվում է ստեղծագործական աշխատանքով:

Միայն ավելի ուշ, հասուն տարիքում դրսևորվում է մարդու ստեղծագործական աշխատանքի բուն էությունը— շրջապատող աշխարհը վերափոխող և կատարելագործող էությունը: Դրանով իսկ հաստատվում է ստեղծագործության հարաբերական ինքնուրույնությունը ճանաչողության նկատմամբ: Սակայն օնտոգենեզի վաղ փուլերում այդ ամենից առաջ ճանաչողություն-ստեղծագործություն է՝ ի տարբերություն հասուն մարդու արարք-ստեղծագործության:

Հետևաբար, միանգամայն օրինաչափ է մանկական գեղարվեստական ստեղծագործության բազմազան ձևերի համար հասարակական հիմնարկությունների ցանցի ընդլայնման միտումը:

Դա ժամանակի հրամայական պահանջն է, կուլտուրական, գիտատեխնիկական առաջընթացի բուռն զարգացման արգասիքը: Հիշենք պիոներ-պալատների, մանկական ստուդիաների, գեղարվեստական ու տեխնիկական խմբակների, ինքնագործ թատրոնների շնորհակալ աշխատանքը: Այդ հաստատությունները տաղանդների հայտնաբերման ու դաստիարակման օջախներ են, որ մեր հասարակության մեջ ստեղծվել են տասնամյակների ընթացքում: Մեծ մասսայականություն է վայելում Երևանի մշտական գործող մանկական պատկերասրահը, որտեղ ի հայտ են գալիս նորանոր տաղանդներ, ընդլայնվում է երեխաների գեղարվեստական երևակայությունը, խորանում դիտողականությունը: Լայն արձագանք գտավ ՀՍՍՀ Գերագույն սովետում քննարկված «Հանրապետությունում երիտասարդության գեղագիտական դաստիարակության վիճակի և բարելավման միջոցառումների մասին» հարցը:

Նոր մարդու համակողմանի գեղագիտական ու ներդաշնակ զարգացումը կոմունիստական հասարակության իդեալն է: Այդ լուրջ ու պատասխանատու խնդիրը պահանջում է հասարակության մշտական ու սթափ ուշադրությունը:

ԵԿԱՏԵՐԻՆԱ ՀԱԿՈԲՋԱՆՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների
թեկնածու



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.
**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխա-
վոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկո-
նոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80,
գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 07773 Պատվեր 2161 Թղթի չափսը 70×108 1/16' Տիրաժ 15.700 Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 28/X-1978 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի Հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

С О Д Е Р Ж А Н И Е



**ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ**



**С Т А Т Ь И**



**СОРЕВНОВАНИЕ: ОПЫТ И ИССЛЕДОВАНИЕ**



**ПРОБЛЕМЫ ВОСПИТАНИЯ НОВОГО ЧЕЛОВЕКА**

Գինը՝ 20 կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀՆՉՈՒՄ Է «ՍՈՆԵՏԸ»

*Լենինգրադի «Կրասնի Օկտյաբր» ֆաբրիկան սկսել է «Սոնետ» անունով ստեղնավոր յուրօրինակ գործիքի մասսայական թողարկումը: Բավական է մի թեթև սեղմել այդ փոքրաչափ կաբինետային դաշնամուրի հատուկ պեդալը, և անմիջապես կփոխվի հնչեղության տեմբրը հին կլավեսինի նման: «Սոնետը» աչքի է ընկնում բարձր ակուստիկությամբ և արժանացել է մասնագետ-երաժիշտների բարձր գնահատականին:*

## ՍՈՍՆՁԱՓԱՅՏ

*Մեր երկրում այժմ գործում են սոսնձափայտային կոնստրուկցիաների (ՍՓԿ) արտադրության խոշոր ձեռնարկություններ՝ հայրենական և արտասահմանյան սարքավորումներով: Այդպիսիք կան Լիտվայում, Ուկրաինայում, Բելոռուսիայում, Մոսկվայի մարզում և այլուր:*

*Սոսնձափայտային կոնստրուկցիաներում պահպանվում են փայտի լավագույն հատկությունները: Դրանք 3—4 անգամ թեթև են երկաթբետոնից և հատուկ մշակումից հետո ո՛չ միայն չեն սուզվում, այլև չեն այրվում: Հետազոտողները կատարել են հետաքրքրական մի փորձ. տաքացրել են պողպատն ու ՍՓԿ-ն մինչև 750 աստիճան: Պարզվել է, որ երկաթն իր ամրությունը պահպանել է 15, իսկ սոսնձափայտային կոնստրուկցիան՝ 40 րոպե:*

*ՍՓԿ-ն ամուր է, դիմացկուն, և, որ ամենակարևորն է, հնարավորություն է ընձեռում շենքերը կառուցել առանց տասնյակ մետրերի հասնող միջակա հենասյուների: Սոսնձափայտե նյութերից պատրաստված հեծանները, ձողակառույցները, կամարները երկաթբետոնի և մետաղի լուրջ մրցակիցներն են: Փայտյա կոնստրուկցիաների կիրառմամբ 3—5 անգամ նվազում է պողպատի օգտագործումը: Դրանք նաև արագ են հավաքվում:*

## ՓՈՐՁՆԱԿԱՆ ՀԱՂՈՐԴՈՒՄՆԵՐ

*Անգլիայում սկսվել են «Պրեստել» անունը կրող հեռուստատեսային ինֆորմացիոն-որոնողական «Վյուդեյտա» սիստեմի փորձնական հաղորդումները: Այն հնարավորություն է ընձեռում՝ աբոնենտին հարցում կատարելու հեռախոսային կանալով և իր հեռուստաընդունիչի էկրանի վրա ստանալու սիստեմի հիշողության մեջ պահպանված իրեն անհրաժեշտ ինֆորմացիան: Փորձարկումների սկզբնական շրջանում նախատեսված է օգտագործել ընդունման 50 կետ, իսկ ընթացիկ տարվա վերջերին դրա թիվը կհասնի 1.500-ի: Սպառողներին անհրաժեշտ ինֆորմացիան սիստեմը ստանում է 141 կազմակերպություններից, ներառյալ թերթերի խմբագրությունները, հրատարակչությունները, ճանապարհորդական, ռեկլամային բյուրոները, կենցաղ-սպասարկման ձեռնարկությունները, կառավարման մարմինները և այլն:*

## ԲՈՒՅՍԵՐԸ՝ ԻՆԴԻԿԱՏՈՐ

*Մթնոլորտի աղտոտման աստիճանն ու որակը ճիշտ որոշել կարող են միայն բարդ սարքերը, սակայն մոտավոր իմացման. կողմնորոշման համար հաճախ բավական է դիտել, թե ինչպես են իրենց զգում բույսերի կոնկրետ տեսակները այս կամ այն աղտոտիչ նյութերի առկայությամբ: Հոլանդացի գիտնականներն առաջարկել են օդում օզոն հայտնաբերելու համար հետևել եղինջի, առվույտի և թութունի ինքնազգացմանը, ազոտի օքսիդները վատ են ազդում հատկապես սպանախի և պոմիդորի, էթիլենը՝ պոմիդորի, ծխածաղկի և կարտոֆիլի վրա:*